# ԿԱՅԻՈՍԻ ՍԱԼՈՒՍՏԻՈՍԻ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՏԻԼԻՆԵԱՆ ԴԱՒԱԿՑՈՒԹԵԱՆ ԵՒ ՅՈՒԳՈՒՐԹԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

Հ. ԱԲՐԱՀԱՄ Վ. ՃԱՐԵԱՆ

*ի Մխիթարեան ուխտէն*



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ
1856

Հռովմայեցւոց ազգին վէպք
բազմադիմի տեսարանօք բը-
նութեանս կրից՝ յոռութեանց
և առաքինութեանց իբրև 'ի
հանդէս ածելով զմարդն ա-
ռաջի ինքեան մարդոյ, յոր-
դոր եղեն մեզ յաղբիւրս անդր
պատմութեան նոցա դիմե-
լով յեղուլ 'ի մեր բարբառ
զքաջաց վիպագրաց նոցին
մատեանս: Եւ զայս առա-
ջին բաս դիպաց. քան եթէ
նախընտիր առնելով ընծայ-
ենք՝ զԿրիսպոսի Սալուս-

տեայ պատմութիւն կատի֊
լինեան դաւակցութեան, որոյ
թէպէտ մեծ և աչաւոր պատ֊
րաստութիւն հրդեհին՝ իմաս֊
տուն արթնութեամբ կիկերո֊
նի Տուղղեայ բդեշխի ժա֊
մանակին խափուցեալ, ոչ֊
ինչ 'ի չարեացն սպառնացե֊
լոց 'ի գլուխ եհան, այլ ճար֊
տար նկարագիր մատենա֊
գրին և 'ի սուղ ժամանակի
իրագործութեանցն որպէս 'ի
մանրանկար պատկերի զող֊
ջոյն իսկ զհռովմէական ժո֊
ղովուրդ զերածայրեալն 'ի յո֊
ռութիւնս իւր և 'ի բարեմա֊
նութիւնս՝ առեալ ածէ յան֊
դիման ընթերցանելեաց. և
զոր այլք 'ի մատենագրաց
երկարաձիգ ճառիւք ջան ե֊
դին խելամուտ առնել զպատ֊
ճառս մեծութեան և անկման

հռովմէական պետութեան, սա 'ի համառօտ բանս պատարուն բովանդակէ զամենայն:

Յետ Կատիլինեանն դաւակցութեան շարակարգեմք և ըզՅուգուրթեան պատերազմին դէպս, յոր ոչինչ նուազ քան յառաջինն փայլէ հանճար պատմագրին, և իրաւամբ երկուք այսոքիւք ոչ բազմահատորվիպագրութեամբք կարգեցաւ նա ընդ երևելի պատմագիրս Հռովմայ. որք և տան մեզ աւանդել ընդ կորուստ այլոց յոլովագունից 'ի գրաւոր վաստակոց մեծի մատենագրիս. որոց նշխարք միայն մնան 'ի հաւաստիս հանճարոյն, որպիսիք են և հատուկտորք Հնգեցուն անուանեալ գրոցն պատմու-

*թեանց, յորս ճառէր և զմե֊*
*րոցս Հայկազանց պատերազ֊*
*մաց ընդ Հռովմայեցւոց, այս*
*ինքն զՏիգրանայ և զՄիհր֊*
*դատայ մարտն ընդ Լու֊*
*կուղղոսի ։*

# ՎԱՐՔ

# ՍԱԼՈՒՍՏԵԱՑ

Կայիոս Սաղուստիոս Կրիսպոս ծնաւ յԱմիտերնոն քաղաքի սաբինացւոց յամի շինութեան Հռովմայ 'ի վեցհարիւրորդի վաթսնեւորդի ութերորդի, յեօթներորդում՝ հիւպատոսին Մարիոսի և յերկրորդումն Կոռնելեայ Կիննայ, այսինքն է 86 ամօք յառաջ քան զթուականութիւն փրկչին: Աննշան և անտոհմ՝ ծնողաց գոլով զաւակ մնաց 'ի Հռովմ և աշակերտեցաւ Ատտէոսի Պրետեքստատոսի ուրումն բանասիրի և մեծանուն գրամարտիկոսի աթենացւոյ, ընդ որում մտերմու-

թեամբ եկաց զամենայն աւուրս իւր:

Ապականեալ և զեղծ բարք մեծի քաղաքին՝ զոր գեղեցիկս նկարագրէ ապա, մոլորեցուցին զնա 'ի մանկութեան իւրում, և 'ի խառնավար կեանս և յանմիտ շըռայլութիւնս հեղոյր զանձն: Այլ և յայնժամ ամաց ելով ինքն քսանից կամ քսան և երկուց 'ի ժամանակի դաւակցութեան Կատիլինայ՝ անառակ կենօքն հանդերձ չետ ընաւ տեղի կասկածանաց զանձնէ շաղելոյ 'ի նոյն եղեռն: Իբրև ժամանեալ եհաս 'ի տիս հասակի զոր օրէնքն պահանջէին յատենակալութիւն, եկաց դանձապետ և յետոյ հազարապետ ժողովրդեան. և յաղմուկս անդ խառվութեան ժամանակին 'ի կողմն լեալ Կղօդեայ ընդդէմ Միլոնի 'ի քէն վրիժուց նախատանացն ըն-

գունելոց 'ի նմանէ՝ բրածեծ լի-
նելով և տուգանելով վասն շամբ-
շութեան առ Փաւստա կին Միլո-
նի և դուստր Սիղղայ իշխանապե-
տի, եւ աքսորել զնա ։ Եւ ոչ
աշխոյժք եռանդեանն որով մղէր
զանձն 'ի յոյզս ժխորից քաղաքա-
ցւոց ոչ կասեցուցանէին զնա 'ի
խառնակնաց վարուցն, մինչև հա-
մարակալաց ժամանակին Ապ-
պեայ և Պիսոնի ընդ վատաջամ-
բուս գրել և մերժել զնա յատե-
նակալութենէն ։ Եւ թուի 'ի ժա-
մանակիս յայսմիկ գրեալ նորա
զպատմութիւն դաւակցութեան
Կատիլինայ, որում ականատեսն
էր և վկայ ։ Այլ յերկրորդում ա-
մի հրաժարելոյ իւրոյ 'ի գործոց
հասարակաց՝ նորանոր յեղափո-
խութիւնք առանին զարթուցին
զմիտս նորա 'ի տենչ փառաց և իշ-
խանութեան, և զոր առ զայրոյթ

թողեալ էր, առ ձանձրոյթ ա-
ռանձնութեանն կրկին դառնայր
ձեռնամուխ լինէր 'ի անտեսու-
թիւն հասարակաց իրաց: Քանզի
որ 'ի սկզբանէ հետէ կուսակիցն
էր ռամկին և ձեռնտու իշխանա-
սիրութեան կեսարու, եղեալ
երթայր 'ի բանակ նորա. և առ
մեծարանս անուան իւրոյ վերս-
տին ամբարձեալ 'ի գանձապետու-
թիւն, դառնայր մտանէր յատե-
նակալութիւն՝ յորմէ մերժեցաւն
երկամօք յառաջ. և անտի վերե-
լակէր 'ի մարզպետութիւն, ա-
նուամբ փոխանակի բդեշխի վե-
րակացու կարգելով Նումանտիոյ
'ի կեսարէ:

Ընդ Սալուստիոս ծանր ծանր
հարստահարութեամբ կեղեքեալ
զժողովուրդ երկրին մեծանայր
յոյժ ընչիւք, և չքաւոր և սնանկ
երթեալ յաշխարհն, անբաւ փառ

թագաւորեալք մեծատուն գործ ածնէր անդ 'ի Հռոմ: Եւ ըստ Դիոնի Կասիոսի ասելոյ՝ թէպէտ կաշառօք տիրէր 'ի Կեսարու դատաստանացն, այլ ոչ և յինքնավճիռ դատապարտութե̃ բանից, որովք ատէր դառնագինս զնին 'ի գիրս իւր ընդդէմ հարստահարութեանց գաւառակալաց ժամանակին:

Ի մահուան Կեսարու կորուսեալ Սալուստեայ զպաշտպան իւր և զապաւէն եդ 'ի մտի տեղի տալ 'ի սպառ 'ի հասարակաց պաշտամանց: Եւ զի էին նորա գանձք շատ, ոչինչ եթող 'ի հաճոյից, զոր ոչ կատարեաց անխնայ ծախուք: Եւ ետ կառուցանել 'ի կուիրինեան լերին ապարանս հոյակապս և բուրաստան ընդարձակ ժողովեալ անդր մեծածախ գանձուք անդրիս, նկարս, անօթս

և կարասիս՝ հրաշալիս հանճարոյ և արուեստից: Դեռ ևս կան մնացորդք պարտիզայն Սալուստեան բուրաստանք յորջորջեալք, 'ի լոյս հանելով 'ի հողոյ երկրին զընտիր ընտիր հնութեանց: Հրաշակառոյց ապարանքս 'ի բնակութիւն կարգեցան ապա Վեսպասիանոսի, Ներուայ, Աւրելիանոսի և այլոց յոլովագունից ինքնակալաց, որք յաւելին 'ի ճոխութիւն զարդուց նորին: Ոչինչ նուազ քան զգիւղազբօս կեանս՝ ճոխաբար քաղաքաբնակ լինէր Սալուստիոս, գնոց առնոյր ընդ այլ կալուածս և զվայելուչ զամարաստան բնակութիւն Կեսարու 'ի Տիբուր, և զնոյն անշուշտ փոյթ խնամոյ ունէր 'ի պաճուճել և զայն: Եւ այսպէս աւուրք վերջնոց ինն ամաց անդորրութեան նորա անցին 'ի յարդ և 'ի զարդ դաստակեր-

տաց իւրոց։ Եւ մեռաւ նա յամին հռովմայ յեւթնհարիւրերորդի և ութևտասներորդի (երեսուն և երեք ամօք յառաջ քան զՔրիստոս) 'ի յիսուն և 'ի միում ամի կենաց իւրոց, թողեալ համբաւ մեծ զհանճարոյն, զոր աղարտեացն բարուք իւրովք։ Ժառանգ եկաց Սաղուստեայ ընդ անուանն և ընչից և ախորժակացն հաճոյից և մեծագործութեանց քեռորդեակ նորա և որդեգիր։

Ի գրաւոր վաստակոց Սաղուստեայ հասին առ մեզ կրկին գործք անթերիք. Իրք Կատիլինայ և պատերազմ Յուգուրթայ, զոր գրեաց յետ դարձին իւրոյ յԱփրիկեայ։ Գրեալ էր և զՀռովմէական պատմութիւնս, որ ինչ դէպք 'ի միջոց ժամանակի յուգուրթեան պատերազմին և դաւադիր խռովութեանց Կատիլինայ հանդիպեալ էին.

յորմէ հատուածովք միայն մնան մեզ բանք. նոյնպէս և Թուղթք յորս բացայայտագոյնս պարզէր Միհրդատ զփառասէր խորհուրդս Հռովմայեցւոց: Յիրաւի ցաւագինս աւաղէ Բեդրարքա զկորուստ գեղեցիկ գանձուցն. այլ խնայելով բաղդին երկուց ընտրելագունից 'ի գրոց նորա ոչինչ սակաւ մխիթար մեզ ընծայէ: Քանզի առ հինան Մարտիալէս կոչէ զմատենագիրս զայս՝ իշխան պատմագրաց Հռովմայեցւոց, և Սենեկա 'ի վեր դասէ զնա քան զԹուկիդիդէս, և Տակիտոս ընծայէ նմա գովութիւնս, զոր դարս մեր իրաւամբ տայ նմին ինքեան մեծի նկարագրին Տիբերեայ և Ներոնի. քանզի և ըստ ումեմն արդի մատենագրի "Այնչափ յաջողեալ է Սալուստեայ 'ի բնականին նկարագիր, որչափ ինչ

Տակիտոս 'ի քաղաքագիտականն: Եւ Ռոլէն "Սեպհական և գլխաւոր տիպք մատենագրութեան նորա , ասէ , համառօտութիւն է ոճոյն . զօրաւորս խորհել և ազնուականս , նոյնպէս տալ և 'ի գիր: Ոչ ինչ անդէպ իցէ նմանեցուցանել զոճ բանից նորա նեղայատակ և յորդաջուր գետոց , որով և ծանրագունից բեռանց բարձող: Եւ ընդ ո՞ր առաւել զարմանալ իցէ անգիտանամք , ընդ ստորագրութիւնս նորա , և ընդ նկարագիրս , եթէ ընդ բանախօսութիւնս , ուր զի և յամենայնի միապէս յաջողէ ,,:

Մեծի գովութեան է արժանաւոր դարձեալ ընտիր դատումն նորա , զոր 'ի կրկին այս հատածս պատմութեան ունի ինքեան առաջնորդ : Յառաջնումն՝ որ միապաղաղ և համանիւթ էր գործ ,

երևի արշաւասոյր իմն երագու-
թիւն, ուր զգործսն միայն ա-
ռեալ նպատակ և զայլովք ամե-
նայն մանր դիպօք անփոյթ, ան-
գուլ մղեալ բերի 'ի վախճան գոր-
ծոց իբր 'ի տեսիլ թատեր զնոյնս
ածելով: Իսկ յերկրորդումն 'ի
պատերազմ Ցուգուրթայ, 'ի մի
կցորդեալ զարտաքին մարտս պա-
տերազմաց ընդ առտնին խռովս
շփոթից, զգործ ընդ բանից,
փայլէ խոհական հասունութիւն
տիոց և հանճարոյ մատենա-
գրին: Քանզի և կանխեալ փոյթ
մեծ կալեալ է նորա անձամբ շր-
ջելով 'ի տեսութիւն տեղեաց տե-
ղեաց կուսակալութեան իւրոյ,
ուր գլխաւորք 'ի դիպաց իրագոր-
ծեցան, և իբրև մկայ ականատես
քաջածանօթ կարևորացն՝ հաւա-
քեաց զյիշատակս պիտանիս. և 'ի
գրոց անտի բնակաց երկրին. որ

հրամանաւ արքային Հեմբատայ
ժողովեալ էին, խոյզ և խնդիր ա-
րարեալ եհան զակիզբն և զհնու-
թիւն ազգին: Յայսմ պատմու-
թեան երևի առաւել ձիգն պատ-
մագրին 'ի տալ զստոյգ նկարա-
գիր իւրոյ ազգին, պարզելով
զիւրաքանչիւր երկպառակ գրո-
հից զմիտս և զպանկութիւն, մե-
ծացուցանելով զնախնեաց առա-
քինութիւնս և ազդողագոյնս նը-
կարագրելով զեղծ ապականու-
թիւնս իւրոյ ժամանակին, և մա-
նաւանդ զվարչաց աշխարհին և
զմարզպետաց զանյագ ընչաքաղ-
ցութիւն և զմեծամեծ հարստա-
հարութիւնս. ոչ եթէ որ յայլսն
անգոսնէր, ոչ ինքնին 'ի նոյնս
գլորէր:

Կրկին ազգք քննչաց են Սա-
լուստեայ, կեսք զօտարաւս կե-
նաց նորա խօսելով և զվարուց, և

կէսք զգլխաւոր վաստակոց ․ Ա-
ռաջնոցն երգիծաբանութիւնք
են գաւեշտք և թիւնալիցք, յորս
վրիժառու ատելութեան ոգի՝ ՚ի
սպառ գոգցես անազդակ գործէ
զայնս և անարդիւնս ։ Իսկ երկ-
րորդացն հակառակ են և բանք ՚ի
ջատագովութիւն մատենագրին,
և քաջիկ իսկ յաջողեալք ․ միայն
թերևս և յայսմ ոչ մնայցէ ան-
պարսաւ վասն երկար կանխաբա-
նութեանցն՝ որ չունին ՚ի բնէ ազ-
դակցութիւն ընդ նիւթոյ պատ-
մութեան ։

# ԿԱՅԻՈՍԻ

# ՍԱՂՈՒՍՏԻՈՍԻ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՏԻԼԻՆԵԱՆ

## ԴԱՒԱԿՑՈՒԹԵԱՆ

---

Ա. Որք միանգամ գերել զայ-
լովք կենդանեօք ջանան , պարտ
է նոցա մեծաճիգն գուն դնել՝
չվարելոյ կեանս զատարկապորտ
հանգոյն անասնոց , զորս բնու-
թիւնն երկրաքարշս արար և որո-
վայնի ստրուկս : Այլ մեր բովան-
դակ զօրութիւն 'ի հոգւոջ և 'ի
մարմնի եդեալ է . զհոգին 'ի հրա-
մանատար գիտեմք և զմարմին 'ի
ծառայ , մին ընդ անմահս է բա-
ժանակից , և միւսն ընդ անբանս :
Վասն այսորիկ արդարագոյն ինձ
թուի հանճարով քան զօրութ-
ուժով փառաց լինել՝ 'ի խնդիր . և
քանզի կեանքս զոր վարեմք վաղ-

անցուկ է, յիշատակս ըստ կարի
երկարագոյնս թողուլ զանձանց։
Զի սակաւաւոր է և դիւրաթար-
շամ ընչից և գեղեցկութեան փառք,
իսկ առաքինութիւն շքեղ և յա-
ւերժական։ Սակայն ընդ երկար
վէճ էր 'ի մարդիկ, ուժո՞վ ար-
դեօք թէ արութեամբ ոգւոյ պա-
տերազմ վճարիցի։ Քանզի չև իսկ
ձեռն 'ի գործ արարեալ՝ խորհըր-
դոց պէտք են, և ապա արդեանց
'ի դէպ ժամանակի։ Այսպէս եր-
կաքանչիւրն ինքնին անբաւական՝
իրերաց կարօտին սատարութեան։

Բ. Վասն այսորիկ 'ի սկզբան
անդ թագաւորք, քանզի այս եղև
յերկրի առաջին յորջորջումն իշ-
խանութեան, զանազան կալան
շաւիղ. կէսք զհանճար, այլք
զմարմնոյ կորով կրթէին. և զի
դեռ յայնժամ կեանս անցանկա-
ւէրս վարէին մարդիկ, այր այր
իւրովքն բաւականացեալ վայե-
լէր։ Այլ զկնի ապա իբրև Կիւ-
րոս յԱսիա, Լակեդեմոն և Ա-
թէնք 'ի յունաստան զքաղաքս

նուաճէին և զժողովուրդս ընդ
բռամբ ածէին, և մինչ տիրապե-
տութեան դրդէր զնոսա 'ի պա-
տերազմ, և ծայր փառաց 'ի դե-
րագոյն իշխանութեն դնէր, յայն-
ժամ ուրեմն յայտ իմն այսպէս
'ի վտանգաց և յարդեանց իւրացն
եղև՝ զի բազում ինչ զօրէ 'ի պա-
տերազմի հանճար: Զի եթէ հան-
ճար թագաւորաց և իշխանաց 'ի
խաղաղութեան և 'ի պատերազմի
միապէս զօրանայր, հաստատա-
գոյնս ևս և օրինօք վճարէին իւրաց
կենցաղոյս պայմանք, և չտեսա-
նէաք արդեօք զօտարին ընչից յա-
փշտակութիւն, և զամենայն ինչ
կերպարանափոխ լեալ կամ վեր
'ի վայր խառնակեալ: Քանզի նո-
վին ևեթ հնարիւք հեշտեաւ յա-
կատանի կայ տէրութիւն, որով
և կանգնեցաւ յառաջագոյն:
Այլ իբրև փոխանակ արութեան
վատութիւն, և փոխանակ զգաս-
տութեան և արդարութեան՝ զեղ-
խութիւն և գոռոզութիւն յար-
դեան 'ի ներքս զեղուն, յայնժամ

տապ և բաղդն և սովորութիւնք
յայլ իմն կերպարանս առեալ
փոխին։ Այսպէս ըստ բախտի և-
եթ իշխանութիւն 'ի լաւագոյն
ոք 'ի նուազ բարւոյն փոխարկի։
Յորժամ մարդկան ազգ զերկիր
գործեն, ընդ ծով նաւարկեն,
շինուածս կառուցանեն, այն ա-
մենայն առաքինութեանց սակի
են. այլ յոլովագոյնք 'ի մահա-
ցուաց որովայնի և քնոյ անձնա-
տուրք՝ անդէպք և անկիրթք իբրև
զնժդեհս ոմանս անցին ընդ կեա-
նս, որոց արդարև հակառակ
օրինաց բնութեան մարմինքն հեշ-
տալի. իսկ հոգիք եղեն ծանրա-
բեռն։ Ես ոչինչ ընդհատ 'ի մա-
հուանէ զնոցա կեանս համարիմ.
զի երկաքանչիւր ընդ լռութեամբ
ծածկին։ Եւ արդ ինձ այսպէս
թուի թէ կեալ և վայելել հոգւով
այնոցիկ է՝ որ վաստակոց ինչ
պարապեալ գովելի ինչ գործով
և պիտանի արուեստիւք 'ի խնդ-
դիր լինին համբաւոյ։ Սակայն 'ի
խուռն բազմութեան գործոց,

բնութիւն ցուցցէ զիւրաքանչիւր
ճանապարհ ։

Գ․ Գեղեցիկ է բարիս գործել
հաստատակաց, այլ և բարւոք խօ-
սել ոչինչ անտեղի ․ 'ի խաղաղու-
թեան և 'ի պատերազմի պարտ է
մեծանուն հանդիսանալ, որ գոր-
ծեցին և որ զայլոց գործս 'ի գրի
հարին՝ գովութեանց գտան ար-
ժանաւորք ։ Թէպէտ և ինձ գըլ-
խովին ոչ զուգական փառաց հա-
մարիցին արժանի մատենագիրն
և մատենագրելոցն գործոն, սա-
կայն և այնպէս ամենադժուարին
վարկանիմ գործ վիպագրել ըզ-
դէպս ․ նախ այնու իսկ՝ զի բանքն
հաւասարել պիտին գործոցն ․
երկրորդ անգամ զի եթէ ուրեք
զեղեռունս 'ի պարսաւել առնու-
ցուս, բազմաց առ չարութեան
և առ նախանձու թուիցին բանքդ ։
Ուր եթէ զմեծամեծ արութեանց
և զփառաց լաւորերոյ յիշատակ
առնիցես, զոր ինչ ոք դիւրագործ
անձին վարկանի՝ առ ոչինչ դրէ ․
իսկ եթէ գեր 'ի վերոյ՝ կեղծիս

ստայօղս առդնէ ։ Այլ ես 'ի սկըզ-
բան անդ 'ի պատանեկութեան
հանդոյն բազմաց մխեցայ ժրա-
ջան 'ի գործ հասարակաց. և ընդ-
առաջ ելին ինձ խոչ ընդ ոտն խա-
փանարարք ոչ սակաւ ։ Քանզի
փոխան ցածութեան, ժուժկա-
լութեան և առաքինութեան՝ զօ-
րանային յայնժամ ժպրհութիւն,
ընչից վաստումն և արծաթսիրու-
թիւն։ Յորոց թէպէտ 'ի բաց գար-
շէին միտք իմ անսովոր չարագիւտ
արուեստից, սակայն դիւրահրա-
պոյր 'ի բազմադիմի յոռութիւնս
անդ ուրեք՝ որսացեալ կային 'ի ծու-
ղակ փառասիրութեան. և մինչ-
դեռ 'ի խառնաւոր գնացից այլոց
խորշէի՝ նոյն տենչ փառաց և համ-
բաւոյ և մախանք ըստ օրինակի այ-
լոց և զիս տանջէին ։

Դ. Իսկ յորժամ 'ի բազմապա-
տիկ աղէտից և 'ի վտանգաց ան-
դորրացան միտք իմ, և ընտրեցի
զմնացորդ կենաց իմոց անցուցա-
նել հեռի 'ի հասարակաց գործ-
առնութենէ, ոչ յօժարեցի մեղ-

կութեամբ և դատարկութեամբ
զպատուական ժամանակն պարա-
պոյ վանել, և ոչ 'ի գործել
զերկիր, կամ յարշաւանս որսոյ,
կամ յայլ ինչ ծառայական վա-
րել զկեանս 'ի գործ. այլ կրկին
դարձ առնելով 'ի ձեռնարկեալն
յինէն ուսումն, յորմէ անխոր-
հուրդն փառասիրութիւն սար-
տոյց զիս, եդի 'ի մտի՝ ընտիր առ-
նելով 'ի հռովմէական վիպաց՝
գրել որ ինչ արժանի յիշատակի
ինձ թուէին, մանաւանդ զի յա-
կընկալութենէ, յերկիւղէ և 'ի
կողմնասէր խորհրդոց ազատ էին
միտք իմ: Եւ արդ զԿատիլինեայ
դաւակցութենէն, որչափ ինչ
ճշգրտագոյնս մարթացայց, սա-
կաւուք աւանդեցից: Քանզի զայդ
գործ վասն եղեռանն նորութե՟
և մեծի վտանգին, ընդ առաջին յի-
շատակելիս համարիմ: Այլ մինչ-
չև բուռն հարեալ զանցիցն պատ-
մել, արժան է սակաւուք տալ
զնկարագիր առնն, թէ որպիսի
ոք էր:

երկց՝ միայն զի իշխանութեանն
հաստանել կարասցէ: Եւ ևս քան
զես երկթայր և վարանէր մտայոյզ
վայրագն այն 'ի չքաւորութենէ
և 'ի խղճէ եղեռանցն, որոց երկա-
քանչիւր յաճախեալ էին չարեօքն՝
զորոց 'ի վերանդր ասացաք: Հան-
դերձ ասքիմբք 'ի նոյն զնա դըր-
դէին և ապականեալ բարք քա-
ղաքացւոցն, զորս կրկին ախտք
չարաչարք և ներհականք տագ-
նապէին, զմնաւակ շուայտու-
թեան ասեմ և պղծութեան:
Եւ զի զբարուց քաղաքին անկա-
բանս, 'ի ձահ պատահէ մեզ 'ի
վերուստ առեալ կարգել սակա-
ւուք զօրինաց նախնեաց մերոց
տանցն և 'ի բանակի, թէ որպէս
կալան զհասարակաց վարչութի,
և որպիսի զայն մեզ աւանդեցին,
և թէ զիարդ գեղեցիկն այն և ըն-
տիր՝ տակաւ խորթացեալ վատ-
թար գտաւ և ամբարիշտ:

Զ. Զքաղաքն Հռոմ, որպէս
զոյգք աւանդեն, կանգնեցին և
կալան 'ի սկզբանէ արտմացիք՝ որք

առաջնորդութե՟ Ենեայ փախըս-
տեայք աստանդականք Թափա-
ռէին, և ընդ սոսա աբորիգեանք
ազգ մարդկան վայրենեաց, որոց
ոչ օրէնք էին և ոչ կարգ վարչու-
թեան, այլ ազատք 'ի սպառ և
արձակք: Օտարացուցիչ իմն թը-
ւի թէ որպէս սոքա ազգաւ այլ
և այլ, բարբառով այլաշուրթն,
և սովորութեամբ այլատարազ, 'ի
միում ուրեք ժողովեալ քաղաքի
'ի բնակակցութիւն դիւրեաւ ազ-
գախառնեցան: Այլ երբև յաջո-
ղեաց սոցա մեծանալ քաղաքօք,
կարգօք և կալուածովք, և շատ
իսկ բարգաւաճ երևէին և ճոխա-
ցեալ, որպէս սովորութիւն է յա-
ճախ մահկանացուաց, 'ի մեծու-
թենէ սպրդեալ եմուտ 'ի ներքս
նախանձ: Վասն որոյ Թագա-
ւորք և ժողովուրդք սահմանա-
կիցք պատերազմաւ 'ի վերայ յառ-
նէին: Նուազունք ոմանք 'ի բա-
րեկամաց ձեռն տուեալ օգնա-
կանութեան, այլք ահաբեկեալք
խորշէին 'ի վտանգէն: Իսկ հռով-

մայեցիք առ անկին և 'ի պատե-
րազմի գուն գործէին աճապա-
րել, պատրաստ կալ, այր զընկեր
խրախուսեալ քաջալերել. Թըշ-
նամեաց ընդ առաջ ելանել, և զա-
զատութիւն և զհայրենիս և զծը-
նողս զինուք պատսպարել: Եւ
յետ վանելոյ քաջութեամբ զվը-
տանգս, դաշնակցաց և բարեկա-
մաց ձեռն տային, բարիս մնա-
ւանդ առնելով քան թէ բարե-
բարեալք՝ բարեկամս յաճախե-
ին: Զիշխանութիւն օրինաւոր և
զանուն պետութեան Թագաւո-
րական ունէին, արք տիօք և մար-
մնով տկարք. այլ հզօրք հանճա-
րով ընտրէին 'ի խորհել զիրաց
հասարակաց, որք և վասն հասա-
կին և վասն հայրախնամ յանձան-
ձանացն Հարք կոչեցան: Այլ
յորժամ իշխանութիւն Թագա-
ւորաց, որ 'ի սկզբան անդ 'ի պահ
ազատութեան և 'ի բարգաւա-
ճանս իրաց աշխարհին կարգեալ
էր՝ 'ի գոռոզութիւն և 'ի բռնա-
կալութիւն շրջեցաւ, փոխեցան

այնուհետև և կարգք տեսչու-
թե՛ , և տարեւոր իշխանութեանք
եղան կրկին պետք: Զի այսու
կարգաւ անմարթ համարեցան
մարդկային մտաց ապարթանել
իշխանութեանք :

Է. Յայնժամ ապա այր իւրա-
քանչիւր գլուխ 'ի վեր ամբա-
նայր և կազմ և պատրաստ զհան-
ճար մտացն ունէր. քանզի առ
թագաւորօք կասկածելի են լա-
ւաբարոյք քան զչարս , որոց եր-
կիւղալի է միշտ օտարին առաքի-
նութիւն: Եւ յետ զազատութիւն
'ի ձեռս բերելոյ, անհաւատալի
իմն թուի , թէ որպէս արագ ա-
րագ աճեցեալ զարգանայր քա-
ղաքն , գեղեցիկ մոլութեամբ ըզ-
հետ փառաց զակատեալ: Անդ
պարմանիք դեռահասակ, այն ինչ
յաշխատութիւն և 'ի պատերազմ
բաւականք, զօրէն քաջամարտկաց
յասպարիզին կրթէին , և առա-
ւել ընդ զարդ զինուց և ընդ մար-
տիկ երիվարս քան 'ի կոչունս և 'ի
գինեբրբուս հեշտանային: Վասն
այսորիկ այսպիսի մարդկան ոչ

մի ինչ աշխատութիւն անատվոր, ոչ տեղի ինչ խիստ և անհարթ երևէր. և ոչ բնաւ թշնամեաց ահաւոր, քանզի արութիւն քաջութեան զամենայն արհամարհեալ ընկճէր: Այլ մեծ էին 'ի նոսա փառաց մրցմունք. այր այր 'ի նոցանէ վէրս տալ թշնամւոյ, ընդ պարիսպս վերելակել, և գործովք արութեանց երևելի լինել փառասիրէր. և զայս իսկ մեծափարթամ ձոխութիւն, զայն համբաւ բարի և գերագոյն ազնուականութիւն համարէր. գովութեանց ամենայն ոք ցանկացող էր և առատաձեռն յինչս զառաւելութիւն փառաց և չափով ստացուածս խնդրէր: Մարթ էր ինձ աստանօր բերել 'ի մէջ քանիցս հռովմայեցիք ջոկատիւ միով զբազմաձեռն խումբս թշնամեաց խորտակեցին, և քանի քաղաքս անձեռագործ ամրացեալս առին պատերազմաւ. այլ խիթամ զի մի հեռագոյնս զարտուղեցայց յառաջարկութենէս:

Ը. Այլ արդարեւ բաղդն է իշ-
խան ամենայնի, և ըստ հաճոյս
քան ըստ իրաւանց փայլէ և մը-
թագնի : Աթենացւոցն արու-
թիւնք, որպէս ես կարծեմ, մե-
ծամեծք էին ապաքէն և շքեղք,
այլ նուազ քան զհռչակ համբա-
ւոյն . այլ քանզի ականաւոր մա-
տենագրաց հանճարք կացին առ
նոսա, ընդ տիեզերս համօրէն մե-
ծապէս հռչակեցան գործք նո-
ցին : Այսպէս այնչափ ինչ մեծ
գրեցան արութիւնք գործելեացն,
որքան հանճարք զարմանալիք
կարացին բարեբանել զայնս : Իսկ
ժողովրդեան Հռովմայ չեղև նոյն
յոլովութիւն վիպագրաց, քանզի
խոհականագոյնն 'ի նոցանէ գոր-
ծօն ևս գտանէր, և ոչ ոք զհան-
ճար առանց ուժոյ 'ի կիր առնոյր,
և ամենայն ոք լաւագոյն զգոր-
ծելն քան զխօսել համարէր, և
սիրելի զարութիւնս իւր յայլոց
տեսանել գովեալ, քան թէ ինքն
զայլոցն պատմել :

Թ. Այսր աղագաւ առ տնին

և 'ի բանակի վարք անստգիւտք
պաշտէին ։ Միաբանութիւն հա-
մաշունչ, ագահութիւն և ոչ մի,
իրաւունքն և պատշաճ 'ի բնէ քան
թէ օրինօք բարգաւաճէին ։ Զկագ
և զկռիւ և զպատրանս ընդ թշ-
նամիս վարէին . քաղաքացւոյ ընդ
քաղաքացի զառաքինութեանց էր
մրցումն ։ Ի պաշտամունս դից մե-
ծափարթամք, 'ի տան սակաւա-
պէտք, ընդ բարեկամս հաւատա-
րիմք էին ։ Այսոքիւք կրկին հնա-
րիւք, ասեմ իսկ քաջութեամբ 'ի
մարտի և 'ի յաջորդել խաղաղու-
թեան արդարութեամբ, և ան-
ձանց և իրաց աշխարհին հոգ խը-
նամոյ տանէին ։ Եւ ասացելոցս
հաւաստիք մեծամեծք, զի բա-
զում անգամ պատուհասակոծ 'ի
պատերազմի արարին զյարու-
ցեալս ընդդէմ հրամանաց 'ի
կռիւ, և զդանդաղեալս 'ի կոչ
փողոյն մեկնել 'ի մարտէ, քան ո-
րոց զդրօշն լքանել կամ հալա-
ծականք թիկնադարձոյց լինել իշ-
խեալ էր ։ Իսկ 'ի խաղաղութեան

բարերարութեամբ քան ահար-
կութեամբ զիշխանութիւն վա-
րէին. և անիրաւեալք լաւագոյն
ընարէին ներողամիտ լինել քան
վրէժխնդիր:

Ժ. Այլ յորժամ արութեամբ
և արդարութեամբ աճեաց հա-
սարակաց պետութիւնն և մեծա-
ցաւ, նուաճեցան թագաւորք զի-
նուք, նկուն եղեն զօրութեամբ
ազգք վայրագք և ժողովուրդք մե-
ծազօրք, Կարքեդոն նախանձորդն
հռովմէական պետութեան հիմն
'ի վեր տապալեցաւ, և ծով և ցա-
մաք բացան համօրէն առաջի նո-
րա, սկսաւ յայնժամ անգթանալ
բաղդն, և զամենայն ինչ վեր 'ի
վայր վրդովել: Որոց վաստակք և
վտանգք, կեղակարծ և դժուարին
դէպք դիւրատարք էին, նոցին
դատարկութիւն և ճոխութիւնք՝
զորս պարտէր նոցա ցանկալ տա-
րին, ծանունք և դառնաղէտք գը-
տան: Նախ ընչից և ապա իշխա-
նութեան յաճախեաց ցանկու-
թիւն, և զհետ սոցին յորդեցին

չարիք ամենայն ։ Քանզի ագա֊
հութիւն զհաւատարմութիւն և
զլաւութիւն և զայլ ամենայն մա֊
սունս բարեաց եղծ և խանգա֊
րեաց , և փոխանակ զլկտութիւն ,
զանողորմութ՟ն , զարհամարհանս
դից և զամենայն ինչ ընդ արծա֊
թոյ փոխանակել ուսոյց ։ Փառա֊
մոլութ՟ն զբազում 'ի մարդկանէ
խաբէբայս հարկեցոյց լինել , այլ
ինչ 'ի խոր սրտի , այլ ինչ 'ի շըր֊
թունս ունել ․ զբարեկամութիւն
և զթշնամութիւն ոչ ըստ իրքեան,
այլ ըստ անձին զինչպիտութեան
պաշտել ․ առ երեսս քան 'ի սրտի
բերել զլաւութիւն ։ Այսոքիկ 'ի
սկզբան տակաւ 'ի վեր երևեալ,
և էր երբէք զի պատուհասակոծ
ևս լեալ , ապա յորժամ իբր ախտ
ժանտ ընդ հանուր ծաւալեցաւ ,
կերպարանափոխայնուհետև քա֊
ղաքն լինէր , յորդարակորովև 'ի
բարուց վարչութենէն անգութ
և անբերելի եղեալ ։

ԺԱ․ Այլ իշխանասիրութիւն
նախ քան զագահութիւն զսիրտս

մարդկանն մղեալ զուածանէր ·
զի մերձաւորագոյն առաքինու-
թեան մոլութիւնս այս գտանէր ։
Քանզի փառաց, պատուոյ և իշ-
խանութեան լաւք և վատք միա-
պէս ըղձան, այլ նա ընդ ուղիղ
ճանապարհ հետամուտ լեալ, իսկ
սա թափուր յուղղութեանց՝ նեն-
գանօք և խաբէութեամբ զհետ
նկրտեալ ։ Արծաթսիրութիւն ըն-
չից է խնդրակ, որում ոչ երբէք
ցանկացաւ իմաստունն, սա հան-
գոյն իւր չարաթիւնիւք թաթա-
ւեալ՝ զմարմինս և զմտաց կատարէ
զքիլս արութեան . միշտ անոպայ-
ման է և անյագ, ոչ լիութեամբ
և ոչ չքաւորութեամբ չիջանի ։
Այլ յորմէ հետէ Ղուկիոս Սիղ-
ղա զինու բռնութեամբ կալեալ
զհասարակապետութ̃ն, և բարուք
սկսեալ՝ չարաչար տանէր վախ-
ճան, անդ էր տեսանել այնու-
հետև զյափշտակութիւն, զմատ-
նութիւն, և զաչարձակութիւն'ի
տուն օտարին և յագարակս, ոչ
չափ և ոչ սահման յաղթականաց,

դժնդակ և անագորոյն եղեռունս ընդ քաղաքացիս գործելով: Եւ այսոցիկ պատճառք, զի Սիղղա առ յինքն յանկուցանելոյ զզօրս ածեալս յԱսիա՝ ընդդէմ նախնեացն կարգաց զեղխօրէն և կարի իմն ընդարձակ ունէր զնոսա: Վայրք զուարճալիք և հեշտաբարք դիւրեաւ մեղկեցին 'ի գատարկութեան զվայրագ ոգի զօրականին: Անդ նախ սովորեցաւ բանակն հռովմէական բօղից և գիներբուաց պարապել, 'ի նկարս, յանդրիս և յանօթս պատուականս աչարձակ լինել, գողանալ զայնոսիկ և յափշտակել, մեհենակապուտս լինել, զսրբութիւնս համայն և զանսուրբս պղծել: Արդ զօրականքս այսոքիկ յետ յաղթականելոյ՝ չթողին և ոչինչ յաղթելոցն: Եւ զի յաջողութիւնք զիմաստնոց անգամ զմիտս թուլացուցանեն, և ոչ սոքա զեղծաբարոյք չափ դնել յաղթութեան կարացին:

ԺԲ. Յորմէ հետէ 'ի պատուի

եղև ընչից Ճոխութիւն , և նմին զհետ ընթանային փառք , իշխանութիւն և զօրութիւն , արհամարհ գտաւ առաքինութիւն , աղքատութիւն 'ի նախատինս , և անմեղութիւն 'ի չարամտութիւն գրեցաւ ։ Յայնժամ 'ի փարթամութենէ 'ի զեղխութիւն և յարծաթսիրութիւն մանկտին զառածաւ գոռոզութեամբ հանդերձ . յափշտակել , վատնել , զիւրովքն անփոյթ արարեալ՝ օտարին գոյից ցանկալ , զամօթ , զպատկառանս , զմարդկայինս և զաստուածայինս խառն 'ի խուռն առ ոչինչ գրել , և անցանել զանցանել ըստ չափ և ըստ պայման ։ Յորժամ զապարանս և զամարաստանս տեսանես հանդոյնս իմն քաղաքաց կառուցեալս , արժան է քեզ դառնալ հայել 'ի տաճարս դից 'ի նախնեաց մերոց 'ի պաշտօնատէր որերոյն կանգնեալս . ապաքէն նոքա զմեհեանս դից բարեպաշտութ̃բ , իսկ զտունս իւրեանց փառօք զարդարէին . և ոչինչ այլ յընկճելոց,

բայց զկար անխռովելոյ բռ-
նային: Իսկ սոքա ընդ հակառակն
արք վատք՝ մեծաւ անօրէնութե
զայն ամենայն 'ի դաշնակից ազ-
գաց յափշտակեն, զոր քաջո-
րեարն յաղթող թշնամեացն պար-
տելոց շնորհէր. իբր այն թէ ոչ
այլ ինչ իցէ իշխել, բայց անխ-
ռովել:

ԺԳ. Եւ ընդէր իցէ ինձ զայնո-
սիկ 'ի ներքս ածել, որ ականա-
տեսից եւեթ հաւատալի թուին,
բազմաց 'ի սոսկական մարդկա-
նէ զերկինս տապալեալ և զծովս
ծածկեալ շինուածովք: Որոց խա-
ղալիկ թուին եղեալ փարթամու-
թիւքն, զի զոր վայելչապէս օրէնք էր
նոցա ունել, 'ի յոռութիւնս նոքիմբք
անկշտանային: Իսկ մարմնա-
զեղծ պղծութիւնք, բոզարած լի-
նել և որ սոցին սակս դարշու-
թիւնք ոչ ինչ ընդհատ յաճա-
խեալ յորդէին. արուաց 'ի պէտս
անբնականս մատնել զանձինս, և
իգաց հրապարակաւ անառակել.
ընդ ծով և ընդ ցամաք առ 'ի հա-

մադամս կերակրոց խնդրակա-
շրջել . նախ քան զտենչ քնոյ քը-
նեածք . ոչ քաղցի մեալ և ոչ ծա-
րաւոյ և ոչ ցրտոյ և ոչ վաստա-
կելոյ , այլ այսոցիկ ամենայնի
կանխել զեղխութեամբ : Ադքք
մանկուոյն զհայրենի մեծութիւն
վատնեալ , ապա 'ի գործս անօ-
րէնս բորբոքէր : Մխոք ծրդեալք
'ի չարիս , ոչ հեշտեաւ ինչ յեաս
կայլին յանառակութեանց , այլ
մանաւանդ առաւել ևս ամենայն
հնարիւք 'ի շահել և 'ի վատնել
անձնատուրք լինէին :

ԺԴ. Յայսպիսի և յայսքան ա-
պականեալ քաղաքի դիւրին եղև
Կատիլինայ զամենայն արս անօ-
րէնս և եղեռնագործս իբրև ըզ-
գունդ մի թիկնապահաց զիւրև
ժողովել : Քանզի որ ոք անառակ ,
շուն , բոզարած , 'ի խառնավար
կեանս պորտոյ և ամօթանաց ըզ-
հայրենի ստացուածան վատնեալ
էր , որ ոք պարտուք ծանրաբեռ-
նեալ առ 'ի պատուհասէ եղե-
ռանց , դարձեալ և որք 'ի հայ-

րասպանութեն և 'ի սեղանակապ-
տութիւն դատապարտեալ, կամ
վասն չարագործութեանց յահէ
ատենին ըմբռնեալք, և որք դար-
ձեալ ստերդմնութեամբ և ա-
րեամբ քաղաքացւոց զպարէնս իւ-
րեանց հայթհայթէին, և համայն
ասել՝ ամենեքեան որ յերեսաց
ապիրատութեանց, 'ի կարօտու-
թենէ և 'ի խղճէ չարեաց տագ-
նապեալք, սոքա առ հասարակ
Կատիլինեայ մտերիմք էին և ըն-
տանիք: Եւ եթէ յանմեղաց ոք 'ի
բարեկամութեն նոցին ըմբռնէր, 'ի
հանապազորդ ընտանութենէ նո-
ցա և 'ի հրապուրանաց հեշտեաւ
նման և հաւասար նոցին եղանէր:
Այլ զպատանեաց առաւելապէս
խնդրէր զմտերմութիւն, որոց ո-
գիքն թոյլ և հասարակ գայթա
դիւրըմբռնելի 'ի պատրանս էին.
զի ըստ իւրաքանչիւր սիրոյն ըղ-
ձակերտութեան ումանց 'ի նոցանէ
բոզս բաշխէր, այլոց շնեար և ձիան,
և միով բանիւ՝ ոչ 'ի ծախս խը-
նայէր և ոչ 'ի պատշաճս համես-

տութեան, միայն զի երախտա-
պարտս և հաւատարիմս իւր զնո-
սա առնել կարիցէ : Եղեն ապա-
քէն որք համարեցան թէ պատա-
նիք յաճախեալք 'ի տուն Կատի-
լինայ չէին իսկ ցածունք ոմանք.
այլ համբաւս այս յայլոց իրաց
գուշակութեամբ քան թէ 'ի հա-
ւաստեաց ուստեք հռչակեալ :

ԺԵ. Անդստին իսկ Կատիլինա
'ի պատանեկութենէ իւրմէ 'ի բա-
զում ոճիրս պղծագործս էր ըմ-
բռնեալ, ընդ ազնուականի ումեմն
օրիորդի, ընդ քրմուհւոյն Վես-
տայ, և այլ սոյնպիսի գարշանս
հակառակ ամենայն օրինաց և
կարգաց գործեալ : Յետոյ ու-
րեմն հարաւ 'ի սէր Աւրեղիայ Ո-
րեստիլլայ, յոր լաւ ոք այր բաց
'ի գեղոյն չգտանէր այլ ինչ գո-
վելի. և զի երկնչէր Որեստիլլա
յերեսաց խորթ որդւոյն՝ որ յար-
բունս հասեալ էր՝ լինել նմա կը-
նութեան, վասն որոյ հաւաստի
համարի Կատիլինայ սպանեալ ըզ-
պատանին, և անօրէն հարսանեօք

ամայի շտունն կացուցեալ ։ Եւ այս նորա գործ թուի ինձ մղեալ զնա առաւելապէս 'ի լրումն խորհրդոց անօրէնութեանն ։ Քանզի անձն նորա ժանտ , աստուածոյ և մարդկան ատելի , ոչ յարթմնի և ոչ 'ի քուն հանգչել կարէր , այնպէս խայթ խղճի կեղեքէր ըզմիտս նորա ։ Դէմք մեռելատիպ , աչք սորսորեալ , գնաց մերթ շուտ և մերթ յամրաքայլ . և ապշութն իմն յերեսս նորա և 'ի կերպարանս նկարեալ երևէր ։

ԺԶ . Բայց զպատանիս ըմբռնեալս յիւր ծուղակ , որպէս կանխեալ ասացաք , բազմազան հնարիւք մարզէր յոճիրս անօրէնութեանց . 'ի նոցանէ սուտ վկայս և կեղծեալ կտակագիրս յարդարէր . զհաւատս , զբաղդ և զվտանգս յաչս գնել ուսուցանէր . և յորժամ անպատկառս և վատանունս զնոսա առնել յաջողէր , յայլ մեծագոյն չարիս զնոսա ապա խրախուսէր ։ Եթէ պակասէին անօրինելոյ դէպք , զանմեղս իբրև

նեղէոս. ընդ սոսա և բազումք 'ի գաղթականաց և յաղագս քաղաքաց առ իւրեանցն ազնուականք։ Էին դարձեալ և բազումք յազնուականաց անտի գաղտագողի խորհրդակիցք՝ զորս խրախուսէր առաւել յոյս տիրապետութեան քան կարօտութիւն կամ այլ ինչ պէտք։ Դարձեալ և բազմութիւն ազատորդի մանկտւոյն ձեռնտու էր խորհրդոց Կատիլինայ. որոց 'ի դատարկութեան մարթէր յօրանալ 'ի փառս և 'ի մեղկութեան, և որք զկեղակարծն քան զաներկեան, և զպատերազմ քան զխաղաղութիւն լաւագոյն համարէին։ Եղեն յայնժամ որք և զՄարկոս Կրասոս դիտակ խորհրդոցն նորա համարեցան. զի Կն. Պոմպէոս ոսոխ նորա զօրավարէր մեծի բանակի, և ցանկալի էր Կրասոսի տեսանել զոյր և է զօրութիւն հզօրացեալ քան զնորայն, և զի յուսայր 'ի յաջողել դաւադրութեանն՝ իշխան կալ նոցին։

ԺԸ. Այլ յառաջ իսկ քան զայս

դաւագիր եղեն ոմանք ընդդէմ
հասարակապետութեան, ընդ որս
և Կատիլինա զոր ստուգապա-
տում ըստ խմուման կարի արարից:
Առ հիւպատոսութեամբ Լ. Տուղ-
ղոսի և Մ. Լեպիտոսի, ընտրեցան
բդեաշխք Պ. Աւտրոնիոս և Պ.
Սուլլա, և օրինաւոր հարցափոր-
ձիւ 'ի յայտ եկեալ հետամնել
նոցա իշխանութեան, պատուհա-
սեցան: Զկնի ոչ բազմաց և Կա-
տիլինա յանցաւոր գտեալ 'ի հա-
րստահարութիւնս արգելաւ մի
թեկն ածել հիւպատոսութեան,
որ 'ի սահմանադրեալ ժամուն
չէր երևեալ: Իր զայնու ժամա-
նակաւ և Պիսոն ոմն պատանի ազ-
նուական, խիզախ յոյժ, չքաւոր
ընչիւք, աղմկայոյզ, զոր կորստու-
թիւն և թիւր բարք դրդռէին ազ-
մկել զհասարակապետութիւնն:
Ընդ սմա Կատիլինա և Աւտրոնիոս
խորհրդակցեալ 'ի մեջկոյս դեկ-
տեմբերի, պատրաստէին 'ի մուտս
յունուարի խողխողել 'ի Կապի-
տոլիոնի զբդեաշխն Ղ. Կոտտա,

և Ղ. Տորկուատոս, և ինքեանք բռնակալեալ յղել զօրօք զՊիսոն ունել զկրկին Սպանիա: Իբրև դաւն յայտնեցաւ, զխորհուրդ կատարածին փոխեցին 'ի հինգերորդ օր փետրուարի. և յայնժամ ոչ բդեշխից միայն, այլ և բազմաց յատենակալաց մահ մեքենայէր: Եւ եթէ չէր շտապեալ Կատիլինայ նշան տալ ընկերացն առ դուրս ատենին, յաւուր յայնմիկ դժընդակագոյն եղեռն գործեալ լինէր, որպիսի յաւուրց հիմնարկութէ Հռովմայ չէր գործեալ: Եւ զի չէր տակաւին ժողովեալ դաւադրաց խումբ, այս ևս 'ի դերև ելան զխորհուրդն:

ԺԹ. Յետ այսորիկ ջանիւք հնարից Կրասոսի առաքեցաւ Պիսոն գանձապետութեամբ փոխանակ մարզպետի յայսկոյս Սպանիոյ, քանզի ոխերիմ Պոմպէի ճանաչէր զնա Կրասոս: Սակայն և ոչ ծերակոյտն յակամայս ինչ ետ նմա զմարզպետութիւն, զի ցանկայր զայլն անզգամ հե-

ռացուցանել 'ի հասարակապե-
տութենէ. և զի յոլովագոյնք 'ի
լաւորերոյ Թիկունս օգնականու-
թեան 'ի նմա գտանել համարէին.
քանզի ահաւոր իսկ էր յայնժամ
զօրութիւն Կն. Պոմպէոսի: Բայց
սա այս Պիսոն սպանաւ յուղւոջ 'ի
հեծելագնդէ սպանիացւոց, զոր
ածէր 'ի բանակն: Են որք պատ-
մեն թէ անխրատ, սէգ և անգութ
բռնակալութեն նորա չիցեն հան-
դուրժեալ բարբարոսք. և այլք
թէ հեծելազօրն այն հինաւուրց
և հաւատարիմ պաշտօնեայք Կն.
Պոմպէի ակնարկութեամբ նորա
ձեռն մխեալ իցէ 'ի Պիսոն. քան-
զի ոչ երբէք սպանիացիք, թէ-
պէտ և յառաջագոյն ընդ բազում
բռնակալութեամբք հարստահա-
րեալ, յայսպիսի ինչ եղեռն մտա-
բերեցին: Այլ կալցի զայս որպէս
ոք և ախորժէ: Եւ այսչափ ինչ
հերիքասցի վասն առաջնոյ դա-
ւադրութեանն:

Ի. Իբրև ետես Կատիլինա 'ի մի
վայր եկեալ զիւրան, զոր 'ի վեր

անդր առացի, Թէպէտ բազում անգամ ընդ միում միում 'ի նո֊ցանէ խօսեալ էր, սակայն կարևոր համարեցաւ միահամուռ կոչել զնոսա և քաջալերել. մեկնեցաւ 'ի ներքին կողմն տան, և 'ի բաց հանեալ զամենեսին՝ յորոց մարթ էր կասկածել, խօսեցաւ այսպէս. "Եթէ ոչ արութիւն ձեր և հաւատարմութիւն յայտնի էր ինձ, 'ի զուր դէպքս բարեպատեհ ընդ առաջ լինէին մեզ, և վայրա֊պար արդեօք էր ակնկալութիւնս այս մեծ տիրապետելոյ, և ոչ ես առ ապշութեան կամ առ յան֊դգնութեան զանստոյգն փոխա֊նակ ստուգին խնդրէի: Այլ զի 'ի բազում և 'ի մեծամեծ վտանգս ծանեայ զձեզ քաջս և ինձ հաւա֊տարիմս, 'ի շքեղ և 'ի մեծամեծ արութիւնս ձեռնարկել խրախու֊սեմ. զի հաւասար ձեզ և ինձ շահ և զեան առաջի աչաց նկատեմ: Քանզի համակամութիւն 'ի կա֊մել զնոյն և 'ի չկամել՝ հաստատուն բարեկամութեան է նշանակ: Զոր

խորհեցայն, իւրաքանչիւր ումեք
'ի ձեռնջ կանխաւ ծանուցի. բայց
արդ օր ըստ օրէ և ես վասն յիս
խանդ յածել զմտաւ թէ որպիսի
պայման կենաց առաջի կայ մեզ,
եթէ մեք մեղէն չհանիցեմք զան_
ձինս յազատութիւն: Քանզի յոր_
մէ հետէ հասարակաց պետու_
թիւն 'ի ձեռս և 'ի կամս սակա_
ւուց ոմանց հզօրաց անկաւ, թա_
գաւորք և չորրորդապետք հարկա_
տուք նոցին կացին միշտ, և ազգք
և ազինք ընծայաբերք նոցին. այլք
առ հասարակ անզօրք և զօրա_
ւորք, տոհմիկք և անտոհմք ընդ
ռամիկս 'ի համարի եմք առանց
շնորհի, թափուր յիշխանութենէ,
հպատակք նոցա, որոց՝ եթէ հա_
սարակաց պետութիւնս յուժի
կայր, աչաւորք լինէաք: Այս_
պէս ամենայն շնորհք, իշխանու_
թիւն, պատիւ և ճոխութիւնք առ
նոսա են, կամ առ որս նոքայն ա_
խորժեն. և մեզ բաժին մերժումն
միայն, վտանգք, գատափետու_
թիւն և աղքատութիւն: Ցերբ

այսոցիկ ժուժայցեմք , ո՛ քաջք ·
չիցէ՞ լաւագոյն մեռանել արու-
թեամբ քան զթշուառ և զամօ-
թալից զայս կեանս , այսպն և կա-
տակ ամբարտաւանութեան այ-
լոց լինել , և 'ի վախճանի անար-
գանօք կորնչել : Երդուեալ 'ի դիս
և 'ի մարդիկ , զի 'ի ձեռս մեր է
յաղթութիւն : Հաստատ առոյգ և
ոգի արիական ընդ մեզ է , իսկ 'ի
նոսա ամօք և ծերութեամբք ա-
մենայն ինչ ծերացեալ · շատ է
ձեռն 'ի գործ առնել , և յաջո-
ղեսցի ամենայն : Քանզի ո՞ք 'ի
մահացուաց , որոյ իցէ արիական
միտք և հանդուրժել մարթասցի
ընդ առաւելութ̃ի մեծութեանց
նոցա զորս վասանեն առ 'ի լիր ար-
կանել 'ի ծովու , և առ հարթելոյ
զլերինս , ուր մեզ առատինքն ան-
գամ կարեորք պակասեն : Նոքա
տուն 'ի տուն յարեն , իսկ մեզ և
ոչ յարկք աղքատին · պատկերս
դնեն , անդրիս և գրուագս · քան-
դեն զշինուածս և այլս փոխանակ
կազմեն , և համառօտիւ ասացեալ`

ամենայն հնարիւք վատնեն ըղ-
դրամս և շռայլեն, սակայն և այ-
նու տարապայման զեղխութեամբ
չկարեն յաղթել մեծութեանց.
իսկ մեզ կարօտութիւն 'ի տան,
պարտք արտաքոյ, ձախողութիւնք,
և դժնդակագունիցն կասկած:
Արդ զի՞նչ այլ մնայ մեզ, քան
զթշուառ կենդանութիւն: Եւ
առ ի՞նչ թմբրեալ չզարթնու-
ցումք տակաւին: Ահա, ահա-
ւասիկ որում յաճախ ըղձակերոն
լինէիք, ազատութիւն, ընդ նմին
և փարթամութիւն, փառք և
վայելչութիւն առաջի կան մեզ.
զայս ամենայն յաղթականաց եդ
բաղդն 'ի վարձ: Ինքնին իսկ դէպք,
ժամանակն, վտանգք, կարօտու-
թիւն, փարթամ կողոպուտ պա-
տերազմին քան զյորդոր ճառս
քաջալերեալ զձեզ խրախուսեն:
Թէպէտ իբրև սպարապետ ընդ-
ունիցիք զիս և թէ որպէս զինուո-
րակից, ոչ հանճարով և ոչ ա-
րութեամբ վերջացայց յօժանդա-
կելոյ ձեզ: Զայսոսիկ, թէպէտ

և հիւպատ, հաւատարակից ընդ ձեզ, որպէս յուսացեալս եմ, գործեցից. և դուք, եթէ չխաբիմ, 'ի հպատակել առաւել քան 'ի հրամայել լիջիք կարողք ,,:

ԻԱ. Իբրև զայսոսիկ լուան ամենայն չարեօք լցեալ մարդիկն, որոց ոչ իրաւացի ինչ ակնկալութիւն էր ուստեք, թէպէտ զհասարակաց խաղաղութիւն վրդովել վարձք մեծ թուէին նոցա, սակայն և այնպէս խնդրեցին յօրովք 'ի նոցանէ գիտել, թէ ո՞ր պայմանք իցեն պատերազմին, ո՞ր վարձք զինուց, զի՞նչ և ուստի՞ ակընկալութիւն և կարևորաց նըպաստք: Խոստանայր յայնժամ Կատիլինա զթողութի պարտուց, զտարագրութիւն ճոխից, զպատենակալութիւնս, զքրմութի, զաւար, և որ ինչ այլ պատերազմ և ցանկութիւն յաղթականաց առեալ բերէ: Եւ յաւելոյր թէ Պիսոն յայսկոյս Սպանիոյ և Գ. Միտտիոս Նուկերինոս 'ի Մաւրիտանիա զօրօք իւրեանց խորհրդա-

կից են գործոյս . Թէ 'ի խնդիր է
բդեշխութեան Կ . Աւտրոնիոս ,
զոր յուսամ առնուլ ինձ յիշխա-
նակից , այր ընտասուն և կարօ-
տեալ յամենայնի . և 'ի հասանել
նորա իշխանութե՟ ձեռն 'ի գործ
արարից : Եւ յետ այսորիկ կըշ-
տամբէր անիծիւք զամենայն լա-
ւաբարոյ մարդիկ , և զիս մի յիւ-
րոց անտի յանուանէ գովէր . ու-
մեմն զաղքատութիւնն յուշ ածէր
առ 'ի յորդոր , զայլ ոք ընչաքաղ-
ցութեամբն շահէր , զբազումս յի-
շատակս փոանդացն կամ նախա-
տանց , և զյոլովագոյնս յաղ-
թութեամբքն Սիղղայ և աւա-
րովք : Եւ երբև ետես զնոսա զա-
մենեսեան զուարթամիտս , յոր-
դոր եմ հետամտութեան խըն-
դրոյն հոգ ունել , և արձակեաց
զժողովն :

ԻԲ . Եղեն յայնժամ որք պատ-
մեցին թէ յաւարտել Կատիլինայ
զատենաբանութիւնն և յերդումն
զժողովականս բռնադատել ընդ-
ոձիր իւր , զարիւն մարդոյ խառ-

նեալ 'ի բաժակ գինւոյ և շուրջ
մատուցեալ բազմականացն . և
երրև ամենեքին ճաշակեցին յանի-
ծիցն . որպէս 'ի մեծահանդէս
պաշտամունս էր սովորութիւն ,
յայտնեալ նորա յայնժամ զխոր-
հուրդ իւր , որպէս զի գաւակիցք
մեծի եղեռանն հաւատարմա-
գոյնք այնու ընդ իրեարս կապես-
ցին : Ոմանք զայս ամենայն և այլ
բազում ինչ կեղծեալ համարեցան
'ի նոցանէ , որք կարծէին մեղմել
զատելութիւնն չարժեալ ապա
ընդդէմ Կիկերոնի՝ դժնդակու-
թեամբ չարեաց մեղապարտիցն
պատուհասելոց : Այլ այս մեզ
առ մեծութեանն ոչինչ այնչափ
քաջայայտ :

ԻԳ . Եւ գտաւ 'ի նմին ժողովի
Կ . Կուրիոս ումն ոչ աննշան քա-
ղաքի ծնունդ , երևելի և 'ի խառ-
նավար և յանօրէն գնացս , զոր
վասն ամենայն նշաւակութեանցն
իւրոց մերժեալ էին համարակալք
'ի ծերակուտէն : Սա ըստ յեղյե-
ղուկ մտացն և յանդուգն , ոչ ըղ-

լուեալն պահել գիտէր և ոչ զիւ֊
րոյին եղեռունս Թագուցանել. և
նա ոչ 'ի բանս և ոչ 'ի գործս հոգ
զգուշութեան երբէք ունէր: Ի
վաղուց յաճախէր նա առ Փու֊
լուիա տիկին ազնուական. և զի
չէր նմա այնչափ սիրելի առ ող֊
ջամտութեան 'ի տուրսն՝ յան֊
կարծ ուրեմն պանծանօք սկսա
զծով և զերկինս խոստանալ, և եր֊
բէք երբէք սպառնալ զինուք եթէ
ոչ անսայցէ ինքեան, և վայրագա֊
գոյնս քան զոր էրն հանապազօր
տարուբերեալ յուզել: Իսկ Փու֊
լուիայ զժպրհութեան Կուրիոսի
իմացեալ զպատճառս, ոչ ծած֊
կեաց զայնպիսի վտանգ մեծ հա֊
սարակապետութեան. և զանուն
պատմողին Թագուցեալ՝ 'ի վեր
եհան բազմաց զդաւադրութիւն
Կատիլինայ որպէս և լուեալն էր:
Ընդ այս լուր վառեցան խոր֊
հուրդք մարդկան՝ աճապարեալ
կացուցանել զՏ. Կիկերոն 'ի բդ֊
դեաշխ. քանզի յառաջագոյն նա֊
խանձու մաշէին բազումք յազ֊

նուականաց, և իբրև պղծել զիշ-
խանութիւն համարէին եթէ առն
անիշխանի ծննդեամբ թէպէտ ե-
րևելւոյ տացի այն 'ի ձեռս: Այլ
'ի վերահաս վտանգին, նախանձ
և ամբարտաւանութիւն տեղի ե-
տուն:

ԻԴ. Արդ 'ի գումարել քա-
ղաքաժողով ատենին՝ ծանուցան
բդեաշխք Մարկոս Տուղղիոս, և
Կայիոս Անտոնիոս. որով անդէն
խռովեալ սասանեցաւ խառնի-
ճաղանճ ամբոխն դաւադրաց:
Սակայն ոչինչ նուաղէր զայրագ-
նութիւն Կատիլինայ, այլ յա-
ւուրց ցաւուրս և ևս յուզէր. ամ-
րացուցանէր զինուք զքաջադէպ
վայրս յԻտալիա. զարծաթ երաշ-
խաւորութեամբն իւրով կամ բա-
րեկամացն յանօթ առեալ՝ կու-
տէր 'ի Փեսուլ առ Մանլեայ ու-
մեմն որ նախաձեռն գտաւ ապա
'ի մարտ պատերազմի: Պատմէն և
զբազմութիւն ամենայնեղ մարդ-
կան միաբանեալ նորա յայնժամ
ընդ իւր, և կանայս իսկ ոմանս՝

որ 'ի սկզբան մարմնոյ պղծու-
թեամբ տարապայման ծախուց
տարեալ, հեծէին տակ ընդ պար-
տուք՝ յորժամ հասակն շահուցն
վախճան դնէր, թէպէտ և ոչ ան-
առակ զեղխութեան: Սոքօք Կա-
տիլինա ակն ունէր ապստամբե-
ցուցանել զատրուկս քաղաքին.
հրդեհել զքաղաքն, և զարս նոցին
կամ յինքն յանկուցանել կամ
կոտորել:

ԻԵ. Ի սոսա էր Սեմպրոնիա,
որ բազում անգամ առնացի յան-
դըգնութբ̃ յեղեռունս անկղե-
տացեալ: Սա այս կին զարմիւն,
գեղով, և արամբն և զաւակօք
յոյժ իսկ բարեբաղդ, 'ի յոյն և
'ի լատին դպրութիւնս վարժ,
յերգ և 'ի կաքաւ՝ անդր քան ըղ-
ստահման համեստութեան, նոյն
օրինակ և յայլ բազում արուեստս
զեղխութեան գերազանցեալ. որք
սիրելի եղեն նմա քան զվայելչու-
թիւն և զամօթխածութիւն: Ոս-
կւո̃յ արդեօք եթէ համբաւոյն ա-
ռաւել վատնիչ գտանէր, ոչինչ

դիւրին էր որոշել. այնչափ խառն կալթոտ եւ վաւաշ, մինչ զի ինքնին զհետ արանց շամբշէր: Յառաջ քան զայս բազում անգամ հաւատագրուժ, աւանդանենգ, սանրդումն, հաղորդ կոտորածոց գըտեալ, զեղխութեամբ եւ կարօտութեամբ զառածանէր: Հանճարով իսկ ոչ ինչ անհեթեթ, գիտէր տաղաչափել եւ ծաղրաշարժ յօրինել բանս, մերթ համեստս խառնել 'ի բանս, մերթ մեղկս եւ մերթ ցոփս. սակայն բազում զուարճաբանութիւնք էին 'ի նոսա, յոլով եւս տխուրժ քաղցրութիւնք:

ԻԶ. Սոքօք պատրաստեալ կատիլինայ համարձակէր 'ի խնդիր բդեշխութեան առաջիկայ ամին. յուսացեալ 'ի յաջողել ընտրութեանն, դիւրաւ ըստ հաճոյս իւր վարել զԱնտոնիոս: Եւ ոչ դարձեալ 'ի ամին ժամանակի դըլայր դադարէր ամենայն հնարիւք հաղբս լարելոյ Կիկերոնի. սակայն եւ ոչ նմա պակասէին նենգ եւ ճարտա-

րութիւն խորշելոյ 'ի նոցունց : Քանզի 'ի սկզբանէ բդեշխութե՟ իւրոյ մեծամեծ խոստմամբ 'ի ձեռն Փուլուիայ հաւանեցուցանէր Կ. զԿուրիոս, զոր 'ի վեր անդր յիշեցի, զխորհուրդս Կատիլինայ յայտնել ինքեան : Դարձեալ և զիշխանակից իւր զԱնտոնիոս հեռացուցեալ 'ի գաւառէն՝ թողեալ 'ի նա զմարզպետութիւն իւր, որպէս զի մի ինչ ընդդէմ հասարակապետութեան խորհեսցի . և շուրջ զիւրև թիկնապահս 'ի բարեկամաց իւրոց և 'ի ձերբազատից 'ի ծածուկ էր կացուցեալ : Յետ աւուրց գումարեցաւ ժողով քաղաքացւոց , և Կատիլինայ ոչ յաջողեալ ոչ խնդիրն և ոչ դարանք ընդդէմ բդեշխին , խորհուրդ կալաւ 'ի մարտ պատերազմի ձեռնարկել , և զվերջին փորձ փորձել . զի ամենայն գաղտնի հընարագիտութիւնք նորա ձախողակի ելից պատահեցին :

ԻԷ. Վասն այսորիկ արձակեաց զԳ. Մանլիոս 'ի Փեսուլ և յայն

կողմն Եւրոպիոյ, զՍեպտիմիոս զոմն Կամերտէս 'ի Փիգենիա, զԿ. Յուլիոս յԱպուլիա, դարձեալ և զայլս յայլ կողմանս որպէս և պատշաճ տեսանէր։ Եւ ինքն 'ի նմին ժամանակի 'ի Հռովմ մեծաձիգն վաստակէր, դարանամուտ բդեշխից լինէր, զհրդեհ քաղաքին պատրաստէր, զվայրս կարևորս սպառազէն ամրացուցանէր. ինքնին զինեալ՝ զնոյն պատուէր հրամանի և այլոց դնէր 'ի վերայ. յորդորէր, խրախուսէր կազմս և զգոյշս կալ հանապազ, զտիւ և զգիշեր տագնապեալ ըշտապէր, ոչ տքնութ̃ և ոչ աշխատութեամբ խոնջէր։ Յետոյ ապա երբև 'ի բազում ջանից չտեսանէր ինչ շահ օգտի, գիշերախառն վերստին գումարէր զգլխաւորս 'ի դաւադրաց 'ի ձեռն Մ. Պորկիոսի Լեկկայ. անդ տրտունջ մեծ կալեալ զվատութենէ նոցա ծանուցանէր. թէ որպէս կանխեալ արձակեաց զՄանլիոս յԵտրուրիա 'ի զինել զժողովուրդն յա-

առաջագոյն պատրաստեալ յիւր֊
մէ, նոյնպէս և զայլս յայլ քաջա֊
դէպ վայրս նախաձեռն առնել
մարտին, և թէ ինքն իղձ լինէր
երթալ 'ի բանակն, թէ արդեօք
ընկճէր զԿիկերոն զխաստակարն
խորհրդոց իւրոց ։

ԻԸ. Յորժամ այլք երկուցեալ
տարակուսէին, Գ. Կոռնելիոս
ասպետ հռովմայեցի խոստացաւ
ձեռնտու նմա լինել, ընդ նմա և Ղ.
Վարգոնտէոս ատենակալ սահ֊
մանեցին երթալ յետ սակաւուց
'ի նմին գիշերի արամբք զինելովք
առ Կիկերոն իբր յողջոյն նմին,
և յեղակարծուց յանպատրաստից
կալեալ զնա 'ի տան իւրում խող֊
խողել ։ Իբրև գիտաց Կուրիոս զմօ֊
տալուտ վտանգ բդեշխին, աճա֊
պարեալ ծանոյց նմա վաղվաղա֊
կի 'ի ձեռն Փուլուիայ զնենգն
պատրաստեալ. որով և երթելոցն
արգելեալ 'ի դրան, 'ի դերև ե֊
լանէր մեծեղեան անօրէնութիւն ։
Յայնմ ժամանակի ապստամբե֊
ցոյց Մանլիոս յԷտրուրիա զխառ֊

նիճաղանճն, որ առ տիրապե-
տութեամբն Սիղլայ զկալուածս
և զարարս ամենայն կորուսեալ՝
առ կարօտութեան և առ վշտի
զրկանացն ցանկայր յեղափոխու-
թեան իրաց: Ժողովէր դարձեալ
զաւազակս ազգի ազգի յաճա-
խեալս 'ի գաւառն յայնոսիկ, և
զոմանս 'ի զօրականացն Սիղլայ՝
որոց անառակ շռայլութիւն չէր
ինչ թողեալ մնացորդս 'ի բազ
մադանձ առեալ աւարէն:

ԻԹ. Իբրև այս ամենայն ազդ
լինէր Կիկերոնի, տեսեալ երկ-
ուստէք զվտանգն մեծ, և զի ոչ
ընդերկար մարթէր պահել ինք-
նին զքաղաքն յերեսաց դարանա-
կալացն, և ոչ իսկ զՄանլեայ զօ-
րացն զթիւ և զհետս գիտէր քաջ,
'ի վերեհան ծերակուտին զբանն,
որ վաղ իսկ հռչակ հարկանէր 'ի
ժողովրդեան: Արդ որպէս յա-
ճախ սովոր էր ծերակոյտն 'ի դը-
ժընդակ դէպս առնել՝ սահմա-
նեաց, զի փոյթ խնամոց կալցեն
բդեաշխք պահել զհասարակաց

պետութիւն 'ի վտանգէն: Այսու
օրինակաւ ծերակոյտն, ըստ օրի-
նաց հռովմայեցւոց, իշխանութի
մեծ բդեշխից տայր, բանակ կազ-
մել, պատերազմ մղել, նուաճել
զխարդ և է հնարիւք զդաշնակից
ազգս և զքաղաքացիս, առ անին
և 'ի զօրս ունել իշխանութիւն, և
վարել զամենայն դատ. քանզի ա-
ւանդ ժողովրդեան կամաց ոչ մի
ինչ իրաւունք էն 'ի սոսա բդեշ-
խից:

Լ. Եւ յետ աւուրց ոչ բազմաց
Լ. Սենիոս ատենակալ ընթեր-
ցաւ 'ի ծերակուտին նամականի
հասեալ առ նա, որպէս ասէրն,
'ի Փեսուլայ, յորում գրեալ էր՝ Կ.
Մանլիոսի զէն առեալ բազմամ-
բոխ զօրօք յառաջ քան զվեցե-
րորդ օր կաղանդաց Նոյեմբերի:
Զայս գործ առեալ՝ որպէս սովո-
րութիւն է մարդկան 'ի նմանօրի-
նակ դէպս, կէսք հրաշալիս և նո-
րանշանս աւետէին, այլք ժողով
խմբել, 'ի զէն ընթանալ, 'ի Կա-
պուա և յԱպուլիա ծառայա-

խումբ պատերազմ յարուցանել: Եւ վճռով ծերակուտին, Կ. Մարկիոս Լիչխան 'ի փետուլ յղեցաւ, և Կ. Մետեղղոս Կրետիկոս յԱպուլիա և 'ի սահմանս նորա: Սոքա երկոքեան զօրավարք արգելեալ կային առ դրունս քաղաքին չյաղթանակել զրպարտութեամբ սակաւուց ոմանց, որք սովոր էին վաճառել կաշառաքեկ զպատշաճն և զանպատշաճ: Եւ զի Կ. Պոմպէոս Հռուփոս 'ի Կապուա, և Մետեղղոս Կելէր 'ի Փիգենիա մարզպետք կային, հրաման եղև և սոցա ըստ պահանջել ժամանակի և վտանգայն զօրաժողով լինել: Եւ դարձեալ որ ոք զդաւադրութիւնն մենքենայեալ ընդդէմ հասարակապետութեն դուշակիցէ, տուրկաց ազատութիւն 'ի վարձ և ստատերս հարիւր, իսկ ազատաց արձակուրդ 'ի պատժոյ և ստատերս երկերիւր սահմանեցին: Պատուէր եղև դարձեալ զի բաժանեսցին սուսերամարտկացն խումբ 'ի Կապուա և յայլ ազատ

քաղաքս ըստ պիտոյից իւրաքանչիւր. և 'ի Հռովմ ընդ քաղաքն ամենայն գիշերապահք կարգեցին, և հրամանատարք նոցին կացցեն ստորին ատենակալք:

ԼԱ. Դղրդեալ խռովեցաւ յայնժամ քաղաքն, և կերպարանափոխ եղև. և 'ի մեծ բերկրանէս բարօրութենէն որ արգասիք էին երկարատև խաղաղութեան, յանկարծակի իմն 'ի տրտմութիւն զառածանէր: Անդ էր տեսանել այնուհետև զտագնապ տարակուսանաց և զխէթ կասկածանաց՝ ոչ 'ի տեղի ուրեք և ոչ 'ի մարդ ոք վստահել. առանց մարտի պատերազմի բարձեալ էր խաղաղութիւն, և ամենայն ոք ըստ մտացն ահաբեկելոյ կեղծէր ինքեան վըտանգս: Իսկ կանայք 'ի մեծութեան ձասպարակապետութեան անսովորք արհաւրաց մարտի, սուգ առեալ կոծէին, զձեռս պաղատագինս յերկինս ամբառնային, 'ի գութ խանդաղատէին զմատաղերամ մանկտւով, սակս

հարցանէին, յամենայնէ ահաբե-
կէին, զպերճանս և զգրգանս թո-
ղեալ՝ զանձանց և զհայրենեաց
հոգային: Այլ վայրագամիտն Կա-
տիլինա չկամէր 'ի խորհրդոցն,
թէպէտ պահակապանօք ամրա-
ցեալ էր քաղաքն և ինքն պղա-
տեան օրինօք 'ի քննութիւն հար-
ցափորձի կոչեալ 'ի Պաւղոսէ Ղու-
կեայ: Ի վերջէ ուրեմն կեղծա-
ւորեալ ամենեին, իբր յանիրաւի
զրպարտեալ գայր մտանէր 'ի ծե-
րակոյտն 'ի ջատագովութիւն ան-
ձին: Յայնժամ Մ. Տուղղիոսի
բդեշխին երկուցեալ յերեսաց
նորա և կամ 'ի ցասումն բարկու-
թեան բրդեալ՝ առենաբանեաց
ճառս ճարտարախօսս և օգտա-
կարս հասարակապետութեան,
զորս այս 'ի գիր անցուցեալ
հրատարակեաց: Այլ իբրև լը-
ռեաց նա 'ի խօսելոյ և նստաւ,
Կատիլինա որպէս և պատրաս-
տեալն էր, խոնարհեալ դիմօք և
աղերսական ձայնիւ աղաչէր ըղ-
ծերակոյտն մի դիւրահաւան այն-

պիսի ինչ զհրամն կարծել. զի
ծնունդ ազնուատոհմ և 'ի ման-
կութէ հետէ այնպիսի վարեալ
կեանս՝ ամենայն բարեաց գոյր
ակնկալել 'ի նմանէ. և չէր մարթ
ազնուականի առն, որ անձամբ և
նախնեօքն բարեբարեալ էր հռով-
մէական ժողովրդեան, կամել ընդ
կորուստ հասարակապետութեն,
և Մ. Տուղղիոսի՝ որ թարմնատար
քաղաքացին էր Հռովմայ, հսկել
'ի պահ նորին: Եւ իբրև սկսաւ
յաւելուլ և լուտանս՝ լռեցուցին
զնա աղաղակաւ, մատնատու հայ-
րենեաց և թշնամի զնա կարդալով:
Իսկ նորա զայրագինս գոչելով ա-
սէ. “Եւ քանզի շուրջ պատեալ 'ի
թշնամեաց գահավէժ մղիմ, ընդ
փլատակաւ հասարակապետու-
թեան խափուցից զհրդեհն զինև
բորբոքեալ”:

ԼԲ. Աճապարեալ ապա շտապ
տագնապաւ դարձ արար 'ի տուն.
և բազումս մտախոհ եղեալ անդ,
զի և դարանքն ընդդէմ բդեշխին
ընդունայն ելանէին, և 'ի հրդե-

հէն տեսանէր զքաղաքն դիշերա-
պահօք ամրացեալ, լաւ համարե-
ցաւ ստուարացուցանել զբա-
նակն, և չև խմբեալ լեգէոնացն
կանխել պատրաստել որ ինչ կա-
րևորք էին մարտի, և գիշերախառն
սակաւուք ոմամբք խոյս ետ 'ի բա-
նակն Մանլեայ: Եւ Կեթեգոսի
և Լենտուլեայ և այլոց՝ զորոց գի-
տէր զյանդգնութիւն՝ պատուէր
ետ որով և է հնարիւք հաստա-
պնդել զզօրութիւն դաւադրաց,
'ի գլուխ հանել զդաւն ընդդէմ
բդեշխին, և զկոտորածս և ըզ-
հրդեհ և զամենայն նախաշաւիղ
խռովս պատերազմի 'ի պատրաս-
տի ունել, խոստացեալ ընդ հաւ
հզօր ձեռամբ գալ մերձենալ 'ի
քաղաքն: Մինչդեռ այս ամենայն
լինէր 'ի Հռոմ՝ Գ. Մանլիոս
արձակէր զոք յիւրոց անտի առ
Կ. Մարկիոս իշխան բանիւքս այ-
սոքիւք.

ԼԳ. Երդուեալ 'ի դիս և 'ի
մարդիկ, իշխանդ, զի ոչ ընդդէմ
հայրենեաց զինեալ է մեր, և ոչ

'ի վնաս ուրուք յարուցեալ, այլ-
'ի պահ զգուշութեան անձանց
յերեսաց անիրաւութեան: Թը-
շուառք և կարօտեալք 'ի հարստա-
հարութենէ և յանգթութենէ
վաշխառուաց, յոլովք 'ի մէնջ
զրկեալք 'ի հայրենեաց, և ամե-
նեքեան 'ի համբաւոյ և 'ի գոյից,
չմարթեմք ըստ Նախնեաց սովո-
րութեան պաշտպանել օրինօք,
և ոչ կորստեամբ հայրենի ստա-
ցուածոց ազատ ունել զմարմին,
այնչափ խստացան 'ի մեզ տո-
կոսառուք և կուսակալք: Յաճախ
Նախահարք ձեր ողորմելով ռամ-
կին Հռովմայ` վճռովք իւրեանց
ձեռն Նպաստից մատուցին կարօ-
տութեան Նոցա. և մօտ իսկ 'ի մեր
ժամանակս ծանրութիւն վաշխից
հաւանութեամբ լաւաց առ հա-
սարակ 'ի չորից մասն Նուազեաց:
Ի բազում Նուագս ռամիկն յիշ-
խանասիրութենէ կամ 'ի գոռո-
զութենէ աւագանւոյն գրգռեալ,
զէն առեալ որոշեցաւ 'ի ծերա-
կուտէն. այլ մեք ոչ իշխանու-

թեան եմք 'ի խնդիր և ոչ փար-
թամութեանց հետամուտ, որոց
վասն պատերազմունք և հակա-
ռակութիւնք են 'ի մարդիկ, այլ
զազատութիւն խնդրեմք՝ զոր ոչ
ոք 'ի լաւ որերոյ յանձն առնու կո-
րուսանել, բայց միանգամայն ընդ
կենդանութեան: Առ քեզ արդ
և առ ծերակոյտդ պաղատիմք,
գութ խնամոյ ունել զչուառ քա-
ղաքացեացս, զօրինաց պաշտպա-
նութիւն՝ զոր անօրէնութե̃ն կու-
սակալին եբարձ՝ կրկին հաստա-
տել, և մի զմեզ 'ի նեղ արկանել
առ 'ի խնդիր հնարից, թէ ո՛րպէս
'ի կորստեանս մերում լուծանել
ուժգին զվրէժ արեան մերոյ կա-
րիցեմք:

ԼԴ. Պատասխանի առար նո-
ցա Կ. Մարկիոս, զի եթէ 'ի ծե-
րակուտէն խնդրել ինչ կամէին,
պարտ էր նոցա անզէնս 'ի Հռովմ
աղերսարկու երթալ, քանզի այ-
նու հեզութեամբ և գթով վա-
րի միշտ ծերակոյտն և ժողովուրդ
Հռովմայ, մինչև ոչ ումեք վայրա-

պար 'ի շնորհս օգնականութեան նորա զխմել երբէք ։ Իսկ Կատի-ղինա 'ի Ճանապարհէն առ բա-զումս յաւագանւոյն և առ հզօրս 'ի քաղաքայնոց գրեաց թուղթ, եթէ " Զուր տարապարտուց ամ-բաստանեալ 'ի յանցանս, և չը-մարթացեալ ընդդէմ կալ հակա-ռակակողմանն՝ տեղի տայր բաղ-դին և տարադէմ վտարանդի գը-նայր 'ի Մասիլիա, ոչ զի ստգը-տանէին ինչ զնա միտք իւր 'ի խիղճ մեծի եղեռանն, այլ զի մի՛ գուցէ լինիցի վնասակար խաղաղութեան հասարակաց, և 'ի հակառակէն ծագեսցին աղմուկք"։ Բայց կարի այլազգ 'ի սմանէ ընթեռնոյր Կ. Կատուղղոս թուղթ այլ 'ի ծերա-կուտին, զոր 'ի Կատիլինայ ասէր գրեալ առ ինքն ։ Եւ էր պատճէն թղթոյս այս.

ԼԵ. Ղ. Կատիլինա առ Կ. Կատուղղոս ողջոյն.

Վսեմախոհ քոյդ հաւատար-մութիւն արդեամբք իսկ ծանու-ցեալ՝ 'ի ծանր վտանգիս հաճոյա-

կան իմն ակնկալութիւն նպաստից
ինձ մատոյց ։ Վասն այսորիկ 'ի
վերջին ժողովն չմտի անձինս ջա-
տագով, և եդի 'ի մտի անպարտ
անմեղութեամբս իմով շատանալ.
զոր օն և օն արասցեն ինձ դէք, զի
գիտես դու ճշմարտութեամբ ։
Անիրաւութեամբք և նախատա-
նօք գրգռեալ, 'ի վարձուց վա-
տակոցս և ճարտարութեանց զըր-
կեալ, և յիշխանութիւն՝ որ ինձ
անկն էր՝ չմարթացեալ հասա-
նել, բուռն հարի ըստ իմում սո-
վորութեան վարել զդատ թշուա-
ռաց ։ Իբր ոչ եթէ զպարտս երաշ-
խաւորեալս յինէն չկարէի հա-
տուցանել յընչից իմոց, ուր և զըն-
կալեալն յինէն յայլոց անուն
հատուցանէր Աւրելիա Որեստիլ-
լա առատապէս իւրովքն և դըս-
տերն իւրոյ մեծութեամբք, այլ
զի զանարժան ոք պատուեալ տե-
սանէի, և զիս ուստ կասկածանօք
օտարացուցեալ ։ Այսու խորհըր-
դով օրէն համարեցայ ըստ հարկի
հանգամանացս զհետ լինել պա-

հելոյ զանձին պատիւ ։ Բաղում
այլ ինչ կամէի գրել, այլ ազդ-
եղև ինձ զի բանութիւն 'ի վերայ
իմ պատրաստի ։ Եւ արդ յանձն
առնեմ քեզ զՈրեստիլլա, և 'ի
քո հաւատարմութե առնեմ զնա
ապաստան զի զգուշասցիս նմա
յերեսաց անիրաւութեց, երդ-
մնեցուցեալ զքեզ 'ի սէր որդե-
կաց քոց ․ Ողջ լեջիր ։

ԼԶ․ Իսկ ինքն Կատիլինա զա-
ւուրս ինչ եղեալ առ Կայիոսի
Փլամինիոսի 'ի Ռեատին գեղջ, և
զինեալ զսահմանակիցս կանխաւ
'ի գրգռութենէ իւրմէ ապստամ-
բեալս՝ խաղաց գնաց անդէն 'ի
բանակն առ Մանլիոս խրձովք և
այլովք իշխանական սպասուք ։
Իբրև ազդ եղև 'ի Հռովմ՝ հրա-
տարակեաց ծերակոյտն թշնամիս
զԿատիլինա և զՄանլիոս, և բազ-
մութեան մնացելոյ սահմանեալ
օր, կանխել զէնընկէց լինել ա-
ռանց երկիւղի վրէժխնդրութե,
բայց յայնցանէ որոց 'ի քրէական
յանցանս ըմբռնեալ էր ։ Պա-

տուէր տայր և բդեշխիցն զօրաժո-
ղով լինել, և զի փութացի Ան-
տոնիոս զհետ պնդել Կատիլինայ,
և Կիկերոն կացցէ 'ի պահ քաղա-
քին ։ Կարի իսկ ողորմ ըստ իս էր
յայնժամ պետութիւն ժողովըր-
դեանն Հռովմայ, որ մինչդեռ յա-
րևելից մինչև յարևմուտս զինու
զօրութեամբ նուաճեալ բովան-
դակ պերճանային, հանգիստ և
ճոխութիւնք առ անին՝ ցանկա-
լիք յաչս մահացուաց զեղուին,
գտան 'ի քաղաքացեաց որ ոխե-
րիմ մտօք յամառեալ պնդէին ընդ
փլատակօք հայրենեաց կորնչել ։
Քանզի 'ի մեծէ բազմութենէն ոչ
կրկին վճռօք ծերակուտին և ոչ
վարձուք ոք յորդորեալ յայտ-
նեաց զդաւաճանութիւնն, և ոչ ոք
թողեալ զդրօշ Կատիլինայ 'ի բաց
գնաց 'ի բանակէն ։ Այսչափ բըռ-
նութիւն չարին էր ախտ ժանտ՝
զբազմաց 'ի քաղաքացեաց ապա-
կանեալ էր զմիտս ։

ԼԷ. Եւ ոչ դաւակիցք միայն
խելայեղեալ, այլ և համօրէն խա-

ժամուժն փութով նորաստրու-
թեան 'ի գովութիւն առնոյր ըզ-
գործ կատարելոյ։ Եւ ոչ զայս օ-
տար ինչ յիւրոց բարուցն թուէր
գործեալ. քանզի աղքատք 'ի քա-
ղաքի մախան ընդ լաւ օրեարն,
գովեն զչարաբարոյս, ատեն զվա-
ղեմի կարգս, նորոց տենչան, և
գժկամակութք իւրեանց բաղդին
զամենայն փոփոխել նկրտին. 'ի
խռովութեան և յաղմկի յանհոգս
կեան, զի աղքատութեան դիւրին
է անվնաս կեալ։ Այլ ռամիկն
Հռովմայ 'ի բաղում պատճա-
ռաց յայս մղեալ զառածանէր.
նախ այն՝ զի ամենայն վատահամ-
բաւք և խառնադնացք, և որք ան-
առակութեամբ վատնիչք հայ-
րենականացն ժառանգութեանց,
և զորս անօրէնութն և անխաղա-
ղասէր բարք 'ի հայրենեաց մեր-
ժեալ էին, սոքա ամենեքեան իբ-
րև յառուս աղբանոցաց յորդէին
'ի Հռովմ։ Դարձեալ և բաղումք
յիշատակաւ յաղթութեան Սիւղ-
ղայ, որով 'ի հասարակ զօրուէն

զոմանս ատենակալս լեալ տեսա֊
նէին , զայլս այնպէս փարթամա֊
ցեալս մինչև 'ի պարէնս և 'ի զգես֊
տըս ըստ տարազու թագաւորաց
կեալ , նմին բաղդի և ինքեանք 'ի
զէնս և 'ի յաղթութիւնս պատա֊
հել ակն ունէին ։ Իսկ պատանիք՝
որ յանդաստանս վաստակովք ձե֊
ռաց տանէին աղքատութեան ,
յառատ բաշխողից ոմանց կամ հա֊
սարակաց հրապուրեալք , զքաղա֊
քական դիւր.քան զանախորժ վաս֊
տակս լաւ համարէին ։ Սոքա ա֊
ւանիկ և նմանիք սոցին 'ի հասա֊
րակաց աղէտս յօրանային . և չէն
ինչ զարմանք եթէ արք աղքատք
և անոպայք , անփոյթք զիրաց
հասարակաց՝ մեծայոյսք անձին
զինչպիսութեան խնամ կալցեն ։
Դարձեալ և որոց ծնողք յաղթու֊
թեամբն Սիղլայ վտարանդիք կայ֊
ին 'ի հայրենեաց , և ինքեանք 'ի
ստացուածոց կողոպտեալք՝ զի֊
րաւունս ազատութեան նկատէին
'ի վտանգի , մեծատենչք ելից մար֊
տի մնային ։ Հանդերձ ասացե֊

լովքս, և ոյք միանգամ հակառակ ծերակուտին էին կուսակիցք. զխռովել հասարակապետութե̃ լաւագոյն համարէին քան փոքու իւիք նուազել իշխանութեան իւրեանց: Այս օրինակ չարիքս այս յետ բազում ամաց խաղաղութեան սպրդեալ մտանէր 'ի քաղաքն:

ԼԸ. Քանզի յետ բդեշխութե̃ Կ. Պոմպէի և Մ. Կրասոսի իբրև վերստին կարգեցաւ տրիբունիցն հազարապետաց ժողովրդեան իշխանութիւն, երիտասարդք մանկահասակք խեռք մտօք և տխովք, բարձրամտեալք գերագոյն իշխանութեամբն, սկսան չարախօսելով զծերակուտէն յուզել զռամիկն, և ապա բաշխոյիւք պարգևաց և խոստմամբք և ևս զնոսա բորբոքեալ, մեծանուն և մեծազօրս լինել: Սոցին ընդդէմ մեծաձիգն կռուէին բազումք յազատաց, և իբր ծերակուտին պատուոյ վրէժխնդիրք՝ անձանց մեծութեան խնամ ունէին: Եւ զի

սղագունիւք Ջանացայց պարզել զճշմարտութիւն, ամենայն որ 'ի ժամանակին խառնէր զհասարակապետութիւնն ընդ պատրուակաւ պատշաճից․ կէսք 'ի պատճառս պաշտպանելոյ իրաւանց ժողովրդեան, այլք առ 'ի հզօր զօրութիւն ծերակուտին պատճառանօք հասարակաց բարւոյն՝ իւրաքանչիւր վասն անձին իշխանութեան մրցէին : Ոչ չափ էր և ոչ պայման գժտութեանն, և երկուստէք խժաբար վարէին յաղթութեամբն :

ԼԹ. Այլ իբրև առաքեցաւ Պոմպէոս 'ի ծովամարտն և 'ի միհրդատեան պատերազմ, տկարացեալ իշխանութիւն ռամկին, զօրացաւ ազնուապետութիւն, և 'ի ձեռս սոցա անկան ատենակալութիւնք գաւառապետութիւնք և այլն ամենայն․ որք ագահք, աներկիւղք և յղփացեալ վարելով կեանս՝ զայլս գատաստանաւ ահարեկէին՝ զի հեզագոյնս ընդ ռամկին վարեսցին յիշխանութեան իւրեանց : Այլ ընդ

առնուլ նոցա յոյս յաղմուկս հա-
սարակաց յեղափոխելոյ զիրս աշ-
խարհին, գժտութիւնն վաղեմի
յուզեաց յարոյց զմիտս նոցա։
Զի եթէ յառաջնում մարտի
ընդ յաղթող գտանէր Կատիլի-
նա, կամ թէ անպարտելի մնայր՝
անշուշտ կոտորած մեծ և տագ-
նապ ընկճէր զհասարակապետու-
թիւնն. սակայն և ոչ յաղթակա-
նաց մնայր ընդ երկար վայելել 'ի
յաղթութեանն. զի հզօրագոյն ոք
պատեհ գտեալ 'ի պարտասելոց
անտի և 'ի տկարացելոց՝ կորզելոց
էր ընդ ազատութեան և զիշխա-
նութիւն։ Եղեն իսկ և օտարք 'ի
դաւակցութենէն, որք յաւելան
'ի սկզբան 'ի Կատիլինա, և 'ի սո-
սա Աւղոս Փուլուիոս՝ ատենա-
կալի ուրումն որդի, զոր կա-
լեալ հօրն յերթալ նորա՝ հրա-
մայեաց սպանանել։ Ի սմին ժա-
մանակի Լենտուղոս 'ի Հռովմ ըստ
հրամանի Կատիլինայ զորս միան-
գամ բարուք կամ բաղձիւ յար-
մարս յեղափոխութեան իրաց կար-

ծէր, անձամբ կամ յայլոց ձեռս գրգռեալ հրապուրէր՝ ոչ զքաղաքացիս միայն, այլ զամենայն ազգ մարդկան, որոց մարթ էր մօտալուտ մարտին օգնական լինել:

Խ. Վասն այսորիկ յանձն առար Պ. Ումբրենոսի ումեմն փորձ փորձել յորդորել զդեսպանս Ալլոբրոգաց 'ի Նիզակակցութիւն. ածեալ զմտաւ զի ընդ պարտուք նեղէր աշխարհ նոցա և իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ, և զի բնութեամբ ևս գաղղիացիք պատերազմասէրք՝ դիւրեաւ յայս խորհուրդ առաջարկութեան խոնարհէին: Ումբրենոս, որոյ վաճառականութեամբ 'ի Գաղղիա գընացեալ էր և բազմաց գլխաւորաց 'ի քաղաքացւոց ծանօթ, անդէն իբրև ետես զդեսպանսն յատենի, տեղեկացեալ կարճ 'ի կարճոյ զպայմանէ աշխարհին, և իբր ախտակցելով ընդ աղէտս նոցին սկըսաւ հարցանել, թէ իմ իմիք 'ի դարման չարեացն ակն ունիցին:

Եւ իբրեւ լուաւ զբողոք նոցա զըն-
չաքաղցութենէ ատենակալաց, և
զամբաստանութիւն զծերակու-
տէն զի չլինէր իւիք նոցին օգնա-
կան, և զի չգոյր նոցա այլ դար-
ման թշուառութեան քան զմահ
ինքնին, ասէ. Եթէ լիջիք արք զօ-
րութեան, ես ցուցից ձեզ ճանա-
պարհ 'ի մեծէ չարեացն զանձինս
ճողոպրելոյ: Զայս իբրեւ ասաց,
քաջալերեալ Ալոբրոգաց 'ի յոյս
մեծ՝ աղաչէին զՈւմբրենոս գը-
թալ 'ի նոսա, խոստանալով զա-
մենայն ինչ դժնդակ և դժուարին
յօժարագոյնս յանձն առնուլ,
միայն զի զերծցի քաղաքն նոցա 'ի
պարտուց: Եմոյծ նա զնոսա 'ի
տուն Դեկոսի Բրուտոսի՝ որ մերձ
էր 'ի հրապարակ անդր, և ոչ օ-
տար 'ի դաւակցութենէն, ուր էր
միայն Սեմպրոնիա, զի չէր յայն-
ժամ Բրուտոս 'ի Հռովմ. կոչեաց
անդր և զԳաբինիոս յառաւելա-
գոյն զօրութիւն բանից իւրոց, և
լու 'ի լու նորին ծանոյց նոցա ըզ-
դաւակցութիւնն, անուանեալ և

զգուշակից, և առ 'ի սրտապըն-
դել զգեսպանս արկ 'ի համար և
զանուանս անմեղ մարդկան յա-
մենայն կարգէ. և խոստացեալ
ձեռնտուութիւն նոցին արձա-
կեաց զնոսա ։

ԽԱ. Իսկ Ալլոբրոգք ընդ եր-
կար վարանեալ տարակուսէին՝
յո՞ր ինչ ձեւն արկանել։ Աստ
ազատութիւն 'ի պարտուց, սէր
պատերազմի, և վարձք մեծամեծք
'ի յոյս յաղթութեան. անտի զօ-
րութիւն մեծագոյն, անքոյթ խոր-
հուրդ, և փոխանակ անստոյգ ա-
կընկալութեան ստոյգ վարձ։ Տա-
րուբերեալ նոցա 'ի խորհուրդս
յայսոսիկ՝ 'ի վերջէ ուրեմն յաղ-
թեաց բաղդն հասարակապետու-
թեան, և Կ. Փաբիոսի Սանկայ՝
որ մի 'ի հզօրագոյն պաշտպանաց
էր քաղաքին, ծանուցին զամե-
նայն որպէս և լուանն։ Եւ Կի-
կերոն 'ի Սանկայ իրազեկ լեալ
անցիցն՝ պատուիրեաց դեսպա-
նաց կեղծաւորել 'ի կողմն դաւա-
դրաց, այց առնել համախոհից,

խոստանալ զամենայն, և մեծա֊
պէս ջան դնել 'ի վեր հանելոյ զա֊
նուանս նոցա ։

ԽԲ. Զայսու ժամանակաւ
աղմուկք խռովութեան յառնէին
յայնկոյս և 'ի ծագս Գաղղիոյ, 'ի
Փիգենիա, 'ի Բրուտիոն և յԱ֊
պուղիա. քանզի զորս Կատիլինայ
յառաջագոյն յղեալ էր, նոքա
յանխորհուրդս իմն և մոլեգնա֊
բար զամենայն միանգամայն գոր֊
ծէին ։ Գիշերախառն ժողովս
գումարելով, զէնս և տեգս կու֊
տելով, 'ի շտապ տագնապի զա֊
մենայն ինչ աղմկելով՝ քան զեր֊
կիւղ վտանգին ահ արկանէին ։
Պրետորն Կ. Մետեղղոս Կելէր
զբազումս 'ի սոցանէ վճռով ծե֊
րակուտին դատեալ՝ ձերբակալս
'ի բանտ արկեալ էր. նոյնպէս և
Կ. Մուրենա կողմնակալ յայն֊
կոյս Գաղղիոյ ։

ԽԳ. Իսկ Լենտուղեայ ընդ այլ֊
գլխաւորս դաւադրաց պատրաս֊
տեալ 'ի Հռոմ, որպէս Թուքէրն
ստուարախումբ զօրօք՝ սահմա֊

նեցին զի 'ի հատանել Կատիլինայ
յանդաստանս փեսոլայ, Գ. Պեւ-
տիա հազարապետ ժողովր-
դեան գումարեալ զքաղաքացիս
բողոք կալցէ զզինացից Կիկերոնի,
և զզժնդակ մարտին զատելութի
զսպատուական բդեշխաւն արկցէ·
և յայս նշան 'ի գալ գիշերոյն իւ-
րաքանչիւր ոք զյանձնեալն ին-
քեան գործ դաւադրութեան
'ի գլուխ հանցէ: Եւ զայս այս-
պէս իւրաքանչիւր կարգեալ ա-
սէին գործ. Ստատիլեայ և Կա-
պինեայ հզօր ձեռամբ զերկոտա-
սան կարևոր վայրս Հռովմայ հըր-
ձիգ առնել, զի 'ի խռովի անդ դիւ-
րասցի մուտ առ բդեաշխն և առ
այլս՝ որոց պատրաստէին դա-
րանք. Կեթեգոսի ունել զդրունս
Կիկերոնի, և յարձակեալ մխել 'ի
նա ձեռն, և միոյ միոյ 'ի դաւակ-
ցաց յայլս. իսկ մանկտւոյն յորոց
առաւելագոյնք էին որդիք ազա-
տաց, հայրասպանս լինել, և յար-
հաւիրս կոտորածոյն և հրդեհի
դիմել դաւակցաց առ Կատիլինա:

Իբրև այս այսպէս պատրաստեալ էր և սահմանեալ՝ Կեթեգոս բողոք ունէր անդադար զվատութենէ ընկերացն թէ երկմտութեամբ օր 'ի յօր յապաղելով կորուսանէին զգեղեցիկ դէպսն վայրապար, և թէ գործոց և ոչ խորհրդոց պէտք էին յայնպիսի վըտանգս, և զի եթէ նուաղունք ոմանք ձեռն տային նմա, թողեալ զայլսն մեղկացեալս՝ յարձակէր ինքն 'ի տաճար ծերակուտին: Սա զի վայրագ էր բարուք, բուռն և յաջողաձեռն, զամենայն յաջողութիւն յերագութեն համարէր:

ԽԴ. Իսկ Ալլոբրոգքըստ խրատու Կիկերոնի 'ի ձեռն Գաբինեայ ժողովեալ և զայլս, երդումն հաւատարմութեան խնդրէին 'ի Լենտուղեայ, 'ի Կեթեգոսէ, 'ի Կասիոսէ և 'ի Ստատիլեայ, կընքեալ տանել զայն առ քաղաքացիս. քանզի այլ ազգ դժուարին ասէին շարժել զնոսա 'ի գործն մեծ և կարևոր: Այլք անկասկած ամենեքին ետուն. իսկ Կասիոս

խոստացաւ գալ ընդ հուպ և փոքր
մի յառաջ քան զերթ դեսպա-
նացն՝ եւ մեկնեցաւ 'ի Հռովմայ:
Եւ Լենտուղոս արձակեաց ընդ
դեսպանսն զՏ. Վոլտուրտիոս զոմն
կրոտոնացի, զի յառաջ քան ըզ-
դարձ Ալլոբրոգաց յաշխարհն իւ-
րեանց՝ հաստատեսցեն ընդ Կա-
տիլինայ զդաշն նիզակակցութե
երկուստեք երդմամբ հաւատար-
մութեան: Եւ 'ի ձեռն նորին
Վոլտուրտեայ նամակագիր եղև
առ Կատիլինա՝ որոյ պատճէն էր
օրինակ զայս. « Թէ ո՛վ իցեմ ես,
'ի նմանէ զոր առ քեզն յղեցի ծա-
նիցես: Խորհեաց թէ յո՞ր տագ-
նապ ըմբռնեալ կաս, և յուշ քեզ
լիցի արութիւն. զմտաւ ած զինչ
պահանջէ 'ի քէն պայման քո, և
խնդրեսցես ձեռն օգնականութե
'ի յետնոց անգամ »:

Դարձեալ և բանիւք ազդ առ-
նէր, թէ թշնամի ծանուցեալ
միանգամ վճռով ծերակուտին,
ո՞րով խորհրդով մերժէր ապա
զստրուկսն, և թէ որպէս հրա-

մայեացն պատրաստ է ամենայն ինչ 'ի քաղաքին, մի յապաղեսցէ անդր հասանել:

ԽԵ. Զայսոսիկ այսպէս կարդեալ, սահմանեաց եւ նոցա յորում գիշերի պարտ էր նոցա չու առնել: Բայց Կիկերոն 'ի ձեռն դեսպանացն տեղեկացեալ ամենայնի՝ պատուէր հրամանի տայր պրետորացն Ղ. Վաղերիոսի Փլակկոսի և Կ. Պոմպտինոսի զի 'ի կամուրջն Մուլուիոյ դարանամուտ լեալ կալցեն զԱլլոբրոգս, և զամենայն 'ի վեր եհան նոցա որոյ վասն առաքէրն զնոսա. և հրաման ետ նոցա ըստ պահանջել հարկին գործել զպատշաճն: Զօրավարքն լռելեայն 'ի Թագաստի եդեալ զզօրսն ըստ հրամանին՝ գաղտ պատեցին զկամուրջն. իբրև հասին դեսպանքն ընդ Վուլտուրտեայ 'ի տեղին, միանգամայն յամենուստ զաղաղակ բարձին դարանակալքն. վաղ ընդ փոյթ խմացեալ գաղղիացւոց զխորհուրդն, անյապաղ անձնատուր եղեն 'ի

պրետորսն ։ Զառաջինն խրախու-
սեալ Վոլոտուրտեայ զընկերսն՝
սուր 'ի ձեռին պաշտպանէր ան-
ձին ընդդէմ բազմութեանն, այլ
երբև թողեալ լքաւ 'ի դեսպա-
նացն՝ 'ի սկզբան վասն կենաց ի-
բոց յաղերս անկեալ աղաչէր ըզ-
Պոմպոնիոս որում քաջածանօթն
էր, յետոյ ուրեմն ահաբեկ լեալ
և յուսահատ զկենացն՝ երբև 'ի
թշնամիս անձնատուր 'ի պրետորս
լինէր ։

ԽԶ. Իբրև այս անցք անցա-
նէին, 'ի ձեռն աւետաւորաց ա-
մենայնի իրազեկ եղև բդեաշխն.
և ընդ խնդութեանն և հոգ մեծ
կալաւ զմիտս նորա ։ Խնդամտէր
ընդ յայտնութիւն դաւադրու-
թեանն և ընդ փրկութիւն քա-
ղաքին 'ի վտանգէն. դարձեալ և 'ի
վարանս և 'ի հոգս լինէր՝ թէ զինչ
բազմամբոխ քաղաքացւոց ըմբռ-
նելոց 'ի մեծ եղեռունս պարտ
էր առնել. զպատուհաս նոցա՝
ծանր անձին վարկանէր, և ան-
պատուհաս թողուլ զնոսա՝ կո-

րուստ հասարակապետութեան ։ Այլ անձամբ զանձն սրտապնդեալ եւ կոչել առ ինքն զԼենտուղոս, զԿեթեգոս, զՍտատիլիոս, զԳաբինիոս և զԿեպարիոս զոմն տերակինացի, որ պատրաստէր երթալ յԱպուլիա 'ի գըրգռութիւն ստրկաց ։ Եկին անյապաղ ամենեքին. Կեպարիոս միայն իրազեկ լեալ յայտնութեան դաւոյն, սակաւիկ մի յառաջագոյն ելեալ 'ի տանէն՝ խոյս ետ 'ի քաղաքէն ։ Բդեաշխն կալեալ զձեռանէ Լենտուղեայ, քանզի պրետոր էր, ած զնա 'ի տաճար միաբանութեան, և զայլս հրամայեաց պահապանօք բերել ։ Գումարեաց անդր զծերակոյտն և զայլս բազումս 'ի նոյն կարգէ, եմոյծ 'ի ներքս զՎոլտուրտիոս ընդ դեսպանսն, և պատուէր ետ Փլակկոսի պրետորի զարկղ թղթոյն զոր 'ի դեսպանացն ընկալեալ էր ածել 'ի մէջ ։

ԽԷ. Հարցեալ Վոլտուրտիոս զուղւոյն, զթղթոցն, և թէ զի՞նչ

խորհուրդք էին նորա և վասն էր ,
'ի սկզբան զայլ ինձ կեղծեալ՝ պա-
տրուակէր զդաւադրութիւն . ա-
պա իբրև խոստմամբ ազատութե՟
հրամայեցաւ ասել, զամենայն որ
ինչ անցք անցեալ էին յայտնեաց:
" Ոչ բազում ինչ յառաջ քան
զաւուրս զայսոսիկ , ասէ , 'ի Գա-
բինիոսէ և 'ի Կեպարեայ մուծեալ
'ի դաշնակցութիւն՝ չգիտեմ ա-
ւելի ինչ քան զդեսպանսն . սա-
կայն բազում անգամ լուեալ է իմ
'ի Գաբինիոսէ հաշուել ընդ դա-
ւադիրս զՊ. զԱւտրոնիոս, զՍե-
րուիոս Սուղղա, զՂուկիոս Վար-
գոնտէոս և զայլս բազումս ":
Զնոյն և դաղղիացիք վկայեցին ,
յաղթահարեալ զԼենտուղոս՝ որ
կեղծէրն չգիտել այլ ինչ բաց 'ի
նամականւոյն և 'ի պատգամացն
սիբիլլայից ասէպ յեղյեղելոց ,
սահմանեալ զթագաւորութիւն
Հռովմայ երից Կոռնելեանց .
նախ Կիննայ և ապա Սիղղայ, և եր-
րորդ ինքեան՝ որում ճակատա-
գիր տիրապետել քաղաքին պատ-

բառնեալ էր։ Եւ դարձեալ զի
'ի քսան ամաց հետէ յետ հրկի-
զութեն Կապիտոլեայ, յաճախ
'ի հրաշից ազդեալ հմայք գուշա-
կէին քաղաքական պատերազմ ա-
րիւնահեղ։ Կրկին ապա ընթեր-
ցեալ զթուղթն՝ իբրև 'ի գլուխ ա-
մենեցուն ծանեան զկնիք նորա,
վճռեաց ծերակոյտն զի Լենտու-
ղոս արկեալ յիշխանութէ պաշտա-
մանն կալցի ընդ այլ ընկերս 'ի դի-
պահոջ յընդարձակի։ Եւ յանձն
եղև Լենտուղոս՝ Պ. Լենտուղեայ
Սպինթերայ շինապետի 'ի ժա-
մանակին. Կեթեգոս՝ Կ. Կորնե-
փիկեայ. Ստատիլիոս՝ Կ. Կեսա-
րու. Գաբինիոս՝ Մ. Կրասոսի.
Կեպարիոս որ փոքր մի յառաջ 'ի
փախչելն ըմբռնեալ էր՝ Կն. Տե-
րենտիոսի ատենակալի։

ԽԸ. Ի ժամանակին յայնմիկ
'ի յայտնել դաւադրութեանն,
խաժամուժն՝ որ 'ի սկզբան անդ
նորասիրութեն խիղճ լինէր պատե-
րազմին, յայլ միտս փոխեալ արդ՝
դարշէր 'ի խորհրդոց Կատիլինայ,

զԿիկերոն մինչև յերկինս ամբառնայր, և իբր 'ի ստրկութէ վերբերեալ՝ մեծապէս ցնծայր: Քանզի զայլ ամենայն դէպս պատերազմի՝ չահաբեր քան զվնասակար, սակայն զհրդեհ քաղաքին անողորմ, անօրէն և աղխաբեր իւր համարէր, որովհետև բովանդակ մեծութի նոցա և ստացուածք 'ի հանապազորդեան պիտոյս էր և 'ի հանդերձանին: Ի վաղուանդր ածառ ծերակոյտն Ղուկիոս ոմն Տարկուինիոս՝ զոր յերթալն առ Կատիլինա՝ 'ի ճանապարհէն դարձուցեալ ասէին: Բան տուեալ սորա պատմել զդաւադրութենէն, եթէ երդումն ազատութե տացի նմա, հրաման եղև նմա 'ի բդեշխէն ասել զոր գիտէն. և զնոյն գոգցես որ ինչ Վուլտուռիոս զմենքենայեալ հրդեհից, զկոտորածէ լաւ որերոյ, և զչուոյ թշնամեաց ծանոյց ծերակուտին. և յաւել ասել թէ 'ի Մ. Կրասոսէ յղեալ էր առ Կատիլինա աւդաւոր, չլինել սրտաբեկ ընդ

լուր կալանաւորելոյ Լենտու-
ղեայ, Կեթեգոսի և այլոց դաւա-
դրաց, նա աճապարել մերձենալ
՚ի քաղաքն, վառել խրախուսել
զոգիս մնացելոցն առ ՚ի կորզել
զնոսա ՚ի վտանգէն: Ի յիշել Տար-
կուինեայ զանուն Կրասոսի՝ զմե-
ծափարթամ զազնուականն և զհը-
զօր առնն, կէսք անհաւատալի
զբանն համարեցան, այլք թէպէտ
ստոյգ, այլ յայնպիսում ժամա-
նակի կարևորագոյն ամոքել զայրն
մեծազօր քան զրգռեալ յուզել.
և յոլովագոյնք յիրս իւրս երախ-
տաւորեալք ՚ի Կրասոսէ, զա-
ղաղակ բարձին սուտ լինել ամ-
բաստանութեանն և ընդ քննու-
թեամբ զիրան արկանել խնդրե-
ցին: Յայնժամ խորհրդով Կիկե-
րոնի վճռեաց ծերակոյտն գրեթէ
համօրէն. "Սուտ գոլ զամբաստա-
նութի Տարկուինեայ, վասն որոյ
և յարգելանս բանտի ունել զնա,
և ոչ ունկն բանից նորա մատու-
ցանել՝ մինչև իցէ նորա ցուցեալ
թէ յումմէ՞ զրգռեալ եկն ՚ի մեծ

ստութիւնն յայն»: Եղեն անդ ո-
մանք որ 'ի Պ. Աւտրոնեայ մեն-
քենայեալ զայն կարծեցին' 'ի
ներքս մուծանել զԿրասոս, որ-
պէս զի հաղորդ վտանգին դիւրա-
գոյնս պաշտպանեսցէ այլոց ընդ
հզօր իշխանութ̃բ իւրով. այլք ա-
սէին զՏարկուինիոս դրդեալ 'ի
Կիկերոնէ, զի մի Կրասոս ըստ սո-
վորութեանն միջամուխ լեալ 'ի
պաշտպանութիւն չարաց խռո-
վեսցէ զհասարակապետութիւնն:
Ի նոյն ինքն 'ի Կրասոսէ լուայ ես,
զի հռչակէր Կիկերոնի լեալ գործ
զզրպարտութիւնն զայն մեծ:

ԽԹ. Այլ ոչ Կ. Կատուղոս
յայնժամ և ոչ Պիսոն կարացին
առ շնորհուկս ինչ կամ երեսս ա-
ղաչանաց արարեալ և խոստմանց՝
խոնարհել զԿիկերոն 'ի ձեռն Ա-
լոբրոգաց կամ այլոց քսու մարդ-
կան բարուրս ստութեան կարկա-
տել զԿ. Կեսարէ: Քանզի երկո-
քին սոքա ոխերիմք նորա էին.
Պիսոն ամբաստանեալ 'ի նմանէ
վասն անիրաւ դատապարտութ̃ե

'ի մահ ուրումն 'ի բնակչաց յայն-
կոյս Պադոս գետոյ. և Կատու-
ղոս յաւուրց անտի թեկն ածելոյ
քրմապետութե՟ն առելութեամբ
էր ընդ նմա, զի յաղթորեալ հա-
սակի և 'ի մեծամեծ աւագու-
թիւնս սովորեալ, յերեսաց պա-
տանւոյն Կեսարու յաղթահա-
րեալ տեղի ետ: Եւ դէպքն ինք-
նին բարեպատեհ թուէր, զի Կե-
սար խռովն երևելի ազատակա-
նութ՟բ և հասարակաց մեծամեծ
բաշխոյիւք ընդ ծանր պարտուք
կայր: Այլ իբրև չկարացին սոքա
յայս գործ անօրէնութեան մղել
զբդեաշխն, խռովք շուրջ յա-
ծեալ սուտս յօդելով իբր լուեալս
'ի Վոլտուրտիոսէ և յԱլլոբրոգաց,
յարուցին առելութիւն մեծ ընդ-
դէմ Կեսարու, մինչև սպառնաց ո-
մանց հռովմայեցւոց՝ որ զինու 'ի
պահ զգուշութե՟ կային տաճարին
միաբանութեան, յարձակեալ վը-
տանգին, կամ յազնուական մնաց
մղեալք առ 'ի հանդէս առնելոյ
նախանձուն իւրեանց 'ի վերայ

հասարակապետութե՟ , յեղանել կեսարու 'ի ծերակուտէն՝ ապա֊նալեցք զէն վերացուցանել:

Ծ. Մինչդեռ այս իրք լինէին 'ի ծերակուտին, և դեսպանացն Ալլոբրոգաց և Տիտոսի Վոլտուր֊տեայ 'ի ստուգել բանիցն պար֊գևք ելանէին, ձերբազատք և նը֊պաստաւորեալք ոմանք 'ի Լեն֊տուղեայ աստ անդ հրապուրեալ դրդէին 'ի գիւղօրէս զարուկս և զարուեստաւոր մարդիկ կորզել զնա 'ի բանտէն. և կէսք Թախան֊ձէին զառաջնորդս բազմութեան ռամկին զովորեալս կաշառօք տագնապել զպետութիւն հասա֊րակաց: Իսկ Կեթեգոս բանա֊գնաց լինէր առ ծառայս և առ ա֊զատագիրս իւր յանդգունս, և աղաչէր խմբովին գրոհ տալ զի֊նուք առ ինքն 'ի բանտն: Յոր֊ժամ գիտաց բդեաշխն զպատրաս֊տութիւն նոցա, ըստ պահանջելոյ ժամուն ախտոյից պահակապանս եդեալ, 'ի ժողով գումարեաց ըզ֊ծերակոյտն՝ խորհել Թէ զինչ հա֊

Ճոյ լից նոցա զբանտարկեալն
առնել. Թէպէտ կանխեալ ժողո-
վոյ ծերակուտին Թշնամիս հասա-
րակապետութե՟ զնոսա դատեալ
էր: Իբրև հարցաւ Տ. Յունիոս
Սիղանոս՝ որ 'ի ժամանակին
բդեշխ էր՝ վասն կալանաւորացն՝
'ի մահ զնոսա դատապարտեաց,
ոչ 'ի բաց առեալ զՂ. Կասիոս,
զՊ. Փուրիոս, զՊ. Ումբրենոս և
զԿ. Աննիոս՝ եթէ անկանէին 'ի
ձեռս: Այլ ապա յորդորեալ 'ի
բանից Կ. Կեսարու, յօժարէր
Տիբերեայ Ներոնի համախոհ լի-
նել, որ խորհէրն ստուարացու-
ցեալ զգունդս պահապանացն յա-
պաղել զդատավճիռն: Եւ իբրև
Կեսարու եհաս խօսել, հարցեալ
'ի բդեշխէն՝ խօսեցաւ այսպէս.

ԾԱ. «Որոց միանգամ զերկ-
բայելեաց առաջի կայ խորհել,
ո՛ հարք համագրեալք, կարեւոր
պէտք են ազատս լինել յատելու-
թէ, 'ի բարեկամութէ, 'ի ցասմանէ
և 'ի գորովոյ. զի ուր այսոքիկ կըր-
ճիմն 'ի ներքս անկանին, դժուա-

րին լցէ այնուհետեւ նկատել զճըշ-
մարտութիւն ։ Եւ ոչ բնաւ եր-
բէք ոք հաճոյից համանգամայն և
իրաւանց հպատակեաց. զի եթէ
զգուշացցիս մտացդ, զօրանան.
իսկ եթէ կիրք սպրդեալ 'ի քեզ տի-
րապետեն, ոչինչ զօրեսցեն միտք
այնուհետեւ ։ Բազում ինձ մար-
թէր աստ յուշ ածել, ո՜ հարք
համագրեալք, թագաւորս և ժո-
ղովուրդս, որք 'ի բարկութենէ
կամ'ի գթութենէ ածեալք՝ գոր-
ծեցին անխորհուրդս. այլ լաւ ես
համարիմ ասել որ ինչ հարքն մեր
ազատ 'ի կրից ուղղութեամբ և
կարգաւ գործեցին ։ Ի մակե-
դոնական մարտին՝ զոր ընդ ար-
քային Պերսեայ մղեցաք, քա-
ղաքն հռոդացւոց մեծապայծառ
և հոյակապ՝ որ օգնականութե
ժողովրդեան Հռովմայ մեծա-
ցեալ էր, հաւատադրուժ և թըշ-
նամի գտաւ մեզ. այլ 'ի փոխ-
ճան մարտին խորհուրդ 'ի մէջ ա-
ռեալ հարք մեր զհռոդացւոց, զի
մի 'ի պատճառս ճոխ գանձուցն

քան անիրաւութեանց կարծիցն պատերազմ 'ի վերայ ածել նոցա, անպատուհաս թողին զնոսա: Նոյնպէս և յամենայն պունիկեան պատերազմունս կարքեդոնացիք սակս դրժելին դաշանց 'ի խաղաղութեան և 'ի զինադուլս, այլ նոքա ոչ երբէք պատեհ առեալ այնպիսի ինչ արարին. զի ոչ որ ինչ արժանն էր նոցա, այլ որ ինչ ինքեանց պատշաճական, զայն խնդրէին: Ի սոյն և ձեզ պարտ է դուն գործել, հարք համադրեալք, զի մի Պ. Լենտուղեայ և դաւակցաց նորա ոճիրք զօրասցին 'ի ձեզ քան զպատիւ ձեր, և մի ցասման ձերոյ առաւել տեղի տայցէք քան թէ համբաւոյ: Զի եթէ արժանի յանցանաց նոցա դոյր պատուհաս՝ գովել գովէի և ես զնոր խորհուրդդ. իսկ եթէ մեծութիւն անօրէնութեանց անցանէ քան զմիտս, պարտ համարիմ զօրինադիր պատուհան ածել զնոքօք: Որք յառաջ քան զիս ետուն զիւրեանց կարծիս, բա-

զումք ճարտար և գեղեցիկս օդ-
բացին զաղէտս հասարակապե-
տութեան, եդեալ 'ի չար զպա-
տերազմին դժնդակութիւնս, ըզ-
պարտելոցն արկածս, զկուսանաց
յափշտակութեն և զողբոց, զկոր-
զել որդեկաց 'ի գրկաց ծնողաց,
զախկնանց մատնել 'ի հաճոյս յաղ-
թականաց, զկապտել մեհենից և
տանց, զկոտորածս, զհրդեհս,
համառօտ ասել, զինուք, դիա-
կամբք, արեամբք, ողբովք լցեալ
զամենայն: Այլ, ո՛վ դիք անմահ,
առ ի՞նչ օգտիցեն բանքն, մինչ
առ ունկերիմն զձեզ գործել դա-
ւադրութեանն. այլ որ յայդպիսի
և յայդքան եղեռանէ մեծէ ոչ
շարժի, զնա և բանիւք ոք երբէք
չկարացէ վառել: Չէ և չէ իսկ
այդպէս, ոչ ումեք 'ի մահացուաց
անիրաւութիւնք ընդդէմ Նորա
գործեալք թեթևք թուեցին եր-
բէք, այլ յաճախագոյն այն է, զի
քան զոր էն՝ ծանրագոյն համա-
րին: Առն առն ըստ բաղդին իցէ
և ազատութիւն, ո՛ հարք համա-

գրեալք · որ անկած և աննշան կե-
նօք կեայ, եթէ ուրեք 'ի ցասումն
զառածանիցի, սակաւուց հասա-
նէ 'ի գիտութիւն, զի և համբաւն
հաւասար է բաղդին · իսկ որ 'ի
մեծ իշխանութեան ամբարձեալ
կեան, ամենայն գործքն նոցա հրա-
պարակագոյժ լինին ։ Այսպէս
'ի մեծի բաղդին անձուկ է ազա-
տութիւն ։ Ոչ կողմնակցութիւն,
ոչ հեռ և ոչ բնաւ վայել է նոցա
ցասումն · քանզի որ յայլս ցա-
սումն ասի, յաւագորեարն վե-
սութիւն և խժութիւն կոչի ։ Եւ
արդարեւ, ո՜ հարք համագրեալք,
ինձ այնպէս թուի, զի ամենայն
տանջանք խիստք ոչինչ են առ
դաւաճանացն եղեռամբք · այլ
բաղումք 'ի մարդկանէ զյետինս
նեթ յիշեն, և մոռացեալ զյան-
ցանս մեղապարտից, զպատուհաս
նոցին բամբասեն՝ եթէ երբէք
խստագոյն ինչ թուիցի լեալ ։ Գի-
տեմ քաջ որ ինչ Դեկիմոս Սի-
ղանոս այր հզօր և արի՝ խօսեցաւ
նախանձու հասարակապետու-

թեան . և ոչ յայս գործ կարևոր
առ շնորհուկս ինչ կամ առ թըշ-
նամութեան արար ինչ . զի ան-
զեակ եմ բարուց առնն և զգօնու-
թե՛ նորա ։ Սակայն վճիռ նորա ,
չասացից անգութ , քանզի զի՞նչ
ինչ ընդդէմ այնպիսի մարդկան
անգութ լինել մարթիցի , այլ օ-
տար թուի ինձ՝ ի հոգւոյ հասարա-
կապետութե՛ս ։ Ապաքէն երկիւղ
կամ ցասումն ընդ ոճիրն հարկե-
ցոյց զքեզ , Սիղանէ , առաջար-
կել զայդ նոր պատուհաս յըն-
տրելն քում՝ ի բդեաշխ ։ Աւելորդ
է ինձ ասել զերկիւղէն , զի աչա-
լուրջ զգուշութեամբ հոյակապ
առն բդեշխիս բազմութիւնք պա-
հապանաց սպառազէնք կան մեզ
՚ի պահ . իսկ զպատուհասէն մար-
թիմ ասել ճշմարտապէս , զի ՚ի
վիշտս և՚ի թշուառութեան՝ հան-
գիստ է մահ , և ոչ տանջանք , որ
չարեաց մահկանացուաց վախճան
առնէ , և անդր քան զնա ոչ հո-
գոց և ոչ ախրութեան իցէ տեղի ։
Այլ երդուեալ յանմահ դիս ,

հէմ չյաւելէր 'ի վճիռ. քո նախ
բրածեծ առնել զյանցաւորս. մի-
թէ զի օրէնք Պորկիայ արգելո՞ւն
զայն. սակայն են և այլ օրէնք որ
զքաղաքացւոյ յանցաւորի հրա-
մայէ չբառնալ զկեանս, եթէ զաք-
սորանս յանձն առնուցու: Մի՞թէ
զի ծանրագո՞յն իցէ բրածեծ առ-
նել քան զրաւել 'ի կենաց. այլ
զի՞նչ խիստ և ծանր ըմբռնելոցն
յայնքան ոճիր. իսկ եթէ թե-
թեւագոյն, իցէ՞ ինչ 'ի ճահ պատ-
կառ կալ օրինաց 'ի մանուկս, և
'ի մեծամեծս զանց առնել զնոքօք:
Այլ ո՞ իսկ պարսաւիցէ որ ինչ
ընդդէմ քրէիքուր մատնչաց պե-
տութեան լեալ վճիռ. ժամա-
նակն, օրն, և բաղդն՝ որ ըստ հա-
ճոյս իւր տիրէ ազգաց: Ի դէպ
պատահէ նոցա որ ինչ և պատա-
հեսցէ. այլ դուք, ո՛ հարք հա-
մագրեալք, խորհեցարուք որ ինչ
զայլոց սահմանէք: Ամենայն օ-
րինակ չար 'ի բարեաց սկիզբն է-
առ. այլ յորժամ հասցէ պետու-
թիւնս 'ի ձեռս ագահաց և անբա-

րեաց, օրինակս այս նոր 'ի պատ-
շաճից յանպատշաճն և 'ի վայ-
ելչութենէ յանվայելուչ փոխես-
ցի: Սպարտացիքն յետ նուաճելոյ
զԱթէնս կարգեցին արս երե-
սուն 'ի վարչութիւն իւրոց հա-
սարակաց. որք ձեռն արկին 'ի
սկզբան անդ կոտորել զարս ժան-
տագործս և զատելիս ամենեցուն
առանց քննութեան դատաստա-
նի: Խնդայր ընդ այս ժողո-
վուրդն իրաւունս նոցին տալով.
այլ իբրև տեսաւ զօրացաւ իշ-
խանութիւն նոցա, այնուհետև
ըստ հաճոյս և զառաքինիս 'ի քա-
ղաքացւոց խառն ընդ անօրէնս
բառնային 'ի կենաց, առ մնացոր-
դացն արկանելով: Այսպէս ընկ-
ճեալ քաղաքն ընդ լծով ծառայ-
ութեան, զանմիտ խնդութեանն
ելոյծ զծանր վրէժ: Եւ առ մե-
րովք ժամանակօք յորժամ յաղ-
թականն Սիւղլա տայր խեղդամահ
կորուսանել զԴամասիպպոս և
զնմանիս նորա՝ որք յաղէտս հա-
սարակապետութեան զօրացեալ

էին, ո՞ ոչ գովէր զգործ նորա.
իրաւացի համարելով կատարել
զարս անօրէնս, խաղմարարս և
աղմկիչս աշխարհին : Այլ այն ա-
պա սկիզբն լինէր մեծի կատարա-
ծին. զի որ միանգամ ցանկայր
տան, կամ գեղջ, եւ և անօթոց
հանդերձից ուրուք, զամենայն
ձիգն դնէր 'ի թիւս տարագրելոց
զնա յաւելուլ: Եւ այս օրինակ
որք ընդ Դամասիպպեայ խնդայ-
ին ընդ մահ, 'ի նոյն և ինքեանք
մատնեցան, և չեղև խեղդամահ
կորստեան վախճան, մինչև ոչ
ելից Սիղլա զիւրան ձոխութեամբ:
Եւ ես իսկ ոչ 'ի հիւպատոսն Մ.
Տուղղիոսի և ոչ վասն ժամանա-
կիս խիթամ, այլ զի 'ի մեծի քաղա-
քիս բազում և զանազան են խոր-
հուրդք մարդկան : Մարթ է յայ-
լում ժամանակի, և այլում ու-
մեք բդեշխի, որոյ դարձեալ զօ-
րութիւնք իցեն 'ի ձեռին, զսուտ
ինչ ճշմարիտ համարել, և ըստ
օրինակիս ըստ այսմիկ վճռով ծե-
րակուտին սուր ածել. և ո՞ վախ-

ճան արասցէ յայնժամ կոտորա-
ծին, կամ ո՞ չափ դիցէ այնմ։
Նախնեաց մերոց, ո՛ հայք համա-
գրեալք, ոչ հանճար պակասէր և
ոչ արիութի՟ն, սակայն չարգելոյր
նոցա ամբարտաւանութի՟ն նմանող
լինելոյ բարի բարի կարգաց օտա-
րաց։ Զզէնս և զնետս պատերազ-
մականս 'ի սամնիացւոց, զբազում
յօրինուածութի՟ս ատենականս 'ի
տուսկեանց ընկալան. միով բա-
նիւ, որ լինչ առ դաշնակից ազինս և
առ թշնամիս պատշաճինչ թուէր,
մեծաւ փութով հետևող նոցին
լինէին. լաւ համարեալ զբարե-
նախանձ նմանութիւն քան թէ
մախալ ընդ բարիս։ Զայնու ժա-
մանակաւ զհետ երթեալ և Յու-
նացն սովորութեան՝ բրածեծ,
դաւաղանահար պատուհասակոծ
առնէին զքաղաքացիս և դատա-
կնիք մահու 'ի վերայ ածէին յան-
ցաւորաց։ Այլ իբրև զարգացաւ
պետութիւնս, և 'ի բազմութենէ
քաղաքացւոց զօրացեալ երկպա-
ռակք դժտութիւնք՝ սալրդեալ 'ի

ներքս մտին անմեղաց լարել որո-
գայթ և այլ սոյնպիսիք, 'ի վեր
երևեցան յայնժամ պորկեանքն
և այլ ևս օրէնք, որ տարադրու-
թիւն յանցաւորաց շնորհեցին:
Այսր աղագաւ առաւելապէս ի-
րաւունս համարիմ, ո՛ հարք հա-
մագրեալք, մի ինչ նորս գործել:
Հզօր արդարեւ առաքինութիւն և
իմաստութիւն էր 'ի նոսա, որք 'ի
գուղնաքեայ իշխանութենէ կա-
ցուցին զպետութիւնս զայս մեծ,
քան 'ի մեզ՝ որ հազիւ պահեմք
զառ 'ի նոցանէ ժառանգեալս
ստացուած: Կամք ուրեմն իցեն
արձակել զդոսա, զի երթիցեն
զկատիլինեայ բանակն ստուարա-
ցուցանել. ոչ ընաւ երբէք: Այլ
այս է իմ խորհուրդ. 'ի գանձս
հասարակաց գրաւել զինչս նոցա,
և զնոսա 'ի կալանս ունել յամուր
ամուր քաղաքս Իտալիոյ, և մի ու-
մեք լիցի օրէն առաջարկել ծե-
րակուտին կամ ժողովրդեան զար-
ձակուրդ նոցա. և որ այլ ազդ ինչ
գործեսցէ, համարեսցի զնա ծե-

րակոյան թշնամի պետութեան և փրկութեան հասարակաց »:

ԾԲ. Իբրև լուեաց Կեսար 'ի խօսելոյ, և տարաձայն էին կարծիք 'ի ծերակուտին, հարցեալ Պ. Կատոն որպէս ինչ խորհէրն՝ խօսեցաւ այսպէս. « Յոյժ այլ ազգ են ինձ կարծիք, ո՛ հարք համագրեալք, 'ի կշռել զհանգամանս ժամանակիս և զվտանգ, և 'ի խորհել զկարծիս ոմանց: Ընդունայն թուի ինձ երկայնել ճառս զպատուհասէ՝ որոց ընդդէմ հայրենեաց, ծնողաց, դից և ընտանեաց զէն առեալ է. յապահովել զանձինս 'ի նոցունց խրատէ ժամանակս, քան նստել 'ի խորհուրդ թէ զինչ արժան իցէ սահմանել նոցա պատուհաս: Այլոց եղեռանց, յետ 'ի գլուխ ելանելոյ նոցին դնի պատուհաս. իսկ սմա եթէ ոչ նախահոգ զառաջս առնուցումք, ընդ վայր ապա 'ի կատարել իրացն խնդրեսցի վըրէժ. յետ միանգամ 'ի ձեռս անկանելոյ քաղաքին, չմնայ ինչ այ-

նուհետև պարտելոյն ։ Այլ, ո՜ն
և ո՜ն երդուեալ յանմահ գիս, առ-
ձեզ բողոքեմ որ զապարանս ձեր
միշտ և զագարակս, զանդրիս և
զնկարս նախամեծար եղեք քան
զհասարակաց պետութիւնս, ե-
թէ զըղձալիս ձեր զայգոսիկ, որ
զինչ և իցեն, պահել ախորժէք,
և զդրգանաց ձերոց պարապել․
սթափեցարուք փոքր մի, և խը-
նամ կալէք հասարակապետու-
թեանս ։ Չեն աստ բանք ոչ զբա-
ժից և ոչ զանիրաւութեանց դաշ-
նակցաց, ազատութիւն մեր և
կեանք կան 'ի վտանգի ։ Բազում
բազում անգամ, ո՛ հարք համա-
գրեալք, խօսեցայ յատենիս, բա-
ղոք կալեալ զզեղխս գնացից և զա-
գահութենէ քաղաքացւոցս, և
զբազումս այսր ազգաւ հակա-
ռակորդս ինձ յարուցի․ զի որ
ինձ և մտաց իմոց չշնորհեցի եր-
բէք անկլխտանալ 'ի չարիս, չը-
կարէի այլոցն անառակ չարագոր-
ծութեանց ներել ։ Թէպէտ բանք
իմ արհամարհ ձեզ թուէին, սա-

կայն հաստահիմն էր հասարակա-
պետութիւնն, և հզօր զօրութիւն
կարէր զծուլութիւնդ ձեր անտես
առնել: Այլ արդ ոչ ևս են բանք
զբարելաւ կամ զյոռի կենաց, և
ոչ թէ որչափ և քանի հզօր իցէ
տէրութիւն ժողովրդեան Հռով-
մայ. այլ թէ այսօրիկ որպիսի
ինչ և իցեն, մնասցե՞ն մեզ, եթէ
մեօք հանդերձ անկցին 'ի ձեռս
թշնամեաց: Զգթութենէ աս-
տանօր և զհեզութենէ իցեն բանք.
ապաքէն 'ի բազմաց հետէ կո-
րուսաք զանուանս իրաց.
քանզի շռայլել օտարին ընչիւք՝
առատաձեռնութիւն կոչի, և
ժպրհութիւն 'ի չարիս՝ արութիւն
քաջութեան. այսպէս ահա 'ի
խորս չարեաց հասեալ կամք:
Թող առատաձեռնեսցեն, քանզի
այս է սովորոյթ ժամանակիս,
յընչից դաշնակցաց. լիցին ողոր-
մածք 'ի գանձահատս հասարա-
կաց, այլ մի զարիւն մեր շռայ-
լեսցեն, և մի առ 'ի խնայել անօ-
րինաց ոմանց զլաւ որեարն համօ-

րէն 'ի կորուստ մատնեսցեն։ Ճար-
տար և գեղեցիկս Կ. Կեսար փոքր
մի յառաջ խօսեցաւ յատենիս
զկենաց և զմահուանէ. Թուի թէ
յառաջապէս համարիցի նա որ
ինչ պատմին զդժոխոց, և չհաւա-
տայցէ զորոշումն չարագործաց 'ի
բարեաց, և զկայս նոցա խաւա-
րինս, տխուրս, ահաւորս և դը-
ժոխըմբերս։ Վասն այսորիկ իսկ
և առաջարկէր զինչս նոցա 'ի
գանձս հասարակաց առնուլ, և
զնոսա 'ի քաղաքս ամուրս 'ի պա-
հեստի ունել, թէ գուցէ 'ի կալ-
մեալ նոցա 'ի Հռովմ կամ յամ-
բոխէ դաւադրաց կամ 'ի վարձ-
կան խուժանէն յափշտակեսցին
բռնութեամբ։ Որպէս եթէ ժան-
տագործ և եղեռնաւոր մարդիկ
'ի քաղաքիս միայն իցեն և ոչ ընդ
բովանդակ Իտալիա. կամ թէ ոչ
առաւել եւս զօրասցի անդ ժպըր-
հութիւն, ուր տկար իցէ ընդդիմ-
արդել զօրութիւն։ Ընդունայն
է ապա խորհուրդ նորա՝ եթէ
երկնչիցի 'ի վտանգաց նոցին. իսկ

եթէ 'ի հասարակաց երկիւղին
ինքն միայն չերկնչի, այնչափ ևս
առաւել ինձ և ձեզ երկեղուկս
արկանէ: Եւ արդ որ ինչ զկեն-
սաղեայ և զընկերաց նորին սահ-
մանեցիք՝ անշուշտ լերուք զի և
զողջոյն իսկ զօրայն Կատիլինայ և
զդաւաճրաց հատէք վճիռ: Որ-
չափ դուք արիագոյնս գործի-
ցէք, այնչափ ևս առաւել նոքա
սրտաբեկեալ վհատեսցին. իսկ ե-
թէ փոքր մի մեղկացեալ զձեզ տե-
սանիցեն, անդէն վայրագագոյնս
գրոհ տայցեն: Մի համարիցիք թէ
նախնիք մեր զինուք ընդարձակե-
ցին զպետութիւնս. եթէ այդպէս
էր, պայծառագոյնս զնոյն առ
մեօք պարտ էր տեսանել. զի քան
առ նոքօք՝ յաճախագոյն է մեզ և
նիզակակցաց և քաղաքացւոց և
զինուց և երիվարաց բազմութիւն:
Այլ ինչ էր այս որ զնոսա հռչա-
կաւս արար և երևելիս, որոց և
հետք անգամ չերևին արդ. առ-
տնին աշխատասիրութիւն, ար-
տաքոյ արդարակորով վարչու-

թիւն, և 'ի խորհուրդս միոք ա-
զատ և անզբաղ 'ի հեշտութենէ
և յախտից: Սոյին փոխան տիրէ
այժմ 'ի մեզ շռայլութիւն և ա-
գահութիւն, կարօտութիւն հա-
սարակաց և Ճոխութիւն իւրա-
քանչիւրոց: Գովեմք զփարթա-
մութիւն և 'ի դատարկութիւն
հատեալ կամք, չիք խտիր ընդ յո-
ռին և ընդ լաւ, զամենայն վարձս
առաքինութեանց կապտէ զա-
հախրութիւն: Եւ չէն ինչ զոր-
մանք, զի ուր իւրաքանչիւր ոք 'ի
ձեռն պանծին եւեթ խորհիցի, և
առանձին հեշտութե՟ և առ արծա-
թոյ և շնորհաց սպաս տարցի, հա-
սարակապետութե՟ լքել 'ի վե-
րայ յարձակեսցին Թշնամիք. այլ
Թողում զայս ամ՟: Երդուեան ազ-
նուականք 'ի քաղաքացւոց հրայ-
րեաց կորուսանել զհայրենիս,
զազգն զաղղիացւոց զխեցբեմն ա-
նուան Հռովմայ 'ի մարտ հրաւի-
րեն, զորագլուխ Թշնամեաց բա-
նակաւ առ դուրս հատեալ կայ, և
դուք դանդաղիք տակաւին և երկ-

մտէք թէ զինչ ընդ առնուլ
պարապացն գործիցէք։ Ողորմե֊
ցարուք, քաջ է, ողորմեցարուք
'ի մանկտին՝ առ սէր փառաց զա֊
ռածեալ, արձակեցէք զնոսա զէն
'ի ձեռին. այլ գուցէ հեզութիդ
ձեր այդ և գթութի̃ 'ի զինեալ նոցին
դարձցի ձեզ 'ի թշուառութիւն։
Ահագին 'ի վերայ հասեալ ձեր
վտանգ, և դուք չերկնչիք այժմ։
Սխալեցի, և կարի իսկ երկնչիք.
բայց առ պղերգութեան և թու֊
լութեան՝ միմեանց մնալով դան֊
դաղիք։ Թերևս յանմահ դիս յու֊
սացեալ իցէք, որ բազում ան֊
գամ պահեցին զհասարակապե֊
տութիւնս զայս 'ի ծանր ծանր
վտանգաց. բայց ոչ ուխտիւք և
ոչ կանացի աղերսանօք խոնարհին
դիք յօգնականութիւն. այլ հս֊
կելով, ժրութեամբ և իմաստուն
խորհրդով յաջողի ամենայն։ Իսկ
եթէ 'ի վատութիւն հատեալ հեղ֊
գայցես, վայրապար կարդաս զաս֊
տուածս ցասուցեալս ընդ քեզ
և թշնամիս։ Առ նախնեօք մերովք

Տ. Մանլիոս Տորկուատոս 'ի գաղ-
ղիական պատերազմի հրամայեաց
'ի մահ տալ զորդին, զի ընդդէմ
իշխանութեան հօրն ընդ թշնա-
մւոյն կռուեցաւ. և պատանեակն
վեհագոյն զտարապայման քա-
ջութե՛ն ելոյծ մահուամբ զպա-
տուհաս. և դուք վեհերեալ դան-
դաղէք դեռ ևս թէ զինչ վճիռ տայ-
ցէք անգութ հայրենադաւ մարդ-
կան. իբր այն եթէ անցեալ կեանք
նոցա զայժմու եղեռունն քաւի-
ցեն: Խնայեսջիք 'ի պատիւ իշխա-
նութեան Լենտուղեայ, եթէ եր-
բեք խնայեացն յամօթ պատկա-
ռանաց, 'ի համբաւ իւր, 'ի դիս
և 'ի մարդիկ. ներեցէք Կեթեգեայ
մանկութեանն եթէ այս առաջին
նուագ իցէ զէն առնլոյ նորա
ընդդէմ հայրենեաց: Եւ զինչ
զԳաբինեայ, զՍտատիլիոսէ և զԿե-
պարեայ ասացից. եթէ առողջ
միտք էին նոցա, ոչ արդեօք յայն-
պիսի խորհուրդս ընդդէմ հասա-
րակապետութեան մտաբերէին:
Կնիք բանիս, ո՛ հարք համա-

գրեալք. եթէ գոյր ելս աղագս 'ի վրիպանաց գտանել, երդնում 'ի գլուխ, զի համբերէի արդեօք գիւրեաւ, որպէս զի խրատեալ 'ի վըտանգէն՝ ուսանէիք չարհամարհել զքանքս: Այլ արդ յամենուստ պաշարեալ կամք. Կատիլինա ունի զօրօք զանցս, այլք 'ի պարսպի և 'ի քաղաքամիջի են թշնամիք, չիք հնար խորհել ինչ կամ գործել 'ի ծածուկ, փութալոյ պէտք են: Եւ քանզի եղեռնաւոր խորհրդով անօրէնքն քաղաքացւոց անկաւ պետութիւնս 'ի վտանգ մեծ, և վկայութ̃ Վոլտուրկեայ և Ալլոբրոգաց յաղթահարեալք խոստովան եղեն նոքա զկոտորածս, զհրդեհս և զայլ դժնդակ և անգութ եղեռունս ընդդէմ քաղաքացւոց և ընդդէմ հայրենեաց պատրաստեալս, ինձ թուի զի խոստովանեցելոցն որպէս յայտնեաց ըստ նախնեացն մերոց օրինաց պարտ է պատուհաս մահու կապել 'ի վերայ»:

Ծ.Գ. Եւ իբրև նստաւ Կատոն,

ամենայն աւագորեարն և մեծ
մասն ծերակուտին 'ի գովութիւն
առեալ զխորհուրդ նորա, զարու-
թիւն օգւոյն յերկինս ամբառնայ-
ին, և զիրեարս սադրանելով երկ-
չոտս կոչէին, զկատոն միայն հա-
մարեալ այր մեծ և գերապանծ.
և ծերակոյտն ըստ խորհրդոյ նո-
րա արար վճիռ։ Այլ ինձ, որ բա-
զում լուեալ եմ և ընթերցեալ
զմեծամեծ գործս ժողովրդեան
Հռովմայ առտնին և 'ի բանակի,
ընդ ծով և ընդ ցամաք, կամք ե-
ղեն քննել թէ ո՞ր ինչ առաւել
սատար լինէր 'ի յաջողութիւն մե-
ծամեծաց գործոց նորա. զի ոչ
ինչ անծանօթ էր ինձ փոքու ջո-
կատիւ 'ի կռիւ գալ նորա յա-
ճախ ընդ բազմագունդ զօրս թըշ-
նամեաց. գիտէի զմղել նորա սա-
կաւաձեռն գնդաւ պատերազ-
մունս ընդդէմ մեծազօր թագա-
ւորաց, և զտոկալ բազմիցս հա-
կառակ բաղդին, և 'ի ճարտար-
խօսութեան զՅոյնս և 'ի պատե-
րազմական փառս զգաղղիացիս

գերազանցեալ գլել: Ինձ ասեմ, որ բազում յայսոսիկ մտախոհ լինել, ակն յայտնի երևէր սակաւուց քաղաքացւոց չքեղ առաքինութեամբ յաջողեալ ամենայն. և այսուիկ աղքատութեան քան ըզփարթամութիւն, և սակաւուց քան զբազում հզօրացեալ: Այլ յորմէհետէ զեղխութեամբ և մեղկութեամբ ապականեցաւ քաղաքն, դեռ ևս հասարակապետութիւնն մեծութեամբ իւրով տանէր յաղթութեանց զօրավարացն և ատենակալաց. սակայն որպէս սպառեալ 'ի զօրութենէ ծննդոց՝ 'ի բազմաց հետէ ոչ ևս ոք յառնէր 'ի Հռովմ ականաւոր առաքինութեամբ: Սակայն յաւուրս մեր կացին արք երկու երևելիք յառաքինութեան ներհակակիրք 'ի բարս. Մ. Կատոն, և Գ. Կեսար, զորոց 'ի կարգ անկեալ բանիս՝ չկամիմ անյիշատակ առնել, զերկոցունց իսկ զբնութիւն և զբարս ըստ իմում կարի առաջի առնելով:

ԾԴ. Արդ զուգահաւասարք գոգցես սոքա յազնուականութեան, 'ի տիս և 'ի պերճախօսութեան, նոյն և 'ի մեծանձնութեան, հանդիսապատիւ և 'ի փառս. սակայն այլևայլ ճանապարհաւ: Կեսար բարերարութեամբքն և մեծագործութեամբ երևելի. արդարակորով կենօքն Կատոն: Նա գթութեամբ և հեզութեամբ պանծալի, սա անաչառ խստութ՟բ յաւելեալ զանձին պատիւ: Կեսար սփռելովն, նըպաստելով և ներելով, Կատոն ճշդելով փառս ստացեալ: Մին ապաւէն չուառաց, միւսն թակն կոշկոճիչ գլխոց անօրինաց: Նորայն ներող քաղցրութիւն, և սորայս անվկանդ հաստատութիւն պանծալի լեալ: Հակիրճ ասել, Կեսար կիրթ 'ի վաստակս և 'ի տքնութ՟ե, խնամոտ զգործոց բարեկամաց և զիւրոցն անփոյթ, առատաբաշխ յարժանաւորս, ցանկացող մեծի իշխանութ՟ե, զօրավարութ՟ե, և նորանոր պատերազ-

մայ՝ ուր չքեղ փայլէ առաքինու-
թե̃ն. իսկ Կատոն սիրող համեստին
և վայելուչ կարգաց, այլ յոյժ
առաւելեալ ՚ի խստութեան. ոչ
ընդ ձոխս ձոխութեամբ, ոչ ընդ
խաղմարարս կռուով, այլ ընդ
արս քաջակորովս առաքինութ̃բ,
ընդ համեստս ցածութեամբ, ընդ
անմեղս ժուժկալութեամբ մըր-
ցէր. զլինելն լաւաքարոյ քան զե-
րեւել՝ նախամեծար ընտրէր. որ-
չափ չէրն փառախնդիր, նոյնչափ
եւ զհետ նորա յորդէին փառք:

Ծ·Ե· Եւ ՚ի հաւանել ծերա-
կուտին, որպէս կանխեցի ասացի,
ընդ խորհուրդ Կատոնի, բարուք
համարեցաւ բդեաշխն աճապա-
րել ՚ի գործ նախ քան զգիշեր, զի
մի պարապ տացի խռովութե̃. և
պատուէր ետ եռապետացն՝ պատ-
րաստել զկարեւորս ՚ի պատու-
հաս մահուն, և ինքն կարգեալ
զպահանորդս՝ էած զԼենտուղոս
՚ի բանտ, ետ բերել և զընկերս
նորա ՚ի ձեռն պրետորաց: Է վայր
ինչ ՚ի բանտին՝ որ Տուղղիանոն ա-

նուանի փոքր մի վերկոյս 'ի Ճախա-
կողմն, և իջանէ 'ի խոր ընդ երկ-
րաւ ոտնաչափս երկոտասան,
շուրջ ամրափակեալ յորմոց և մի-
մարդեայ կամարայարկ 'ի վերոյ.
այլ դժնէատեսիլ, խաւարին,
չարահոտ և ահաւոր: Անդր իջու-
ցեալ Լենտուղոս, 'ի դահճաց
պատրաստելոց խեղդամահ եղև:
Այսպէս կորեաւ պատրիկս այս
սերեալ 'ի մեծահռչակ տոհմէ
կոռնելեանց, որոյ զբդեշխու-
թեան իշխանութիւն կալեալ էր
'ի Հռովմ, զարժանի բարուց իւ-
րոց և գործոց ընկալեալ զվար-
ձան: Զնոյն պատիժ պատուհասի
ընկալան և Կեթեգոս, Ստատի-
լիոս, Գաբինիոս և Կեպարիոս:

ԾԶ. Մինչ դեռ այս անցք
անցանէին 'ի Հռովմ, Կատիլինա
'ի զօրաց անտի ընդ իւր ածելոց և
'ի զօրականէն Մանլեայ կազմեաց
լեգէոնս երկուս, և զհետևակա-
խումբն ըստ թուոյ զօրուն ելից.
այլ 'ի գունդս գունդս բաշխէր
հաւասար զինքնակամ զօրականն

և զեկեալս 'ի համախոհից. և 'ի
սուղ ժամանակի ընոյր զթիւ լե-
գէոնացն, որ 'ի սկզբան չունէր
աւելի քան զերկու հազար մար-
տիկս: Այլ իբր յայնքան բազմու-
թենէն չորիր մասն միայն ըստ օ-
րինի էր զինեալ. իսկ այլոց, որ-
պէս դէպք ետուն, շամբուրս կամ
նիզակս և կամ որածայր ցիցս փո-
խանակ զինուց առեալ: Իբրև ազդ
եղև զի Անտոնիոս բանակաւն
դայր հասանէր, Կատիլինա մերթ
ընդ լերինս Ճանապարհ արա-
րեալ, մերթ 'ի քաղաքն կոյս և
մերթ 'ի Գաղղիս խաղացուցեալ
զզօրս՝ չտայր թշնամւոյն տեղի
մարտի, զի ակն ունէր ժամանելոյ
ընդ հուպ ստուար գնդից 'ի Հռով-
մայ, յետ 'ի գլուխ տանելոյ հա-
մախոհիցն իւրոց զձեռնարկեալ
դաւաճանութիւն: Իսկ զստրուկս՝
որ 'ի սկզբան գունդագունդ առ
նա դիմէին՝ մերժէր 'ի բաց, վըս-
տահացեալ 'ի զօրութիւն դաւակ-
ցացն, և ոչ օգտակար համարեալ
'ի վէճս քաղաքացւոց խառնել
զստրուկս փախստականս:

ԾԷ. Սակայն ընդ հատանել զուժի յայտնելոյ դաւադրութեանն և պատուհասի մահուն Լենտուղեայ, Կեթեգոսի և այլոց 'ի վեր անդր յիշատակելոց, բազումք 'ի նմանէ դասալիք թօթափեցան, որոց յուսով աւարին և ըղձիւք յեղափոխութեան իրաց հրապուրեալ էր 'ի պատերազմ. Իսկ զմնացորդ զօրուն ընդ դժուարուս լերինս երկար ճանապարհաւ էած Կատիլինա 'ի պիստորեան դաշտն, խորհելով ընդ գողուղի ճանապարհս խոյս տալ յայնկոյս Ալպեանց 'ի Գաղղիա: Բայց Կ. Մետեղղոս Կելէր երիւք լեգէոնիւք 'ի Փիգենեայ դաշտին զօրավարէր, գուշակելով զի 'ի նեղ անկեալ Կատիլինայ՝ առնելոց էր որ ինչ արարն, որպէս պատմեցաք: Արդ իբրև գիտաց 'ի դասալիք զօրուէն զչու նորա, խաղացոյց անդէն զբանակ իւր և ըդկայ էառ առ ոտս լերանցն, ընդ որս հարկ էր իջանել նմա 'ի Գաղղիա: Ոչինչ հեռի կայր և Անտո-

նիոս, տու 'ի հետամուտ լինել
փախստէին հզօր բանակաւ ընդ
հարթ ճանապարհս: Եւ իբրեւ ե-
տես Կատիլինա թէ փակեցաւ 'ի
լերանց և 'ի գնդից թշնամեաց, և
'ի քաղաքին յետս ընդդէմ ձա-
խողեցան իրք, և զի չգոյր յոյս
փախստի և ոչ օգնականութեան,
լաւ համարեցաւ զբաղդ զինուց
փորձել 'ի վտանգին, և հաստա-
տեաց բախել անդէն ընդ Անտո-
նիոսի: Գումարեաց զեւրսն և խօ-
սեցաւ այսպէս.

ԾԸ. « Աներկբայ հաստեալ եմ 'ի
վերայ, ո՛ զօրականք, զի բանք չյա-
ւելուն զարութի, և ոչ 'ի խօսից զօ-
րավարին լինին երբէք 'ի վատացն
քաջս և ոչ յերկչոտից արիա-
սիրտս: Որչափ ինչ արութիւն է
ոգւոյ առն առն 'ի բնէ կամ 'ի
վարժից, զնոյն և 'ի մարտի սովոր
է ցուցանել: Որ ոչ 'ի փառաց և
ոչ 'ի վտանգաց յորդորեալ զարթ-
նուցու՝ վայրապար է այնպիսւոյն
խրախոյս, զի մտացն երկիւղ խը-
նու զականջս: Այլ ես կոչեցի ըզ-

ձեզ առ 'ի տալ հրահանգս ինչ
և յայտնել ձեզ զիրաւունս խոր-
հրդոց իմոց: Ապաքէն գիտէք,
զօրականք, զի Լեհաստանս վատու-
թեամբն իւրով և դանդաղութ̃բ
քանի կործանումն և անձին և
մեզ 'ի վերայ եած, և զի որպէս
մինչ օգնականութեան 'ի քաղա-
քէն ակն ունէի՝ փակեցաւ ինձ և
ճանապարհն 'ի Գաղղիա: Նա արդ
յոր պայման հասեալ կան իրք
մեր, ծանուցից ձեզ. կրկին բա-
նակք թշնամեաց արգելուն զմեզ.
մին 'ի քաղաքակողմն կուսէ, և
մին 'ի Գաղղիոյ. և թէպէտ արու-
թեամբ քաջութ̃ե հանդուրժեա-
ցուք զկայ առնուլ 'ի տեղւոջս
ընդ երկար, սակայն ցորենոյ և
կարևորաց նուազութիւն չներեն
մեզ զայս: Ո՛ր և ախորժիցեմք
երթալ, զինու զօրութեան պէտք
են բանալոյ մեզ ճանապարհ ա-
ռաջի: Վասն որոյ չէրուք արք և
կալարուք զոգի 'ի բախին. 'ի մտա-
նել ձեր 'ի մարտ պատերազմի՝
յուշ լիցի ձեզ զի 'ի բաղուկս ձեր

բարձեալ բերէք զմեծութիւնս, զփառս, զպատիւ, զազատութիւն և զհայրենիս: Եթէ յաղթեսցուք, ամենայն ինչ մեր լիցի անշուշտ, պարէնք առատ, և քաղաքք և ժողովուրդք բացցին մեզ առաջի: Իսկ եթէ կասեսցուք երկիւղիւ, յետս ընդդէմ հանդիպեսցի մեզ. չիք տեղի ապաւինի և ոչ բարեկամ ընկալուչ՝ որոց զէնք իւրեանց չգիտացին պաշտպանել: Ի վերայ այսորիկ, ո՛ զօրականք, և ոչ նոյն հարկ զմեզ և զնոսա մղէ 'ի մարտ. մեք 'ի վերայ հայրենեաց, վասն ազատութե և վասն կենաց մարտնչիմք. Նոցա վասն սակաւուց վայրապար իշխանութեան է պատերազմ: Հա՛պա արիագոյնս յարձակեցարուք 'ի պատերազմ, յուշ ածեալ զանցեալ արութիւնսդ: Մարթ էր մեզ ծանր ամօթով մտարանդի վարել կեանս, և ոմանց իսկ 'ի ձէնջ 'ի Հռոմ մերկացեալ յընչից պարտապանս կեալ. և զի այս դժպատեհ և անհանդուրժելի թուէին արանց քաջաց, նմին

իբր իսկ յայս ձեռն արկէք 'ի գործ։ Եւ արդ եթէ յայսմանէ տեղի տալ կամիցէք, յանդգնութեան պէտք են. զի յաղթողին է զպատերազմ 'ի խաղաղութի առեալ փոխել։ Իսկ 'ի փախստեան փրկութեան ակն ունել, կապարձագարձոյց 'ի թշնամեաց լեալ՝ ակներև յիմարութի է։ Յաճախ մեծագոյն է 'ի մարտի վտանգ որոց մեծապէսն երկնչին, իսկ անվեհեր արիութի պարիսպ ամուր է։ Յակնարկել խմում 'ի ձեզ, ո՛ քաջք, և յածել զմտաւ զարութիւնս ձեր, մեծ ակնկալութիւն յաղթութեան առաջի իմն լինի։ Ոգի, հասակ և քաջութիւն ձեր, քաջալերս իմն մատուցանեն. առ քօք հանդերձ և հարկն, որ զերկչոտս անգամ քաջարիս կազմէ. զի տեղւոյս անձկութիւն չներէ բազմութեան թշնամեաց պաշարել զմեզ։ Այլ եթէ նախանձաբեկ մախսացի բաղդ ընդ քաջութիւն ձեր, զգոյշ լինջիք չկորնչել առանց վրիժուց. մի իբրև

զոչխարս յափշտակեալս վարել ՚ի
սպանդ, այլ արիաբար կռուելով
զարիւնահեղ և զադալի թողուլ ՚ի
թշնամին զյաղթութիւն »:

ԾԹ. Զայս իբրև խօսեցաւ,
փոքր մի պարապ տուեալ՝ հրա-
մայեաց փողել ՚ի մարտ, և առաջ
գործեալ էած զգունդն ՚ի տեղի
մի տափարակ: Ի բաց արար ապա
զերիվարս, որպէս զի հաւասա-
րութիւն վտանգի և ևս վառեսցէ
զոգի զօրականին ՚ի քաջութիւն.
և ինքն իսկ հետևակագնաց՝ կար-
գէր յարդարէր ըստ դրից տե-
ղւոյն և ըստ թուոյ բազմութեան
զբանակն: Ի ձախմէ դաշտին էին
լերինք, և յաջմէ ծայռք սեպա-
ցեալք. ութ հետևակախումբս
կարգեաց ՚ի ճակատամարտ, և
զայլս խիտ առ խիտ զետեղեցոյց
յամրութիւն բանակին: Ի սոցա-
նէ զհարիւրապետսն ընտիրս ինք-
նակամս, և ՚ի սինլքոր զօրակա-
նէն զքաջազէնս կացոյց առաջա-
պահ: Զաջ թև բանակին ետ Կ.
Մանլեայ, և զահեակն փեսուլա-

ցւոյ ումեմն, և ինքն ազատագրե-
լովքն և գաղթականօք եկաց 'ի
բուն բանակին առ արծուօքն՝
զոր 'ի մարտին Կիմբրաց առէին
Կ. Մարիոսի ունել 'ի բանակին:

Իսկ 'ի միւսմէ կողմանէ Կ. Ան-
տոնիոս արգելեալ յոտնառութէ
մնանել 'ի պատերազմ, եթող
զզօրավարութիւն 'ի Մ. Պետրէոս
տեղակալ: Սա կարգեաց 'ի ճակա-
տուն զհինաւուրց զօրականն՝ զոր
յաղմկի անդ քաղաքական մար-
տին գումարեալ էր. զհետ սոցա
և զայլ զօրականն 'ի թիկունս օգ-
նականութեան կացոյց: Նա ինքն
երթևեկէր հեծեալ ընդ ռազմս
զօրացն, կոչէր զիւրաքանչիւր յա-
նուանէ, խրախուսէր, աղաչէր
յուշ առնել զի ընդդէմ անզէն յե-
լուզակաց 'ի վերայ հայրենեաց,
վասն որդւոց, վասն մեհենից և
բագնաց մարտնչէին: Սա այր պա-
տերազմի, աւելի քան զերեսուն
ամ 'ի բանակի հազարապետ և
ոստիկան և տեղակալ և պրետոր
մեծաւ փառօք կացեալ, զբազումս

'ի նոցանէ և զառն առն զքաջու-
թիւն քաջ գիտէր. զորս և յուշ
ածեալ վառէր զոգի զօրականին.

Կ. Եւ յետ հանդէս առնելոյ
ամենայնի, պատուէր ետ նշան
տալ, փող հարկանել, և հետևա-
կազօրուն ոտն առ ոտն յառաջ
խաղալ: Զնոյն և թշնամին արար:
Իբրև մօտ առ իրեարս հասին, ուր
մարթ էր թեթևազէն զօրուն բա-
խել 'ի մարտ, մեծաւ աղաղակաւ
զայրագինս դիմեցին. և զնետս
թողեալ, ձեռն 'ի սուսերս ար-
կին: Հինաւուրց զօրքն 'ի յիշա-
տակ արութեանցն անցելոց մո-
լեգնաբար կուրծ առ կուրծս ընդ
թշնամիս կռուէին, և սոքա ան-
վեհերք զդէմ նոցին ունէին. և
սաստիկ լինէր անդ մարտ պատե-
րազմին: Անդ Կատիլինա 'ի ճա-
կատու բանակին ընտիր ընտիր զօ-
րօքն շուրջ եկեալ՝ ձեռն տայր
վտանգելոցն, առողջս ընդ վի-
րաւորելոց փոխանակէր, ամե-
նայնի խնամ տանէր, և յաճախ
անձամբ մարտուցեալ՝ զբազումս

'ի Թշնամեաց դիտապաստ յերկիր
արկանէր , զքաջն զօրականն և
զհանճարեղ սպարապետն պաշ-
տօն լցեալ անԹերի : Պետրէոս
իբրև ետես 'ի վեր քան զակնկա-
լուԹիւն զխստայարձակումն Կա-
տիլինայ , խաղացոյց 'ի մէջ Թշնա-
մեաց զգունդն պրետորական . և
խռովեալ զնոսա , և որոց աստ
անդ զդէմ ունէին՝ սուր 'ի վերայ
եդեալ , արար կոտորած մեծ . և
անտի յաջ և յահեակ յարձակե-
ցաւ : Մանլիոս և փեսուլացին , որք
'ի ճակատու անդ մարտնչէին ,
անկան . և Կատիլինա իբրև ետես
վայրավատնեալ զիւրսն , և զանձն
սակաւուք ումամբք մնացեալ ան-
օգնական , յիշեաց զազնուական-
նուԹիւն զարմին և զնախնեացն
փառս , և դիմեալ 'ի խառնուրդս
մարտին՝ անդ զէն 'ի ձեռին ան-
կաւ մեռեալ :

ԿԱ . Անդ այնուհետև յետ
պատերազմին էր նկատել զքա-
ջայանդուգն և զմեծ սրտապըն-
դուԹի̃ զօրացն Կատիլինայ . զի իւ-

ըաքանչիւր յորում և կացեալ էր
տեղւոջ 'ի կախ մարտին, զնոյն
գոգցես դիակնացեալ մարմնոյն
ծածկէր․ սակաւք ևեթ յայնցանէ՝
զորս խրամատեալն էր գունդն
սրետորական, փոքր մի 'ի կայիցն
էին տեղափոխեալք, այլ ամենե֊
քեան 'ի դիմաց ընկալեալ վէրս՝
անկեալ դնէին ։ Իսկ Կատիլինա
հեռի յիւրոց անտի 'ի մէջ դիա֊
կանց թշնամեաց գտաւ դեռ այն
ինչ փչեալ զշունչն, զոգւոյն կա֊
տաղութիւն՝ զոր 'ի կենդանու֊
թեանն ունէր՝ նկարեալ տակա֊
ւին բերելով 'ի դէմս ։ Համառօ
տել, յամենայն բազմութենէ
զօրացն ոչ 'ի մարտի և ոչ 'ի
փախստի ըմբռնեցաւ քաղաքացի
ոք ազատ․ այսպէս ամենեցուն
նոցա հաւասարապէս յիւրեանցն
և 'ի թշնամեաց ոչ խնայելով 'ի
կեանս ։ Սակայն և ոչ բանակն
հռովմէական խնդաց ինչ ընդ ա֊
րիւնահեղ յաղթութիւնն․ զի ա֊
մենայն այր զօրաւոր կամ տա֊
պաստ 'ի մարտի անկեալ, կամ

զագգոյ վերս ընկալեալ էր ։ Եւ
բազումք ելեալ 'ի բանակէն յայց
անկելոցն կամ 'ի կողոպուտ, 'ի
շրջել զդիակունսն՝ կէսք զբարե-
կամս , այլք զհիւրս , և օմանք
զոռհմայինս գտանէին. եղեն և
որք զթշնամիս իւրեանց ծանեան։
Այսպէս ընդ բանակն ողջոյն ու-
րախութիւն ընդ տրամութեան ,
և ցնծութիւն ընդ ողբոց խառն
ընթանայր ։

# ԿԱՅԻՈՍԻ ՍԱՂՈՒՍՏԵԱՑ

## ՊԱՏԵՐԱԶՄ ՅՈՒԳՈՒՐԹԵԱՆ

---

Ա. Յանիրաւի զիւրմէ բնութենէն քրթմնջէ մարդ, իբր զի ապիկար և սակաւաժամանակեայ՝ 'ի բաղդէն առաւել քան յառաքինութենէն վարիցի: Քանզի ընդ հակառակն քաջ կշռեալ, ոչինչ մեծ և գերագոյն քան զայն գտանիցէ, և զի փոյթ ճարտարութե̄ պակասէ նմա քան թէ զօրութիւն և ժամանակ: Այլ իշխան և առաջնորդ կենաց մահկանացուաց միտքն է, որ եթէ ընդ շաւիղս առաքինութեան փառաց ելցէ 'ի խնդիր, մեծապէս ճոխացեալ հզօր և շքեղ գտանի, և ոչ բաղդին կարօտ՝ որ զանբծութիւն վարուց,

զյաջողակութիւն և զայլ բարե-
մասնութիւնս , ոչ շնորհել ու-
մեք կարէ , և ոչ 'ի բաց առնուլ:
Իսկ եթէ 'ի թիւր ցանկութեանց
ոք ըմբռնեալ 'ի դատարկութիւն
և 'ի հեշտութիւնս մարմնոյ զա-
ռածանիցի , զնմանակար հեշտա-
լեօք գամ մի դեգերեալ , կորու-
սանէ առ յուլութեան զզօրու-
թիւն , զժամանակ և զհանճար ,
և տկար զբնութիւնն ամբաստա-
նէ՝ զիւր մեղսն զնովաւ շփեալ :
Զի եթէ այնչափ փոյթ էր մարդ-
կան զբարեաց գործոց , որչափ
զհեշտ անպատշաճիցն և զանօգ-
տակարաց և յաճախ իսկ զնմանա-
կարաց դիմէն , ոչ արդեօք բաղ-
դըն զնոսա՝ այլ նոքա զբաղդն վա-
րէին , և յայն հասեալ մեծութի ,
զի ոչ ևս մահկանացուք՝ այլ յա-
ւերժականք լինէին փառօք :

Բ. Եւ զի ազգ մարդոյ 'ի հո-
գւոյ և 'ի մարմնոյ է կազմեալ ,
վասն այսորիկ և բովանդակ գործք
մեր և ջանք՝ կէսք զմարմնոյ բնու-
թեան , և կէսք զհոգւոյ զհետ եր-

թան: Արդ գեղեցկութիւն դի-
մաց, գանձուց մեծութիւն, սոքօք
հանդերձ և մարմնոյ կորով և այլ
ամենայն ինչ սոցին սակի՝ վաղան-
ցուկ են և դիւրասահ. իսկ հան-
ճարոյ վեհ են գործք և զօրէն հո-
գւոյ անմահք: Եւ զի ՚ի կարճոյ
ստացից, մարմնոյ և բարեաց բաղ-
դին, որպիսի սկիզբն՝ նոյնպիսի
է և վախճան. ամենայն որ ծնա-
նին՝ մեռանի, և որ աճէն՝ հնա-
նայ: Իսկ հոգին անեղծ է և յա-
ւերժական՝ ուղղիչ մարդկան ազ-
գի, որ նուաճեալ վարէ զամե-
նայն, և ինքն ոչ յումեքէ նուա-
ճի: Որով զարմանալի ևս է նո-
ցայն անմտութիւն, որք անձնա-
տուր ՚ի մարմնոյ հաճոյս՝ շուայ-
տութեամբ և վատութեամբ գը-
նան. և զհանճար քան զոր չիք
ինչ պատուականագոյն, չիք ինչ
գերագոյն ՚ի բնութեան մահա-
ցուաց, անմշակ և անխնամ թո-
ղուն վատութեամբ ՚ի թմբիր ա-
պականութեան, ուր բազմապա-
տիկ և զանազան են մուաց ա-

րուեստք, որովք մարթէին նոցա պայծառանալ:

Գ. Բայց սակայն ատենակալութիւնք և իշխանութիւնք, և միանգամայն ասացեալ՝ ամենայն խնամք գործոց հասարակաց ոչինչ ըղձալի թուին ինձ արդ. զի ոչ ևս առաքինութե̃ են վարձք, և ոչ ոք նենգութեամբն հաւին յիշխանութիւն՝ անքոյթ ինչ այնու, կամ առաւել առաքինիք ցուցան: Զի թէպէտև յաջողեսցի քեզ բռնութեամբ իշխել հայրենեացդ և ազգակցաց, և բառնալ զեղծմունս, տակաւին անպատեհ է. մանաւանդ զի ՚ի յեղափոխութիւն տեսչութեան կոտորածոց հարկ է և տարադէմ փախստեան և այլոց թշնամութեանց: Իսկ տարապարտ վաստակել, և ոչ յայլ ինչ ձգնել, բայց ՚ի խնդիր ատելութեան՝ յետին անմտութե̃ է գործ, որոց ոչ կամիցին անձաւ և իմաստակար տենչիւ ՚ի շնորհս սակաւապետութեան նուիրել զպատշաճն և զազատութիւն:

Դ. Իսկ 'ի գործոց հանճարոյ ընդ պիտանեգոյնս համարի աւանդել գրով զյիշատակս անցից, զորոյ զառաւելութենէն քանզի բազումք ճառեցին՝ լռել հաւանիմ, որպէս զի մի՛ անափառ ումեք թուեցայց, զանձին վաստակս 'ի գովութիւն առեալ: Իցեն իսկ թերևս որք վասն հրաժարելոյ իմոյ 'ի գործոց հասարակաց դատարկութիւն համարեսցին, սոքա ապաքէն այնոքիկ իցեն՝ առ որս ճարտարութիւն համարեալ է սպաս տանել ռամկին, և կոչնովք շնորհս խնդրել: Որոց եթէ ընդ միտ ածեալ էր, թէ յո՞ր ժամանակս դէպ եղև ինձ ատենակալութեան հասանել, և ո՞յք ոմանք չկարացին հասանել յայն, և որպիսիք ոմանք ապա 'ի կարգ ծերակուտին ամբարձան, խելամուտ արդեօք լինէին զի ոչ առ վատութեան եղև ինձ փոխել զխորհուրդս, այլ զի առաւել օգուտ էր հասարակապետութեան յինէն դատարկութե-

նէս քան յայլոցն գործառնու-
թենէ: Քանզի լուայ բազում ան-
գամ թէ Կ. Մաքսիմոս, Պ. Սկի-
պիոն և այլք ականաւորք 'ի մերոցս
քաղաքացեաց սովոր էին ասել,
զի 'ի հայել նոցա 'ի կենդանա-
գիրս նախնեաց՝ վառեալ արծար-
ծանէին միտք նոցա 'ի սէր առա-
քինութեան: Իբր ոչ եթէ 'ի
նիւթն մոմեղէն և 'ի կերպարան
պատկերին էր այն զօրութիւն,
այլ 'ի յիշատակ գործոց նոցին
վառէր բոցն այն 'ի սիրտ արանցն
աւագաց, և ոչ հանդարտէր մինչ-
չև առաքինութեան իւրեանց հա-
ւասարել համբաւոյ փառաց նո-
ցա: Իսկ զսոցին հակառակն ո՞վ ոք
զարդիս լաւութեամբ և հանձա-
րով մրցի ընդ նախնիս, և ոչ մա-
նաւանդ յաճախութեամբ գան-
ձուց և պերճութեամբ: Այլ և
այլք նորամուտք, որք երբեմն ա-
ռաքինութեամբ սովոր էին գլել
զազնուականօք, արդ գաղտագո-
ղի յափշտակութեամբ, քան հը-
նարիւք լաւութեան 'ի բարձ և 'ի

պատիւ նկրտին ։ Իբր այն լծէ , կուսակալութիւն , բդեշխութիւն և այլն ամենայն որ ասցին ատկի են , ինքնին գլխովին լցեն շքեղք և հոյակապք , և ոչ առաքինութ̃ք այնոցիկ՝ որ նոքօքն վարեցին ։ Այլ վիշտ և տաղտուկ ընդ բարս քաղաքացւոց իւրոց առեալ ձգեցին զնս զարտուղի ՚ի բաց . զարմայց ապա յառաջորկեալ կարգ բանիս ։

Ե . Առաջի կայ ինձ գրել զպատերազմն զոր մղեցին հռովմայեցիք ընդ Յուգուրթայ արքային Նումիդիոյ . նախ զի մեծ եղև և դժնդակ և երկուստեք յաղթութիւնք . և երկրորդ անգամ՝ զի անդ զառաջինն հարաւ ամբարտաւանութիւն ազնուականաց ։ Այս դժուութիւն զաստուածայինս առհասարակ և զմարդկայինս վեր ՚ի վայր տապալեաց . յայն մոլեգնութ̃ե հասեալ մինչև ՚ի քաղաքական պատերազմ և յաղարտ Իտալիոյ առնուլ փոխման ։ Այլ մինչչև մխեալ ՚ի պատմութիւնս՝

յաւելից սակաւուք 'ի վերուստ
որ ինչ 'ի ծանօթութիւն իրացս
օգնէ մեծապէս ։

Յերկրորդում պունիկեան պա֊
տերազմի՝ յորում զօրավարն կար֊
քեդոնացւոց Աննիբաղ զմեծու֊
թեն հռովմէական անուան և զզօ֊
րութիւն Իտալիոյ սասանեցոյց,
Մասինիսսա թագաւոր Նումի֊
դացւոց ընկալեալ 'ի դաշնակցու֊
թեն բարեկամութեան 'ի Պ. Սկի֊
պիոնէ՝ որում ապա վասն քա֊
ջութեանն յաւելու Ափրիկեցի
անուն, բազում և մեծամեծ ա֊
րութիւնս գործեալ էր. վասն այ֊
սորիկ յետ պարտութեան կար֊
քեդոնացւոց և գերելոյ Սիփակայ
արքայի, որոյ մեծ և ընդարձակ
տէրութիւն էր յԱփրիկէ, ժողո֊
վուրդ Հռովմայ զամենայն քա֊
ղաքս և զգեղեանս զօրութեամբ
զինու ստացեալս՝ ետ թագաւո֊
րին 'ի պարգև ։ Որով հաւատա֊
րիմ եկաց ընդ մեզ Մասինիսսա.
այլ ընդ կենաց նորա և իշխանու֊
թեանն եղև վախճան ։ Միահե֊

ծան կալաւ ապա զթագաւորու֊
թիւնն որդի նորա Միկիպսա,
քանզի մեռեալ էին եղբարք նո֊
րին Մաստանաբաղ և Գուլուս֊
սա: Միկիպսայ եղեն որդիք եր֊
կու Ադերբաղ և Հեմբսաղ. բայց
և զՅուգուրթ զորդի Մաստանա֊
բաղայ եղբօր իւրոյ, որ մերժեալն
էր 'ի հաւոյն Մասինիսսայ վասն
հարճորդի գոլոյն, ընկալաւ նա
յարքունիս համապատիւ ընդ որ֊
դիս իւր:

Զ. Իբրև յարբունս եհաս Յու֊
գուրթ, արութեամբ մարմնոյ,
վայելչութեամբ կերպարանաց, և
մանաւանդ զօրութեամբ հանճա֊
րոյն մեծապէս փայլեալ՝ ոչ 'ի
շուայտութիւն և 'ի դատարկու֊
թիւն անձնատուր գտանէր, այլ
ըստ բարուց ազգին 'ի հեծելու֊
թիւն, յաղեղնաւորութիւն և 'ի
ձիարշաւս ընդ հասակակիցս իւր
մրցէր. և թէպէտ զամենեսեան
գերազանցէր փառօք, սակայն ա֊
մենեցուն սիրելի էր: Դարձեալ և
յաճախ յորս հեծանէր, զառիւ֊

ծունս և զայլ գազանս առաջին կամ ընդ առաջինս վերաւորէր. բազում գործէր առանց պարծելոյ: Թէպէտ 'ի սկզբան անդ Միկկիպսա ուրախ լինէր ընդ Յուգուրթ, զառաքինութիւնս նորա 'ի փառս իւրում տէրութեան համարեալ, այլ ապա հայեցեալ յալևոյթ իւր, և 'ի մանկունս իւր դեռահասակս, և 'ի զարգացումն պատանւոյն ևս քան զևս 'ի հասակ՝ մտայոյզ լինէր 'ի խորհուրդս։ Ահաբեկէր զնա դահասիրութիւն մարդկեղէն բնութեան 'ի լրումն ըղձիցն մէտ և թաւալ. դարձեալ և դէպ բարեպատեհ ծերութեան իւրոյ և որդւոցն մանկութե՟, որ և զլաւս 'ի մարդկանէ 'ի յոյս աւարին դրդեալ հրապուրէ. 'ի վերայ այսորիկ և սէր նումիդացւոց ընդ Յուգուրթայ, զի եթէ զայր այնպիսի բառնայր 'ի միջոյ նենգութեամբ, կասկածէր դրդել զնոսա այնու 'ի խռովութիւն և 'ի պատերազմ:

Է. Ի դժուարութեանց աստի

շուրջ պատեալ Միկիպսայ, իբրև ետես թէ ոչ բռնութեամբ և ոչ դաւով ընկճել կարէր զայրն սիրելի ժողովրդեան, և զի գիտէր զՅուգուրթ պատանի յաջողակ և փառաց զինուց ցանկացող, եդ 'ի մտի արկանել զնա 'ի վտանգ կորստեան, և այսու փորձել զիւր բաղդ:

Զայնու ժամանակաւ առաքէր Միկիպսա 'ի Նումանտեանն պատերազմ՛ 'ի թիկունս օգնականութեան ժողովրդեան Հռովմայ հեծեալս և հետևակս. ընդ նոսա զօրավարութեամբ արձակէր զՅուգուրթ 'ի Սպանիա՝ ակն ունելով զի առ 'ի հանդէս արութեանն կամ՛ առ բուռն կատաղութեան թշնամեաց դիւրեաւ անկանէր նա յորոգայթ մահուն: Այլ այլ ազգ յոյժ դէպքն պատահեցին. քանզի Յուգուրթ այր ժիր և խորագէտ, խելամուտ լեալ բնաւորութեան Պ. Սկիպիոնի՝ որ զօրավարէրն յայնժամ Հռովմայեցւոց, և 'ի վերայ հասեալ գնացից թշնա-

մեացն , մեծաջան և մեծավաս֊
տակ , հլու յամենայնի և դիմա֊
դրաւ 'ի վտանգս՝ 'ի սուղ ժամա֊
նակի յայն փառաւորութիւն ե֊
հաս , մինչև մերոցն սիրելի և նու֊
մանտացւոց ահընկէց գոլ։ Եւ որ
արդարև դժուարինն է յոյժ , քաջ
'ի պատերազմի և հանճարեղ 'ի
խորհուրդս էր . յորոց առաջինն
'ի քաջութենէ 'ի յանդգնութեն ,
և երկրորդն 'ի զգուշութենէ յեր֊
կիւղ զբազումս սովոր է արկա֊
նել։ Վասն այսորիկ Սկիպիոն 'ի
բազում գործս զՅուգուրթ յա֊
ռաջ վարէր , ընդ բարեկամս զնա
ունէր , և որ ըստ օրէ յաւելոյր
ընդ նմա 'ի մտերմութիւն , զի
բանք նորա և գործք ոչ ընաւ վրի֊
պէին ։ Սոքօք հանդերձ և մտացն
ազատականութեամբ և արագու֊
թեամբ հանճարոյն զբազումս 'ի
հռովմայեցւոց սիրով բարեկա֊
մութեան յինքն յանկուցանէր

Ը . Յայնմ ժամանակի էին 'ի
զօրս մեր բազումք 'ի սինլքորմարդ֊
կանէ և յազնուականաց , որք զմե֊

ծուլթն ընչից քան զբարելաւու-
թիւն և զառաքինութիւն պա-
տուեալ, խռովայոյզք էին և հը-
զօրք առ տնին, և առ ազգս դաշ-
նակիցս անուանիք քան մեծա-
րոյք ։ Սոքա զեռանդուն միտս
Յուգուրթայ վառէին յուսով, զի
'ի մեռանել Միկիպսայ հասանէր
նմա մեծաւ քաջութեամբն իւրով
միահեծան ունել զպետութիւն
Նումիդիոյ. և զի դարձեալ 'ի Հը-
ռովմ ամենայն ինչ արծաթոյ վա-
ճառէր ։ Յետ կործանման Նու-
մանտիոյ խորհեցաւ Սկիպիոն ար-
ձակեալ զնիզակակից զօրս, և
դարձ առնել 'ի Հռովմ. և լու 'ի
լու ամենեցուն գովեալ և մեծա-
պարգև մեծարեալ զՅուգուրթ,
ած զնա 'ի վրան իւր, և խրատ ետ
նմա առանձինն. Մի՛ զսակաւուց
'ի հռովմայեցւոց՝ այլ զհասարա-
կաց խնդրել բարեկամութիւն, և
մի զոմանց կաշառակրծից. քան-
զի բազմավտանգ է գնել 'ի սա-
կաւուց՝ որ ինչ բազմաց է ։ Եւ
յաւել. Եթէ հաստատուն կաց-

ցես յառաքինութեան, տացին
քեզ փառք և թագաւորութիւն.
իսկ եթէ զհետ պնդիցիս, անկ-
ցիս ընդ ինչս քո դահավէժ:

Թ. Զայս այսպէս խօսեցեալ
ընդ նմա արձակէր զնա առ Մի-
կիպսա, տուեալ նմա գիր, որոյ
այս էր իմաստ. «Քաջինդ Յու-
գուրթ ՚ի Նումանտեան պատե-
րազմին մեծապէս առաքինացաւ.
ընդ որ գիտեմ իսկ զի ուրախ լի-
նիս. սիրելի է նա մեզ ըստ ար-
ժանեացն, բայց և ծերակուտին
և ժողովրդեան Հռովմայ սիրելի
զնա առնել գուն գործեսցուք:
Եւ քեզ իսկ ընդ մերոյ բարե-
կամութեանս խնդակից լինիմք,
զի ժառանգես զայրդ արժանա-
ւոր քեզ և հաւոյն իւրոյ Մասի-
նիսայ»:

Արդ իբրև ստուգեաց թագա-
ւորն ՚ի թղթոյ զօրավարին որ ինչ
լուեալն էր ՚ի համբաւոյ, յառա-
քինութենէ առնն մեծի և ՚ի շնոր-
հաց նորա յորդորեալ՝ ձեռն արկ
բարերարութեամբ յաղթել նմա.

և անդէն յիւր որդեգիրս զնա ըն-
կալեալ, հաւասար ընդ որդիս իւր
ժառանգ Թագաւորութե̃ն կա-
ցոյց կտակաւ: Եւ յետ ոչ բա-
զում ամաց տկարացեալ ծերու-
թեամբ և խօթութեամբ իբրև ե-
տես թէ մեռանիմ, յանդիման
բարեկամացն և ծանօթից և որ-
դւոց իւրոց Ադերբաղայ և
Հեմբսաղայ, որպէս պատմեն,
խօսեցաւ առ նա և ասէ.

Ժ. « Մանուկ զքեզ, ո՛ Յու-
գուրթ, որ 'ի հօրէ, անյոյս և ան-
տացուած, յարքայութիւն իմ
ընկալայ՝ ակն ունելով բարերա-
րութբ̃ս իմով սիրելի լինել քեզ
իբրև զհայր, և չխաբեցայ իսկ:
Զի զայլ ամենայն պանծալի ա-
րութիւնս քո թողեալ, 'ի դառ-
նալ քում 'ի մօտոյ 'ի պատերազ-
մէն Նումանտիոյ՝ զիս և զԹագա-
ւորութիւնս իմ փառօք պայծա-
ռացուցեր. քաջութեամբ քով
զբարեկամս մեր Հռովմայեցիս՝
մտերմագոյնս գործեցեր. 'ի Սպա-
նիա զհամբաւ ազգատոհմիդ նո-

րոգեցեր, և որ դժուարագոյնն
է 'ի մահկանացուս՝ փառօք յաղ-
թանակեցեր նախանձուն: Եւ
արդ քանզի բնութիւնն վախճան
առնէ կենացս, երդմնեցուցա-
նեմ զքեզ յաջս յայս և 'ի թա-
գաւորութիւն իմ, և աղաչեմ
զքեզ, զի զսոսա զտոհմակիցս քո
և բարերարութեամբս իմով եղ-
բարս՝ ընդ սիրելիս քո կալցիս,
և մի քան զարիւն քո զօտարս քեզ
նախամեծար ընտրեսցես: Ոչ զօ-
րաց խումբ, և ոչ գանձք պատըս-
պարանք են թագաւորութեան,
այլ բարեկամք՝ զորս ոչ զինուք է
ստանալ և ոչ գանձուք ժողովել,
այլ արդեամբք և հաւատարմու-
թեամբ: Եւ ո՞ արդեօք բարեկա-
մագոյն կայցէ եղբօր քան զեղ-
բայր. և զո՞ ոք յօտարաց հաւա-
տարիմ գտցես, եթէ քոյոցդ լի-
ցիս թշնամի: Թողում ձեզ թա-
գաւորութիւն հաստարմատ, ե-
թէ առաքինասջիք. իսկ եթէ ան-
պիտանք իցէք, թագաւորութիւն
խախուտ, զի միաբանութեամբ

աճեն փոքունք, և գժտութեամբ
տապալին հզօրք։ Այլ քեզ, Յու-
գուրթ, երիցագունիդ հասակաւ
և իմաստութեամբ, անկ է առա-
ւել քան զնոսա զգոյշ լինել, զի
մի յայսպիսեաց ինչ հանդիպես-
ցէ. զի յամենայն վէճս հզօրա-
գոյնն՝ թէպէտ և հարստահարի-
ցի, քանզի կարողագոյն է՝ թուի
հարստահարել։ Եւ դուք Ագեր-
բաղ և Հեմբաղ, մեծարեալ պա-
տուեցէք զայր այդպիսի, նմանող
լերուք առաքինութեանց նորա,
ջան դիք զի մի միայն յորդեգիրս
իմ, այլ և յորդիս բարեբաղ-
դատայց»։

ԺԱ. Իսկ Յուգուրթ թէպէտ
խելամուտ էր կեղծուպատիր բա-
նից թագաւորին և ինքն յայլ
միտս ամենեւին, սակայն 'ի ժա-
մուն քաղցրութեամբ արար պա-
տասխանի։ Եւ յետ աւուրց մե-
ռաւ Միկկիպսա. և արքայորդիքն
ըստ թագաւորական օրինի կա-
տարեալ մեծահանդէս զյուղար-
կաւորութիւն նորա, 'ի մի վայր

եկին ապա խորհել և կարգել յիւ-
րեանս զամենայն: Հեմբաղ կըր-
սերագոյնն 'ի Նոսա խորոխտ և
սէգ, որ և յառաջնմէ զվատազգի
մայրական տոհմն Յուգուրթայ
արհամարհէր, յաջակողմն Ադեր-
բաղայ բազմեցաւ, զի մի զմիջին
տեղին՝ որ առ Նումիդացիս 'ի պա-
տուի էր, կալցէ Յուգուրթ. այլ
ապա 'ի Թախանձանաց եղբօրն
ստիպեցաւ տեղի տալ երիցագոյն
հասակին, և անց յահեակ: Ըւ
իբրև բազում բանք լինէին զվար-
չութենէ տէրութեան, առաջար-
կեաց Յուգուրթ և զայն, զվեր-
ջին հնգամեայ սահմանադրու-
թիւնս և զհրովարտակս Միկիպ-
սայ իբր զառամելոյ հասակաւն
և միօք 'ի պառ նանրացուցանել:
Յայնժամ պատասխանի տուեալ
Հեմբաղ, ասէ. Քաջ է, համոյ
է և ինձ, զի զերեամ յառաջ որ-
դեգրեալ հասեր դու Թագաւո-
րութեան: Կարի 'ի խոր խոցեցաւ
ընդ այն Յուգուրթ, և 'ի ժամէ
անտի ցասմամբ և երկիւղիւ յու-

զեալ նիւթեր կազմեր զօրանս
ընդդէմ Հեմբաաղայ: Եւ 'ի յա-
մել ելից իւրացն ոչինչ ողոքեալ
վայրագ ոգին, գնէր հաստատու-
թեամբ 'ի մտի իւ և է հնարիւք 'ի
գլուխ հանել զխորհուրդն:

ԺԲ. Յառաջնում ժողովն անդ
արքայորդւոցն, զոր 'ի վեր անդր
ասացի, հաճոյ թուեցաւ վասն
գժտութեն բաժանել զգանձս, և
զսահմանս պետութեան որոշել
յիւրեանս: Եւ երկաքանչիւրոց
իւրացն սահմանեցին օր, այլ նախ
'ի բաժանումն գանձուցն. բայց
յաւուրան յայնմիկ արքայոր-
դիքն հուպ գանձուն կային զկայր
բնակութեան իւրեանց ուրոյն 'ի
միմեանց. Հեմբաաղայ դէպ եղև
'ի Թիրմիսա ամրոցին բնակել, 'ի
տան ուրումն 'ի մտերիմ և 'ի սի-
րելի Նուիրակաց Յուգուրթայ:
Արդ զոր դէպքն շնորհեցին նմա՝
զպաշտօնեայն մեծաւ խոստմամբ
հաւանեցուցանէր, և պատճա-
ռանօք իբր թէ 'ի տես տան իւ-
րոյ գնայր՝ փոխանորդս բանա-

լեաց դրանցն պատրաստել, զի
բուն բանալիքն առ Հեմբսաղայ
կային. և 'ի պահանջել այլ ազգ
ինչ հարկին, ինքնին խոստանայր
ծանու ձեռամբ գալ 'ի Թիկունս:
Վաղվաղակի կատարեաց Նումի-
դացին զհրամանն, և զի տեղեակ
վայրացն էր՝ եմոյծ զփշերայն 'ի
ներքս զզօրս Յուգուրթայ: Որոց
դրոհ տուեալ յապարանս անդր,
կէսք զարքայն խնդրէին, այլք՝
զորս 'ի քուն գտին և զորս 'ի զէն
աճապարեալ՝ կոտորէին. խիլ ար-
կեալ 'ի Թագստի վայրս որոնէին,
զդրունս տապալեալ և զծածուկ
վայրս կործանեալ 'ի շաչիւն ա-
ղաղակի և յամբոխ խռովութեան
զամենայն վեր 'ի վայր հարկա-
նէին, մինչև գտին զՀեմբսաղ Թա-
քուցեալ 'ի տաղաւար աղախնոյն,
ուր անդէն 'ի սկզբան ահաբե-
կեալ, և վայրացն անգէտ՝ դիմեալ
էր. և զգլուխ նորա առեալ ըստ
հրամանին բերին առ Յուգուրթ:

ԺԳ. Բայց համբաւ մեծի եղե-
ռանն ընդ բովանդակ Ափրիկէ ա-

րագ արագ տարածանէր, յահ և
յերկիւղ Ագերբաղայ և որոց
միանգամ հաւատարիմ տէրու-
թեան Միկկիպսայ լեալ էին: Երկ-
պառակեցան Նումիդացիք. մեծ
մասն եւ զհետ Ագերբաղայ, բայց
գոռ. մարտիկքն զկնի Յուգուր-
թայ: Աձապարեալ Յուգուրթ
զօրաժողով լինէր, զկէսս 'ի քա-
ղաքաց բռնութեամբ, զայլս կա-
մակար ընդ իւրև նուաճէր, և
պատրաստէր միահեծան ունել
զՆումիդիա: Ագերբաղայ դես-
պանս 'ի Հռովմ արձակեալ ազդ
առնել ծերակուտին զեղբօրն ըս-
պանութիւն և զիւր բաղդ, միան-
գամայն 'ի զէն պատրաստէր վըս-
տահացեալ 'ի բազմութիւն զօրաց
իւրոց: Այլ իբրև ձեռն արկին 'ի
պատերազմ, 'ի պարտութեն մա-
նեալ՝ խոյս ետ 'ի գաւառս հռով-
մէական պետութեան, և անտի
դիմեաց 'ի Հռովմ: Յայնժամ Յու-
գուրթ յետ 'ի գլուխ հանելոյ ըղ-
խորհուրդս մտացն և տիրելոյ բո-
վանդակ Նումիդիոյ, պարապ ա-

ռեալ և զեղեան ընդ միտ ածեալ, երկնչէր յերեսաց ժողովրդեան Հռովմայ, ոչ այլ ազգ յուսացեալ զերծանել 'ի ցասմանէ նորա, բայց ընչաքաղցութեամբ ազնուականացն և գանձուց իւրովք: Վասն որոյ յետ աւուրց տուեալ արծաթ բազում և ոսկի առաքէր 'ի ձեռն հրեշտակաց 'ի Հռովմ, հրաման տուեալ նախ զհին բարեկամս կշտապինդ լինել պարգևօք, և ապա նորոց լինել 'ի խընդիր. և ոչ ինչ միանգամ առատաձեռնութեամբ մարթիցի՝ մի խնայել: Իբրև հասին 'ի Հռովմ պատգամաւորքն ըստ հրամանի արքային՝ ասպնջականացն իւրեանց և որոց մեծ էր յայնժամ իշխանութիւն 'ի ծերակուտին՝ հարուստ պարգևս առաքեալ, այնպէս կերպարանափոխ զնոյն արարին, մինչև 'ի սաստիկ ատելութենէն 'ի շնորհս և 'ի սիրելութիւն ազնուականաց դառնալ Յուգուրթ: Յորոց կէսք յուսով, և այլք պատարագօք ընծայից յոր-

գորեալք դեգերէին 'ի դրունս
միոյ միոյ 'ի ծերակուտէն, գուն
գործեալ զի մի խիստ ինչ ընդդէմ
նորա տացի վճիռ: Արդ իբրև
յոյս առեալ վստահացան պատ-
գամաւորքն, որ սահմանեցաւ եր-
կաքանչիւրոց յանդիման լինելոյ
ծերակուտին: Եւ Ադերբաղ, որ-
պէս աւանդեն, խօսեցաւ յայն-
ժամ և ասէ.

ԺԴ. « Հարք համագրեալք. Մի-
կիպսա հայր իմ 'ի վախճանել իւ-
րում պատուէր ետ ինձ՝ Թագա-
ւորութեանս Նումիդիոյ տեսչու-
Թեամբ ևեթ իշխան կալ, իսկ զի-
րաւունս և զտէրութի՟ 'ի ձեզ առ-
նել ապաստան. զամենայն փոյթ
առնել 'ի խաղաղութե՟ և 'ի մար-
տի 'ի սպաս Ժողովրդեան Հռով-
մայ, և զձեզ ունել ինձ ազգակիցս
և նիզակակիցս. զի այսպէս լիցի
ինձ գտանել 'ի ձերումդ բարեկա-
մութեան և բանակս զօրաց, և ճո-
խութիւնս, և ամրութիւն գա-
հոյս: Եւ իբրև խոկայի 'ի պա-
տուէրս ծնողիս, Յուգուրթ է-

զեռնադործն քան զամենայն մար-
դիկ որ 'ի վերայ երկրի՝ արհա-
մարհեալ զիշխանութիւն ձեր, զիս
զթոռն Մասինիսայ և 'ի զաւակէ
դաշնակցացն և 'ի բարեկամաց ժո-
ղովրդեան Հռովմայ կապուտ կո-
ղոպուտ 'ի թագաւորութենէս և
յամենայնէ մերժեաց 'ի բաց: Իսկ
ինձ, հարք համագրեալք, յայն
աղէտս տարակուսանաց ցանկալի
էր քան զնախնեաց իմոց ծառայ-
ութիւն՝ զիմս մատուցանել ձեզ
առ 'ի խնդիր օգնականութեան
առ 'ի ձէնջ, և փոխանակ կարօ-
տելոյ այնմ՝ զժողովուրդ Հռով-
մայ ինձ պարտական կացուցանել,
և ըստ հարկի պիտոյից իբր 'ի յի-
րաւունս իմ վայելել 'ի բարերա-
րութիւնս նորա: Այլ զի և ա-
ռաքինութիւն ինքնին չէ անքոյթ,
և զի անդիտացայ թէ որպիսի ոք
էր Յուգուրթ, 'ի ձեզ կամ ա-
պաստան, ով հարք համագրեալք,
և վիշտ մեծ է ինձ, զի ստիպիմ
մինչև լեալ ձեզ պիտանի՝ բեռն
լինել ձեզ: Այլք 'ի թագաւորաց

'ի պատերազմի յաղթեալ ընդ բա-
րեկամս 'ի ձէնջ կարգեցան, կամ
'ի ձախողել իրաց 'ի նիզակակցու-
թիւն ձեր դիմեցին: Իսկ տուն հօր
իմոյ 'ի կալքեդոնեան պատե-
րազմի յաւելաւ 'ի նիզակակից
Ժողովրդեան Հռոմայ, յորում
ժամանակի հաւատարմութին նո-
րա քան թէ զօրութիւն ձգէր
զայլս 'ի խնդիր նիզակակցութեան
նորա: Արդ մի աղաչեմ, հարք
համագրեալք, զդաւակ նոցա մեր-
ժել յօգնականութենէ ձերմէ:
Զի եթէ չէին իսկ ինձ այլ իրա-
ւունք առ 'ի գտանել շնորհս 'ի
ձէնջ, բայց թշուառութիւն իմ,
որ փոքր մի յառաջ թագաւոր
հզօր՝ զարմիւ, համբաւով և բազ-
մութեամբ զօրաց, արդ այժմ ընկ-
ճեալ յաղէտից, չքաւոր և օտա-
րին ընչից կարօտ գտանիմ, սա-
կայն և այնպէս արժան էր մեծու-
թե Ժողովրդեան Հռոմայ խա-
փանել զանիրաւութիւն և չթո-
ղուլ ումեք եղեռամբք զպետու-
թիւն իւր ընդարձակել: Իսկ ես

մերժեալ կամ 'ի սահմանաց,
զորս ժողովուրդ Հռովմայ նախ-
նեացն իմոց շնորհեաց, ուստի
հայր իմ և հաւ միաբանութեամբ
ընդ ձեզ հալածեցին զՍիփակ և
և զկարքեդոնացիս։ Ցափշտակե-
ցան պարգևք ձեր, հարք համա-
գրեալք. 'ի զրկանս իմ դուք ինք-
նին թշնամանեալ դտանիք։ Այ-
եղուկ եմ ես. ո՞ւր, հայր իմ Մի-
կիպսա, ո՞ւր հասին երախտիք քո.
զի զոր դու ընդ որդիսդ ժառանգ
թագաւորութե՛ կացուցեր, նա
ինքն մեծազօր զարմից քանդիչ և
ապականարար դտանի։ Մի՛թէ
չվայելեացէ երբէք տոհմս մեր 'ի
խաղաղութեան, միթէ յարեա՞ն
միշտ, 'ի սուր և 'ի փախստի պարտ
իցէ մեզ կեալ։ Մինչ կանգուն
կայր Կարքեդոն, իրաւամբք զդը-
ժընդակն կրէաք, թշնամիք առ
կողս, դուք բարեկամք հեռի, ա-
մենայն ակնկալութիւն 'ի զէնս
էր։ Ցետ անկանելոյ ժանտին յԱ-
փրիկէ՝ զուարթք 'ի խաղաղութե՛
վայելէաք, զի չէր ոք թշնամի,

բայց ընդ որում դուք հրամայէիք
մարմնչել: Այլ ահա յեղակար֊
ծուց ամբարձեալ Յուդուրթ, ժը֊
պիրհ յանդգնութք, վէս և եղեռ֊
նաւոր, զեղբայրն իմ զիւր մերձա֊
ւոր խողխողեալ, 'ի պարգև եղե֊
ռանցն յափշտակեաց նախ զնո֊
րայն թագաւորութն. և ապա իբ֊
րև չկարաց և զիս նովին անօրէնու֊
թք ըմբռնել 'ի ծուղակ, որ ոչն
երբէք բռնութն 'ի նմանէ և պա֊
տերազմի մնայի, 'ի տէրութիւն
ձեր, որպէս տեսանէքդ, կացոյց
զիս տարագիր 'ի հայրենեաց և
յընտանեաց, կարօտ և լի թշուա֊
ռութք. որպէս զի ապահովա֊
գոյն ամենայն ուրեք քան 'ի թա֊
գաւորութեան իմում կայցեմ:
Ես այսպէս համարէի, ո՛ հարք
համագրեալք, լուեալ յաճախ 'ի
հօրէ իմմէ, զի որք ձերումդ բարե֊
կամութեան ցանկան, թէ և բա֊
զումս վտանգին, այլ յանքոյթ
աներկեանութն վայելեն: Ազգա֊
տոհմս մեր որչափ 'ի կարի իւրում
էր, Ջգնեցաւ յամենայն պատե֊

բազմունս ձեր մարտակից լինել.
և արդ 'ի ժամանակի խաղաղութե՟
ապահովութե՟ նորա 'ի ձեռս ձեր
է, հարք համագրեալք: Հայրն
մեր զմեզ զերկուս եղբարս եթող,
և երրորդ զՅուդուրթ բարերա-
րեալ կացոյց մեզ կցորդ. մին 'ի
մէնջ սպանաւ, և երկրորդս ես
հազիւ ճողոպրեցայ 'ի ձեռաց ան-
օրինին: Զի՞նչ գործեցից, ո՞վ
թշուառս և ամենաթշուառ զի-
մեցից. սատարք օգնականութեան
առհմայնոցս չիջան առ հասա-
րակ: Հայր իմ ասելի եմ անհրա-
ժեշտ օրինաց բնութեան, եղ-
բայրն իմ անօրինաբար սպանաւ 'ի
մերձաւորէն՝ որում չէր իսկ և չէր
վայել, ազգակիցք, բարեկամք,
ծանօթք և մերձաւորք զանազան
մահուամբ չարատանջ կորեան.
զի ձերբակալք 'ի Յուդուրթայ
կէսք խաչաչարչար, այլք գազա-
նաբեկ և գազանակուր կորեան.
և սակաւք ոմանք կենդանի թո-
ղեալ խաւարարգել՝ չարագոյն
քան զմահ 'ի սուգ և 'ի տրտմու-

թեան զկեանս մաշէն ։ Եթէ չէր
իսկ կորուսեալ՝ որ ինչ միանգամ
կորուսի, և չէր իսկ գործեալ՝ որ
ինչ 'ի բարեկամաց հակառակ ինձ
գործեցան, և այլ ինչ արկածք
յեղակարծ պատահէին, սակայն
առ ձեզ դիմէի, ո՛ հարք համա_
գրեալք, որոց անկ է առ մեծա_
զօր պետութեան վրէժխնդիր կալ
իրաւանց և արդարութեան ։ Եւ
արդ տարագրեալ 'ի հայրենեաց
և 'ի տանէս, միայնակ և պատշա_
ճից ամենայնի կարօտ, յո՞ այլ ա_
պաւինեցայց և զո՞ կարդացից յօգ_
նականութիւն. զժողովո՞ւրդս ար_
դեօք կամ զԹագաւորս, որ առ
հասարակ ոխերիմք տոհմիս մերոյ
են՝ վասն սորա ընդ ձեզ բարե_
կամութեանն. յո՞ մարթիցիմ դի_
մել՝ ուր չիցեն նախնեացն իմոց
խիտ առ խիտ ախոյեանք յաղթու_
թէ. կամ ո՞ 'ի վերայ մեր գթա_
ցի, որոյ երբեմն լեալ իցէ ձեզ
թշնամի ։ Եւ զի՞ երկարեմ, ո՛ հարք
համագրեալք. այսպէս պատուի_
րեաց մեզ Մասինիսա չմեծարել

զայլոյ ուրուք բարեկամութիւն բաց 'ի ժողովրդենէ Հռովմայ, մի դաշինս ընդ ումեք կռել, և մի զնիզակակցութիւն ուրուք ըն- դունել, զի լիուլի օգնականութի՟ 'ի բարեկամութեան ձերում լիցի մեզ. և եթէ երբէք չողջեսցի բաղդ- պետութեանդ, ընդ նմին և մեզ լիցի կորնչել: Առաքինութեամբ և գիցն կամօք մեծ էք և հզօր, ա- մենայն ինչ յաջողէ ձեզ, ամենայն ինչ տեղի տայ, և դիւրագոյն 'ի թիկունս կարէք հասանել հարըս- տահարելոց նիզակակցաց: Այլ ընդ այն խիթամ, թէ գուցէ բա- րեկամութիւն Յուգուրթայ ընդ ոմանս, որք ոչ քաջ ճանաչեն զնա՝ հակառակս կացուսցէ զնո- սա. քանզի լսեմ զի մեծաճիգն ջան դնեն, շուրջ գան, աշխատ առնեն զմի մի 'ի ձէնջ, թէ գուցէ ընդդէմ հեռաւորին մինչև ըզ- պատճառս նորա լսեալ՝ սահմա- նիցէք ինչ, և թէ պատրանք իցեն բանք իմ և փախուստ իմ կեղծ, և մարթ իսկ էր կալ մնալ ինձ 'ի

թագաւորութե̃ : Իցի՛ւ թէ զնա ,
որոյ անօրէն եղեռամբքն յայս ա֊
ղէտս անկեալ կամ, լինէր ինձ
տեսանել աստ 'ի նոյն կերպիս ,
և լինէր ձեզ երբեմն կամ դիցն
անմահից զմարդկայնոց իրաց ու֊
նել խնամ. որպէս զի որ արդ ա֊
նօրէնութեամբն իւրով յանդու֊
գըն պերճանայ մատնեալ յամե֊
նայն չարիս՝ զամբարշտութեանն
իւրոյ ընդդէմ հօր մերոյ, զեղբօրն
իմոյ սպանութեան, և զիմոցս ա֊
ղէտից լուծցէ զծանր վրէժ : Եւ
արդ իսկ, եղբայր իմ սիրով սի֊
րեցեալ, թէպէտ և տարաժամ և
յուսմէ չէրն արժան բռնամահ
կորեար , սակայն խնդութեան
քան ցաւոց արժանի համարիմ
զարկածս քոյին. զի ոչ թագա֊
ւորութիւն միայն, այլ և վտարան֊
դի փախուստ, անանկութիւն և
որ այլ ինչ հոյլք չարեաց ընկճեն
զիս՝ ընդ կենաց քոց բարձան 'ի
քէն : Իսկ ես հէքս մերժեալ 'ի
հայրենի գահոյից և յայս աղէտս
գահավիժեալ՝ զմարդկայնոց ի֊

բաց փոփոխութեան ընծայեմ տեսարան։ Տարակուսեալ կամ թէ զինչ գործել իցէ ինձ, ըղ-քո՞յդ խնդրել զվրէժ արեան՝ մինչ կարօտիմս եւ օգնականութեան, թէ խորհել զթագաւորութենէ անձին, մինչ կենացս և մահու իշխանութիւն 'ի զօրութէ՟ այլոց կախեալ կայ։ Ո՞ւր էր թէ մահն իմ՝ դժնդակ բաղդիս վախճան առնէր փառօք, և ոչ կենդանութիւն ինձ 'ի նախատինս լինէր՝ եթէ երբէք պարտասեալ 'ի չարեաց լիցի ինձ տեղի տալ անիրաւութե՟ն։ Ոչ կեալ օրէն է ինձ, և ոչ իսկ մեռանել առանց նախատանաց։ Հարք համագրեալք, առ ձեզ պաղատիմ, վասն կենաց ձերոց, վասն որդւոց, վասն ծնողաց և վասն մեծափառ անուան ժողովրդեան Հռովմայ ձեռնտուք թշուառիս, կացէք ընդդէմ անիրաւութեան. և մի հանդուրժէք տէրութե՟ն Նումիդիոյ՝ որ ձերդ է, եղեռամբք և արեամբք տոհմիս մերոյ շաղախել »։

ԺԵ. Եւ իբրեւ լուաւ Թագաւորն, պատգամաւորք Ցուգուրթայ յառատաբաշխ տուրսն քան զխրատունս յեցեալ՝ սուղ բանիւք արարին պատասխանի, թէ «Հեմբսաղ վասն բանաւորութեանն սպանաւ ՚ի Նումիդացւոց, եւ Ադերբաղ դրդեալ պատերազմ եւ ՚ի պարտութիւն մատնեալ, բողոքէ՝ զի չկարաց անիրաւել. եւ թէ Ցուգուրթայ աղաչանք այս են ՚ի ծերակուտէն, մի այլ ազգ ինչ զնա համարել քան զոր ծանեանն ՚ի Նումանտիա, եւ մի զբան թշնամւոյն քան զգործս իւր մեծարել»։ Եւ ելին ՚ի բաց երկաքանչիւր ՚ի ծերակուտէն: Անդէն ծերակոյտն խորհուրդ ՚ի մէջ առնոյր, կուսակիցք դեսպանացն եւ բազումք յատենէն կաշառակուրծք՝ արհամարհէին զբանս Ադերբաղայ, եւ զՑուգուրթայ զարութիւն պանծացուցանէին գովութ͞բ, եւ շնորհիւն իւրեանց առաջի ժողովրդեան, եւ զօրութեամբ բանից եւ ամենայն հնարիւք ջանային ՚ի յա-

ջողութիւն օտարին եղեռնաւոր անօրէնութեան իբրև իւրեանցն փառաց։ Սոցին հակառակ նուա-զունք ոմանք՝ որոց սիրելի քան զգանձս էր բարին և արդարն, պարտ համարէին ձեռն տալ Ա-դերբաղայ, և խօսիւ վրէժխնդիր լինել մահուն Հեմբսաղայ։ Այլ քան զամենեսին զնոսա երևելի էր Եմիլիոս Սկաւրոս այր ազնուա-կան, գործօն, անխաղաղասէր, իշխանութեան, պատուոյ և ճո-խութեան գանձուց ցանկացող, և որ ճարտար գիտէր ծածկել զյո-ռութիւնս։ Սորա տեսեալ զժը-պիրհ և զնշաւակ առատաձեռ-նութիւն Թագաւորին, և երկու-ցեալ թէ գուցէ 'ի զեղծանելն ա-զատութեամբ՝ լիցի ատելի, որ-պէս յաճախ պատահէ, յընդելա-կան ագահութէն ժուժկալեաց։

ԺԶ. Սակայն յաղթող գտաւ մասն ծերակուտին՝ որ զարդա-րութին ընդ կաշառոյ և ընդ շնոր-հի փոխանակեաց. և հրաման եղև զի դեսպանք տասն լարաբաժին

արտացէն զթագաւորութիւն Մի֊
կիպսայ ընդ Յուգուրթ և ընդ Ա֊
դերբաղ: Իշխան եկաց դեսպա֊
նութեանն Ղ. Ոպիմիոս, այր ա֊
նուանի և 'ի ծերակուտին հզօր
յայնժամ, զի 'ի հիւպատոսն իւ֊
րում սպանմամբ Կ. Գրակքոսի
և Մ. Փուլուիոսի Փլակկեայ զյաղ֊
թութիւն ազնուականողման խասխ
վարեալ էր 'ի վերայ ռամկին: Թէ֊
պէտ զսա անդստին 'ի Հռովմայ
ընդ բարեկամս իւր ունէր Յու֊
գուրթ, սակայն գործեալ ամե֊
նայն մեծարանօք ընկալաւ, և ա֊
ռատապէս պարգևօք և խոստմամբ
կուրացուցանէր զայրն նուիրել
իւրումն հաճոյից զհամբաւ, ըզ֊
հաւատարմութիւն և զամենայն
ինչ իւր: Եւ այլոց դեսպանաց
նովին հնարիւք մատուցեալ 'ի
փորձ, զբազումս պատրեաց. սա֊
կաւք միայն 'ի նոցանէ սիրեցին
զհաւատարմութն քան զարծաթ
կորստական: Ի բաժինս անդ՝ մասն
աշխարհին Նումիդիոյ, որ սահ֊
մանակիցն էր մաւրիտանացւոց և

գիւղօրէիւք և մարդկութեամբ ճոխագոյն՝ տուեալ Յուգուրթայ. իսկ միւս մասն որ վեր 'ի վերոյ և ոչ իսկապէս առաւելութեամբն ճոխանայր, որ նաւահանգստօք ևեթ և շինուածովք երևելին էր՝ տուաւ Ադերբաղայ:

ԺԷ. Հարկ թուի ինձ աստ ըստ առաջարկութեանս պայմանի՝ ըն- տրագրել սակաւուք զդիրս Ափ- րիկեայ, և թէ ոյք յազգաց բա- րեկամք եղեն մեր անդ և ոյք թշնամիք. իսկ զվայրաց և զազ- գաց, ուր առ կարի ջերմութեան և առ գազանաբարոյ վայրագու- թե, և դարձեալ վասն անապատ ամայութեան ոչ յաճախեն ան- ցաւորք, իբրև զժուարին՝ լից- ինձ ասել ինչ հաւաստեաւ, զայ- լոցն սակաւուք ասացից:

Ի բաժինս երկրի բազումք յերրորդում մասին եդին զԱփ- րիկէ. ոմանք զԱսիա միայն և զԵւրոպա համարեալ 'ի մասունս՝ զԱփրիկէ յԵւրոպայն յաւելին: Սահմանք նորա են յարևմտից

կիրճն՝ որ զմերս ծով կցորդէ
ընդ Ովկիանու. յարևելից հրուան֊
դանն՝ զոր բնակք Կատաբաթ֊
մոն ասեն: Մրրկալից է ծովս այն
և աննաւահանգիստ. հող երկ֊
րին արգասաբեր, ճահաւոր յա֊
րօտ խաշանց, և ոչ դիւրոց 'ի ծա֊
ռատունկ, վասն օդոցն, երկրին
և ջուրցն նուազութեան: Ազգ
մարդկան քաջառողջ, երագըն֊
թաց, տոկ 'ի վաստակս, որք գրե֊
թէ սա ծերութեան լուծանին 'ի
կենաց, բաց 'ի գազանաբեկ և սը֊
րամահ կորուսելոցն, քանզի գուն
ուրեք յախտից ոք ընկճեալ թէ
մեռանի. բայց բազում ազգի ազ֊
գի գազանք են անդ վնասա֊
կարք: Այլ թէ ոյք 'ի ծովեզեր֊
դոյ նախկին բնակք եղեն Ափրի֊
կոյ, և ոյք եկք յետոյ և կամ որ֊
պէս ազգախառնեալ 'ի մի, թէ֊
պէտ զրոյցք զայնցանէ զանազանք
աւանդին, սակայն որպէս թարգ֊
մանեցաւ մեզ 'ի փիւնիկեցի մա֊
տենից՝ որ 'ի Հեմբսաղայ արքայէ
ասին գրեալ, և որպէս բնակք

երկրին հաւաստեն՝ սակաւուք պատմեցից : Այլ զհաւաստարմութիւն պատմելոյս 'ի մատենագիրս անդր առնեմ ապաստան :

ԺԲ. Նախնի բնակիչք Ափրիկեայ էին գետուղացիք և լիբէացիք՝ ազգք վայրագ և բիրտ, որոց կերակուր որսք երէոց և բանջար երկրի հանգոյն անասնոց : Ոչ կարգ վարչութեան էր առ նոսա, ոչ օրէնք ինչ և ոչ իշխանութիւն. Թափառականք շրջէին, և ուր գիշեր 'ի վերայ հասանէր՝ անդ օթէին : Այլ 'ի մեռանել Հերակլի 'ի Սպանիա, որպէս ափրիկեցիքն պատմեն, անզօրավար մնացեալ բանակ նորա՝ որ խմբեալ էր 'ի բազում ազգաց, վարատեալ ցրուեցաւ վասն բազմաց անկարգս իմն և խառն 'ի խուռն զայնր իշխանութեան թեկն ածելոյ : Իսացանէ Մարք, Պարսք և Հայք նաւեալ յԱփրիկէ, զմերձակայ գաւառս մերոյ ծովուս կալան : Բայց Պարսք մերձ ևս առ Ովկիանու բնակեալ՝ զգոգս նաւուց

վեր 'ի վայր շրջեալ՝ փոխանակ տաղաւարացն վարելին. զի ոչ փայտ և ոչ նիւթ 'ի գաւառս անդ գըտանէր, և ոչ տուրևառ ընդ ըսպանիացիս՝ խորոցաւ ծովուն մեծի, և անգէտ գոլով նոցա բարբառոյ աշխարհին: Սոքա տակաւ ամուսնութե̃ ազգախառնեալ ընդ գետուղացիս, և զի յաճախ 'ի խնդիր լաւագունից վայրաց տատանգականք շրջէին, վասն որոյ և նումիդացիս զինքեանս կոչեցին: Եւ ցարդ հիւղք դեղջկաց նումիդացւոց, զոր նոքա Մափալս կոչեն, երկայնաձև և կորնթարդ երկուստեք յարկեալ՝ ըղգոգոյ նաւաց բերեն զնմանութիւն: Իսկ Մարք և Հայք յաւելեալ 'ի լիբէացիս, (զի սոքա 'ի ծովափնեայս անդ Աֆրիկեայ թափառէին, և գետուղացիք առաւել ևս ընդ արեգակամբ ոչ հեռի 'ի հասարակածէն), վաղ ընդ փոյթ կանգնեցին քաղաքս. քանզի կրճիւ նեղ ծովու անջրպետեալք 'ի Սպանիոյ, 'ի տուր-

եառս վաճառուց սկսան ընդ-
նոսա պարապել: Զորոց տա-
կաւ լիբէացիք աղաւաղեալ զա-
նուանս 'ի խուժ բարբառ իւ-
րեանց, զՄարս 'ի Մաւրիս փոխե-
ցին: Իսկ Պարսիցն յաջողեցին իբր
'ի սակաւ ժամանակի. որոց ապա
'ի բազմանալն զատուցեալ 'ի հայ-
րենի ժողովրդենէն՝ Նումիդացի
անուամբ կալան զգաւառն մերձ
'ի Կարքեդոն, որ կոչի Նումիդիա:
Այս երկոքին ժողովուրդքն հին
և նոր գաղթականք զօրացեալ ի-
րերօք, զինու և երկիւղիւ նուա-
ճեցին զդրացի ազինս, և յաւելին
իւրեանց անուն և փառս, մա-
նաւանդ որք յեզերս անդր մերոյ
ծովուն յառաջ խաղային, զի լի-
բէացիք չէին իբրև զգետուղացիս
ազգ պատերազմող: Եւ իբրև տի-
րապետեցին Նումիդացիք սո-
րին Ափրիկոյ գրեթէ առ հասա-
րակ, պարտեալքն համօրէն ընդ
յաղթականս խառնեալ և զանուն
նոցա ընկալան:

ԺԹ. Յետ այնորիկ և փիւնի-

կեցիք՝ կէսք առ Թեթեւաբեռնե-
լոյ զքաղաքս 'ի բազմութէ մարդ-
կան, այլք ցանկութբ աշխարհա-
կալութե յորդորեցին զխառնի-
ճաղանճն եւ զախրողս նորութեց,
եւ գաղթականութեամբ զՀիպպո-
նա, զԱնդրոմետոն, զԼեպտիս եւ
զայլ քաղաքս 'ի ծովափունս անդ
կանգնեցին. եւ սոքա հուպ ընդ
հուպ զօրացեալ, կէսք զօրավիգն
եւ այլք 'ի պարծանս եղեն այնո-
ցիկ՝ յորոց գաղթեցանն: Զկար-
քեդոնէ լսել ախորժեմ քան հա-
մառօտիւ անցանել, ուր յայլ ինչ
փութալ յորդորէ զիս բանս: Ընդ-
մերձ առ Կատաբաթմոն՝ որ զԵ-
գիպտոս յԱփրիկոյ բաժանէ,
առաջին քաղաք յեզս ծովուն է
Կիւրինէ հաստուած 'ի Թերէոնէ,
ապա երկոքին աւազուտք եւ 'ի մի-
ջի Լեպտիս, եւ ապա փիղենեան
բագինք՝ սահմանք պետութեանն
Կարքեդոնի 'ի կողմանէ Եգիպ-
տոսի. եւ յետ այսոցիկ փիւնիկեան
քաղաքք: Իսկ այլ գաւառք մին-
չեւ 'ի Մաւրիտանիա ընդ ձեռամբ

են Նումիդացւոց, և են մերձ աշ-
խարհին սպանիացւոց մաւրիտա-
նացիք ։ Ի վերնադաւառս Նումի-
դիոյ գետուղացւոց ասեն բնակել,
կեսք հիւղաբնակք, և այլք հե-
ւագոյնս ևս 'ի քաղաքականութե՟
աստանդականք. և յետ սոցա ե-
թովպացիք. և անդր քան զսոսա
այրեցականքն անուանեալ արևա-
կեզ վայրք ։

Արդ 'ի յուգուրթեան պատե-
րազմին, զբազումս 'ի փիւնիկեան
քաղաքաց, և զսահմանս զորս
այն ինչ կալեալ էին կարքեդո-
նացիք, ժողովուրդ Հռովմայ 'ի
ձեռն ատենակալաց ուղղէր. իսկ
մեծ մասն գետուղացւոց աշխար-
հին և Նումիդիա մինչև ցգետն
Մուլուքա ընդ տէրութեամբ էր
Յուգուրթայ ։ Մաւրիտանացւոց
միապետէր Բոկքոս, որ զանուն
ևեթ հռովմայեցւոց լուեալ գի-
տէր, և ոչ 'ի պատերազմունս և ոչ
'ի խաղաղութե՟ ծանօթ էր մեզ ։
ԶԱփրիկեայ և զբնակչաց նորին
շատ իսկ ցայս վայր ըստ հարկի ի-
րացս ասացաւ ։

Ի. Եւ յետ բաժանելոյ զտէ-
րութիւնն՝ եղեալ մեկնեցան պատ-
գամաւորքն յԱփրիկէոյ. և Յու-
գուրթ ընդդէմ երկիւղի կասկա-
ծանացն փարձս ընդ եղեռանցն
ընկալեալ, աներկբայ այնուհետև
հաստատեցաւ՝ յոր ինչ 'ի Նու-
մանտիա լուեալն էր 'ի բարեկա-
մաց՝ զի ամենայն ինչ արծաթոյ
վաճառի 'ի Հռովմ. և խրախու-
սեալ 'ի խոստմանց նոցա՝ զորս
փոքր մի յառաջ յղփացուցեալն
էր պարգևօք, 'ի Թագաւորութեն
Ադերբաղայ աշարձակ լինէր: Յու-
գուրթ էր այր բուռն և գոռ պա-
տերազմող. իսկ Ադերբաղ յորոյ
վերայ դիմէրն՝ այր խաղաղասէր,
տկար, հեզահամբոյր, համբերող
զրկանաց, երկչոտ քան ահընկէց:
Արդ յանկարծակի յեղակարծուց
խուժեալ բազմաձեռն գնդաւ 'ի
սահմանս Թագաւորութեան նո-
րա, էառ աւար բազում զմարդ
և զանասուն, հրձիգ արար զշէնս,
և Թշնամաբար ասպատակեաց հե-
ծելովք 'ի յոլով տեղիս: Եւ բազ-

մութեամբ գարձարար 'ի թագա-
ւորութիւն իւր, 'ի մտի եդեալ 'ի
դիմել Ադերբաղայ ցասմամբ 'ի
վրէժ անիրաւութեանն զինուք,
զայն պատճառս առնուլ պա-
տերազմի: Այլ նորա գիտելով
զիւր տկարութիւն, և քան 'ի նու-
միդացիսն՝ 'ի բարեկամութի ժո-
ղովրդեան Հռովմայ վստահա-
ցեալ, պատգամաւորս առ Յու-
գուրթ 'ի բողոք անիրաւութեն
արձակեաց, որք թէպէտ բանս
նախատականս բերին 'ի պատաս-
խանի, այլ նա քանզի զփորձ ա-
ռեալ էր միանգամ զինուց, եւ 'ի
մտի ամենայնի հանդուրժել քան
'ի մարտ պատերազմի ձեռնարկել:
Սակայն ոչ նուաղէր այսու տենչ
Յուգուրթայ, որոյ վաղ իսկ 'ի
սրտէ բոլորումն նորա թագաւո-
րութեն տիրապետեալ էր: Վասն
այսորիկ ոչ իբրև զառաջինն աս-
պատակաւորօք հինաբար արշա-
ւէր, այլ զօրու ծանու ձեռն 'ի
գործ առնէր 'ի մարտ և 'ի միա-
հեծան տիրապետութիւն Նումի-

դիոյ։ Եւ ընդ որ և արշաւէր զքա-
ղաքս և զգիւղս յաղարտ վարէր և
աւար հարկանէր՝ խռախոյս յիւր-
ոյն և 'ի Թշնամիս ահ երկիւղի
յաւելեալ։

ԻԱ. Իբրև ետես Ադերբաղ զի
հարկ էր կամ Թողուլ 'ի բաց ըզ-
Թագաւորութիւն և կամ պահել
զայն զինուք, ստիպեցաւ զօրա-
ժողով լինել, խաղալ ընդդէմ
Յուգուրթայ։ Ոչինչ հեռի 'ի ծո-
վէ մերձ 'ի քաղաքն Կիրտայ դա-
դարեցին բանակքն երկաքանչիւր,
և զի 'ի տարաժամել էր օրն, ոչ
արկին ձեռն 'ի պատերազմ։ Եւ
գիշերախառն չև այգուն զառա-
ւօտն մերկացեալ, գունդն յու-
գուրթեան փող եհար, անկաւ 'ի
բանակ Թշնամւոյն, զկէսս դեռ
'ի քուն, զայլս մինչ շտապէին 'ի
զէն՝ եհար 'ի փախուստ դարձոյց։
Ադերբաղ սակաւուք ոմամբք հե-
ծելովք խոյս ետ 'ի Կիրտա. և եթէ
հռովմայեցի զօրականին չէր սա-
ըեցուցեալ զնա 'ի հետամտիցն
Նումիդացւոց, առ օրին սկիզբն և

վախճան լինէր պատերազմին 'ի մէջ երկուց Թագաւորաց։ Նստաւ Յուգուրթ զքաղաքաւն, և աճապարէր մանգղիոնօք, աշտարակօք և ազգի ազգի մեքենայիւք յարձակեալ առնուլ զքաղաքն յառաջ քան զհասանել դեսպանացն, զորս Ադերբաղայ կանխեալ նախ քան զպատերազմն արձակեալ էր 'ի Հռովմ։ Այլ իբրև լուաւ ծերակոյտն զպատերազմ նոցա, արձակեաց հրեշտակութբ պատանեակս երիս առ Թագաւորս ծանուցանել 'ի դիմաց ծերակուտին և ժողովրդեան Հռովմայ, 'ի բաց Թողուլ նոցա զզէնս՝ մի մարտիւ պատերազմի՝ այլ իրաւախոհութեամբ վախճան առնել դժտութեանցն՝ անձանց և նոցա արժանի։

ԻԲ. Փութացեալ դեսպանացն հասին յԱփրիկէ, տուեալ ևս ճեպեալ 'ի լուր պատերազմին և պաշարմանն Կիրտայ, որ մինչև յուղի անկեալ նոցա 'ի Հռովմայ լսելի եղև, Թէպէտ և նուաղագոյն

քան զիւրն էր համբաւն ։ Յու-
գուրթայ ընկալեալ զպատգամս
դեսպանացն արար պատասխանի.
«Չիք ինչ մեծ և սիրելի յաչս իմ
քան զծերակուտին իշխանութի,
և ՚ի մանկութենէ հետէ ջանա-
ցեալ եմ գովութեանց լաւորե-
րոյ արժանի գտանել, արութք և
ոչ խորամանկ նենգութք շնորհս
գտի առաջի Պ. Սկիպիոնի առնն
մեծի, և նորին աղագաւ ոչ առ-
՚ի չգոյէ որդւոց ՚ի Միկիպսայ ՚ի
թագաւորութիւն կոչեցայ ։ Այլ
որչափ յաւելի բաղում և մեծա-
մեծ արութիւնս գործել, այնչափ
անհանդուրժելի եղեն ինձ անի-
րաւութիւնք ։ Ադերբաղ նենգու-
թեամբ զարանի կենացս, որում
իրազեկ լեալ, կանխեցի զառաջս
առնուլ եղեռանն ։ Անիրաւի մե-
ծապէս ժողովուրդ Հռովմայ,
յարգելուլ զիս յիրաւանց ազ-
գաց ։ Բաւ է. վասն այսր ամե-
նայնի առաքեցից ընդ հուպ դես-
պանս ՚ի Հռովմ»։ Եւ այսպէս բա-
ժանեցան ՚ի միմեանց, ոչ լեալ պա-

րապ բողոք ունել Ադերբաղայ ։

ԻԳ. Իսկ Յուգուրթ իբրև համարեցաւ ելեալ զնոսա յաշխարհէն, և զի չկարէր առնուլ զԿիրտա պատերազմաւ վասն ամրութեան վայրացն 'ի բնէ, խրամս և փոսս շուրջ հատանէր, աշտարակս կանգնէր ամրացուցեալ ըզնոսա զօրօք, և զտիւ և զգիշեր բանութեամբ և նենգանօք փորձ փորձէր. մերթ խոստմամբ և մերթ սպառնալեօք զամրականսն յորդորէր, և մերթ զիւրան յարութ̄ն քաջութեան խրախուսէր, և մեծաւ զգուշութեամբ պատրաստէր զամենայն ։ Ադերբաղ 'ի մեծի վտանգին՝ տեսանելով զթշնամին ոխերիմ յամառեալ, օգնականութեան ակնկալութիւն ոչ ուստեք, և առ 'ի չգոյէ կարևորաց անհնար ժուժկալել պատերազմին, 'ի փախստականացն ամրացելոց ընդ իւր 'ի Կիրտա ընտրեաց արս երկու քաջապինդս, և բազում խոստմամբք, և զողորմ բաղդ իւր առաջի առնելով՝ խրախու-

սեաց զնոսա դիմագրաւ անցանել
՚ի գիշերի ընդ ամրութիս թշնա-
մւոյն մինչև ցափն մերձակայ ծո-
վուն և անտի հասանել ՚ի Հռովմ։

ԻԴ. Նումիդացիք ՚ի սակաւ
աւուրս ՚ի գլուխ տարան զհրա-
մանն. և ընթերցաւ ՚ի ծերակու-
տին թուղթ Ադերբաղայ, որ էր
օրինակ զայս.

«Մի համարիք ինձ ՚ի յանցանս
զի ստէպ աղերս արկանեմ ձեզ,
հարք համագրեալք, զի բանու-
թիւն Յուգուրթայ ստիպէ զիս.
տենչ արիւնախանձ առ ՚ի բառ-
նալ զկեանս իմ մղէ զնա, ոչ ՚ի
ձէնջ և ոչ ՚ի դիցն անմահից ակն
ածէ. զարիւն իմ խնդրէ նա, և ոչ
այլ ինչ։ Հինգ ամիսք են յորմէ հե-
տէ նիզակակից և բարեկամ ժո-
ղովրդեան Հռովմայ պաշարեալ
կամ ՚ի զինուց. ոչ Միկիպսայ հօր
իմոյ երախտիք և ոչ ձերդ վճիռ
օգնեն ինչ։ Ի սրոյ արդեօք թէ ՚ի
սովոյ առաւել նեղեալ տագնա-
պիցիմ, ոչ գիտեմ։ Բազումս ընդ
Յուգուրթայ գրել արգելուն զիս

աղէտք՝ յորում կամս , վաղ իսկ
զփորձառեալ զի Թշուառաց չըն-
ծայլին հաւատք : Եւ սակայն 'ի
միտ առնում զի ձգտի նա 'ի վերոյ
քան զիս ակն կալեալ Թագաւո-
րութեանս իմում և ձերումդ բա-
րեկամութեան . և 'ի ծանրագոյն
ևս ինչ մտաբերել նորին չէ ինչ
զանխուլ յումեքէ: Քանզի 'ի սկըզ-
բան զեղբայրն իմ եսպան զՋեմբ-
սադ , ապա զիս 'ի հայրենի գա-
հոյիցս մերժեաց . ապաքէն առ
մեզ անիրաւէր և ոչ առ ձեզ . այլ
արդ աշխարհակալէ 'ի ձեր Թա-
գաւորութեանդ , և զիս զոր կացու-
ցէքդ իշխան Նումիդիոյ՝ պաշա-
րեալ փակէ . և որչափ ինչ բանք
պատգամաւորացն զօրեցին , ըղ-
տագնապ վտանգիս յայտ առնեն :
Եւ զի՞նչ այլ բաց 'ի զօրութէ ձեր-
մէ շարժել կարիցէ : Իցի՞ւ Թէ զոր
գրեմս և զոր բողոքեցի 'ի ծերա-
կուտին տարապարտք իցեն , և մի
աղէտք իմ տացեն զհաւատս
բանիցս : Այլ արդ զի 'ի նշաւակ
անօրէնութեց Յուգուրթայ եմ

ծնեալ, ոչ 'ի մահուանէ և ոչ յա-
ղէտից աղերսեմ զերծանել, այլ
'ի տէրութենէ միայն թշնամւոյն
և 'ի գառն կոչկոճանացս: Զթա-
գաւորութ՟է Նումիդիոյ՝ որ ձեր
իսկ է, որպէս և հաճոյ իցէ խոր-
հեսջիք, այլ յանօրէն ձեռաց ան-
տի թափեցէք զիս երդմնեցու-
ցեալ զձեզ 'ի փառս հռովմէական
պետութեան, և 'ի հաւատարմու-
թիւն բարեկամութ՟ե, եթէ չիցեն
մոռացօնք լեալ առ ձեզ 'ի սպառ
յիշատակի հաւուն իմոյ Մասի-
նիսայ ”:

ԻԵ. Եւ յորժամ ընթերցաւ
թուղթս, գտան ոմանք՝ որ խոր-
հուրդ ետուն բանակս զօրաց ար-
ձակել յԱփրիկէ, վաղ հասանել
'ի թիկունս օգնականութեան Ա-
դերբաղայ, և զՅուգուրթայ ան-
սաստելոյ առ պատգամաւորս
խորհուրդ 'ի մէջ առնուլ: Բայց
այլք 'ի ծերակուտէն կուսակիցք
Յուգուրթայ գուն գործեալ 'ի
դերև հանին զխնդիրն: Այսպէս
բարին հասարակաց, որպէս յա-

Ճախ պատահէ, ընկճեցաւ 'ի
շնորհս ոմանց։ Սակայն այլ դես-
պանք առաքեցան յԱփրիկէ ազ-
նուականութեամբ տոհմին, հա-
սակաւ և պատուով երևելիք, և 'ի
սոսա Մ. Սկաւրոս, զոր 'ի վեր
անդր յիշատակեցաք, երբեմն բըր-
դեաշխ և յայնժամ իշխան ծերա-
կուտին։ Սոցա տեսեալ զի դըժ-
պըհի ամենեցուն էին իրքն, և 'ի
նումիդացւոց դեսպանացն Ադեր-
բաղայ Թախանձեալ, փութացան
յերիր աւուր ելին 'ի նաւ, և հա-
սեալ ընդ հուպ յՈւտիկէ՝ նամա-
կանի արարին առ Յուգուրթ վաղ
ընդ փոյթ գալ հասանել անդր,
զի 'ի ծերակուտէն առ նա պատ-
գամաւորէին։ Իբրև գիտաց նա
զի արք երևելիք՝ հզօրք իշխա-
նութեամբ 'ի Հռոմ, եկեալ էին
խափանել զխորհուրդս իւր, ան-
դէն 'ի սկզբան ընդ երկիւղ և ընդ
փառասիրութիւն յուզեալ տա-
տանէր։ Երկնչէր 'ի ցասմանէ ծե-
րակուտին յանսաստել դեսպա-
նացն, բայց և 'ի կոյր մտացն ցան-

կուԹենէ մղեալ բերէր յանօրէ-
նուԹիւն՝ յոր ձեռն արկեալ էր .
յաղԹեաց ապա 'ի չարատենչ
միտս նորա խորհուրդ Թիւր . և
շուրջ պատեալ զօրօք դրոհ ետ
զօրուԹեամբ մեծաւ 'ի Կիրոս ,
ակն կալեալ 'ի բաժանել զօրու-
Թեան Թշնամւոյն՝ բռնուԹեամբ
կամ նենգանօք յաղԹուԹե՟ հան-
դիպել : Այլ իբրև այլ ազգ ելք
իրացն պատահեցին և ոչ ըղձիցն
կարաց հասանել զբռամբ ածելոյ
զԱդերբադ մինչև դեսպանացն
յանդիման լեալ, ոչ ևս իշխեաց
զայրացուցանել յապաղմամբն՝
զՍկաւրոս , յորմէ յոյժն երկնչէր ,
և սակաւուք ոմամբք հեծելովք
չոգաւ յՍուտիկէ : Եւ Թէպէտ
պատգամաւորաց 'ի դիմաց ծե-
րակուտին ծանր ծանր սպառնա-
լիս արարեալ եԹէ ոչ ձեռնԹափ
լինէր նա 'ի պաշարմանէն , սա-
կայն յետ սնավաստակ լինելոյ 'ի
բանս , վայրապար դարձան յետս :

ԻԶ . Յորժամ լուր եղև այս 'ի
Կիրոս , խաղացէք՝ որ քաջու-

թեամբ պաՀ ունէին քաղաքին , վստաՀացեալ 'ի մեծութիւն ժողովրդեան Հռովմայ՝ փրկել զանձինս տուչութեամբ քաղաքին , Հաւանեցուցին զԱդերբաղ անձնատուր լինել 'ի Յուգուրթ , եթէ միայն խնայեսցէ 'ի կեանս իւրեանց , զայլն ամենայն 'ի ծերակոյտն ապաստան արարեալ : Իսկ նա թէպէտև չվստաՀէր ամենևին 'ի Հաւատարմութիւն Յուգուրթայ , այլ զի կարէին բռնադատել զնա եթէ ընդդիմանայր , աբար ըստ խորՀրդոց իտալացւոցն և անձնատուր եղև : Յայնժամ Յուգուրթ նախ զԱդերբաղ չարատանջ սպան , ապա զամենայն արբունս Նումիդացւոց և զօտարս խառն 'ի խուռն 'ի սուր սուսերի կոտորեաց՝ որք միանգամ պատաՀէին զօրացն :

ԻԷ . Ազգ եղև 'ի Հռովմ, և յածել իրացն յատեան ծերակուտին՝ կաշառակուրծ պաշտօնեայք Յուգուրթայ խափանեալ զփորձիչ , և յաճախ զմեծարանս երե_

սաց իւրեանց 'ի կիր արկեալ եւ
և վէճս 'ի մէջ արկեալ, երկպա-
ձգութեամբ զգժնդակութիւն ի-
րացն մեղմէին: Եւ եթէ ոչ Կ.
Սեմմիոս տրիբունն ժողովրդեան
ընտրեալ, այր խիստ և ոխերիմ
թշնամի իշխանութեան ազնուա-
կանաց, ցուցանէր ժողովրդեան
Հռովմայ՝ թէ սակաւք ոմանք
խռովայոյզք ջանահնար լինէին
անաւս առնելոյ զեղեռն Յու-
գուրթայ, ապաքէն ամենայն
վրէժխնդրութիւն 'ի խորհուրդս
միայն և 'ի բանս վճարէր: Այս-
չափ էր զօրութիւն գանձուց թա-
գաւորին և մեծարանաց կուսակ-
ցաց նորա: Այլ ծերակոյտն հա-
րեալ 'ի խղճէ յանցանացն՝ եր-
կեաւ 'ի ժողովրդենէ, և ըստ սեմ-
պրոնեան օրինաց Նումանտիա և
Իտալիա սահմանեցան 'ի կուսա-
կալութի բդեշխից, և կարգեցան
բդեաշխք Պ. Սկիպիոն Նասիկա,
և Ղ. Բեստիա Կալպուրնիոս. ա-
ռաջնոյն տուաւ Իտալիա, և երկ-
րորդին Նումանտիա: Ապա զօր

գումարէր, բանակ կազմէր ընդ-
դէմ Ափրիկեայ, և սահմանէին
ռոճիկք և այլ ամենայն կարևորք
մարտին:

ԻԸ. Իսկ Յուգուրթայ զանա-
կընկալ գոյժն առեալ, և քանզի
'ի մտի եդեալ էր զի 'ի Հռովմ ա-
մենայն ինչ ընդ արծաթոյ վաճա-
ռի՝ առաքեաց զորդի իւր ընդ եր-
կուս 'ի ծառայից դեսպանս առ
ծերակոյտն, պատուիրեալ նոցա՝
որպէս երբեմն երթելոցն 'ի սպա-
նութեան Հեմպսաղայ կաշառա-
կուրծ առնել զամենեսեան: Ի հա-
սանել նոցա 'ի Հռովմ, եհարց
Բեստիա զծերակոյտն՝ թէ ար-
ժա՞ն իցէ արդեօք զդեսպանսն
Յուգուրթայ ընդունել 'ի քա-
ղաքն: Եւ ծերակոյտն ետ վճիռ,
զի եթէ ոչ գան նոքա տալ նմա
զՅուգուրթ հանդերձ թագաւո-
րութեամբն, 'ի տասն աւուրս ել-
ցեն 'ի բաց յԻտալիոյ: Եւ բդեաշ-
խըն ազդ արար նումիդացւոց ըզ-
պատուէր հրամանի ծերակու-
տին, և դարձան նոքա յետս ձեռն-

ունայն ։ Յայնժամ Կալպուռնիոս
բանակ կազմեալ, միաբանեաց ընդ
իւր զարս ազնուականս խռովա-
սէրս, յուսացեալ ընդ հովանեաւ
իշխանութեան նոցա պատսպա-
րել զեղեռնութիւնս. ընդ նոսա
էր և Սկաւրոս՝ զորոյ զբարուցն
և զգնացից 'ի վեր անդր ասացաք։
Կալպուռնեայ յոլով բարեմաս-
նութիւնք էին մտաց և մարմնոյ,
այլ այն ամենայն կաշկանդեալ
յագահութենէ ։ Անխոնջ 'ի վաս-
տակս, նրբամիտ հանդերձ նախա-
տեսութեամբ, ոչինչ անտեղեակ
իրաց պատերազմի, և անսասանե-
լի 'ի վտանգս և 'ի դարանակա-
լութեանց ։ Արդ լէգէոնքն զօրաց
ընդ Հռեգիոն և ընդ Սիկիլիա ան-
ցին յԱփրիկէ ։ Կալպուռնիոս 'ի
սկզբան զկարեւոր պէտս պատրաս-
տեալ՝ սաստիկ յարձակմամբ մխե-
ցաւ 'ի Նումիդիա, էառ գերի
բազում, կալաւ և քաղաքս ինչ
մարտիւ պատերազմաւ ։

ԻԹ. Այլ յորժամ Յուգուրթ
'ի ձեռն պատգամաւորաց իւրոց

սկսաւ ընծայս գաղտախնթել նմա, և զմարտին յոր ձեռն արկանէրն՝ ցուցանել զգժնդակութիւն, որ֊ ծանթախրութք խօլթացեալ միտք նորա հեշտեաւ խոնարհէին: Եւ ընկեր իւր և կատարիչ խորհրդոց ընտրէր զԱկաւրոս. որ թէպէտ 'ի սկզբան անդ 'ի կաշառակուրծն լինել այլոց իշխանակցաց իւրոց, ինքն ուժգին մարտուցեալ էր ընդդէմ Թագաւորին, այլ ապա յառատութենէ գանձուց յաղ֊ թեալ՝ 'ի բարեւոյն և յարդարէն 'ի թիւրն միտք նորա շրջեցան: Իսկ Յուգուրթ՝ որ զառաջինն դուլ զինուց միայն խնդրէր առ 'ի գլուխ տանել ինչ 'ի Հռոմ ոսկեով կամ նպաստիւք բարեկամացն, իբրև լուաւ զի Ակաւրոս կցորդ իւրացն գտանէր, ծնաւ վերստին 'ի միտս նորա յոյս մեծ խաղաղութեան. և խորհէր անձամբ խօսել ընդ նմա զպայմանացն: Եւ առա֊ քեցաւ 'ի բդեշխէն իւր 'ի պա֊ տանդ հաւատարմութեան Սեքս֊ տոս գանձապետ 'ի Վակկա քա֊

ղսք Յուգուրթայ , բաղբաղանօք
ետր առ 'ի բերել անտի ցորեան ,
զոր Կալպուրնեայ լու 'ի լու ամե_
նեցուն հրամայեալ էր դեսպա_
նացն , փոխանակ դադարման զի_
նուցն վասն յապաղելոյ արքային
լինել անձնատուր ։ Արդ որպէս
'ի մտի եդեալ էր Թագաւորն՝
եկն 'ի բանակն , և կարճ 'ի կարճոյ
տուեալ վասն անձին պատասխա_
նի ընդդէմ ամբաստանութեանցն ,
և առաջարկեալ զպայմանս՝ ո_
րովք կամէրն անձնատուր լինել ,
զմնացորդ ժամս ընդ Բեստեայ և
ընդ Սկաւրոսի անցոյց . ապա յա_
ւուրն երկրորդի խառն 'ի խուռն
ածան իլքն 'ի խորհուրդ , և ըն_
դունելի եղև անձնատուր հնա_
զանդութիւն Յուգուրթայ . միայն
զի հաստուսցէ զանձապետին ըստ
վճռոյ ատենին փիղս երեսուն ,
հօտս ոչխարաց և ձիան բազում և
դումար արծաթոյ ոչ սակաւ ։
Կալպուրնիոս դարձ արար 'ի
Հռովմ առ ծերակոյտն 'ի խնդիր
հաստատութեան պայմանացն ։

Եւ համբաւէր յայնմհետէ խա֊
ղաղութիւն առ մեզ և առ նու֊
միդացիս :

Լ. Այլ իբրև հռչակեցան որ
ինչ անցք անցեալ էին յԱփրիկէ,
'ի Հռովմ ամենայն ուրեք և յա֊
մենայն ժողովս քրթմնջիւն էր
զգործոց բդեշխին, և զայրոյթ
սաստիկ 'ի ժողովրդեան. իսկ ծե֊
րակոյտն տագնապէր թէ հաւա֊
նեսցի արդեօք ընդ եղեռնն մեծ,
թէ զմձիւս բդեշխին հերքեսցէ.
Քանզի զօրութիւն Սկաւրոսի՝ որ
խորհրդական և աջակից համբա֊
ւէր Կալպուռնեայ, արգելոյր զնո֊
սա մեծապէս 'ի Ճշմարտէն և 'ի
բարւոյն: Բայց Կ. Մեմմիոս, զո֊
րոյ զմտացն ազատութենէ և զա֊
տելութենէ ընդդէմ իշխանութե̃
ազնուականաց 'ի վեր անդր ասա֊
ցեալ է մեր, յերկբայս և 'ի յա֊
պաղումն ծերակուտին ժողովս
արարեալ՝ խրախուսէր զռամիկն 'ի
վրէժխնդրութիւն, խրատ տայր
չթողուլ չլքանել զպետութիւն
հասարակաց և զազատութիւն.

յիշեցուցանէր նոցա զբազում
զամբարտաւան և զանդուլթ եղե-
ռունս ազնուականաց. և ամենայն
օրինակաւ ջանահնար լինէր վա-
ռել 'ի ցասումն զմիտս ժողովր-
դեան: Այլ զի 'ի ժամանակին
յայնմիկ պերճախօսութեն Մեմ-
մեայ յատակ և ճոխ պայծառա-
նայր, արժան համարիմ զմի 'ի
բազում ճառից նորա ասս 'ի
ներքս ածել, և մանաւանդ զոր
'ի դարձին Բեստեայ խօսեցաւ 'ի
ժողովն՝ օրինակ զայս.

ԼԱ. «Բազում ինչ արդեօք
սարտուցանէին զիս 'ի ձէնջ, ո՛
կուիրիտեանք, եթէ փոյթ օգտի
հասարակաց ամենայնի ոչ յաղ-
թէր. հակառակորդացն զօրու-
թիւն, ձերդ համբերութիւն, ոչ
մի ինչ իրաւանց խնդիր, և մանա-
ւանդ այն զի առաւել վտանգ 'ի
վերայ կայ անմեղութեան քան
թէ պատւի: Ամաչեմ իսկ ասել
զի 'ի հնգետասան ամաց հետէ ո՛ր-
պէս խաղալիկ լեալ էք ամբար-
տաւանութեն սակաւուց. զիարդ

անարգաբար և անվրէժխնդիր կո-
րեան պաշտպանք ձեր, և ի՛բր առ
վատութեան և յուլութեան թու-
լացեալ մեղկացարուք, և ցարդ
ևս մինչ՚ նկուն լեալ են թշնամիք՝
ոչ զարթնոյք, դեռ ևս երկնչելով
'ի նոցանէ՝ որոց ահընկէց պարտ
էիք լինել: Իցէ այս որպէս և է,
սակայն ընդդէմ խռովարարացն
զօրութեան վարեն միաք իմ. ա-
պաքէն ես հայրենաւանդ ազա-
տութեամբս ձգնեցայց, այլ 'ի
ձեռս ձեր է, կուրխաեանք, չը-
հանել զձիգն իմ ընդունայն:
Ոչ յորդորեմ իսկ զձեզ՝ որպէս
յաճախ հաւքն ձեր և հարքն ա-
րարին, ընդդէմ անիրաւութեան
զէն առնուլ. չէն աստանօր պէտք
ոչ բռնութեան և ոչ հերձուա-
ծոց, այլ թողուլ զնոսա յապա-
կանութեան իւրեանց գահավէժ
կործանել: Յետ սպանութեն Տիբե-
րեայ Գրակքոսի՝ զորմէ ասէին
զթագաւորութեան թեկն առնել,
խիստ քննութիւնք եղեն ընդդէմ
ժողովրդեան Հռովմայ: Եւ ապա

յետ մահուն Կայիոսի Գրակքոսի
և Մարկոսի Փուլուեայ, բազումք
'ի քաղաքայնոցդ խողխողեցան 'ի
բանտս. և մահուանցս այսոցիկ ոչ
օրէնք ինչ՝ այլ նոցին ազնուակա-
նացն հաճոյք արարին վախճան:
Այլ համարեսցուք թէ հատու-
ցանել ռամկին զիւր իրաւունս
սկիզբն իցէ բռնակալութեան. և
որ առանց հեղլոյ արեան քաղա-
քացւոց չէր մարթ խափանել, օ-
րինաւոր գրեսցի լեալ: Յանցեալ
ամս թէպէտ և ցասուցեալ 'ի սրտէ
ընդ յափշտակութիւն հասարա-
կաց գանձուն, և ընդ այն ևս զի
թագաւորք և ժողովուրդք ա-
զատք՝ սակաւուց ումանց ազնուա-
կանաց հարկատուք գտանէին, և
առ նոսա գնային փառաց և գան-
ձուց ձոխութիւնք, սակայն այն-
պիսի եղեռնովն առ ոչ ինչ հա-
մարեալ թողուիք անպատուհաս.
մինչև օրէնք իսկ և փառք ձեր,
և աստուածայինքն ամենայն և
մարդկայինք մատնեցան թշնա-
մեաց: Եւ ոյք զայն գործէին՝ ոչ

զեղջ է նոցա և ոչ պատկառանք, այլ բարձր 'ի գլուխ սիգան առաջի ձեր պանծացեալք ընդ քրմութիւն և բդեշխութիւն, և կեաք ընդ յաղթանակս իսկ. իբր այն թէ փառք էին նոցա այնք և ոչ յափշտակութիւն: Մտրուկք արծաթագինք չհանդուրժեն ընդ անիրաւ հրամանօք տեարց, իսկ դուք յիշխանութիւն ծնեալ, ո՛ կուրիոտեանք, յօժարիցէք ընդ ստրկութիւնդ: Նա ո՞յք ոմանք իշխեցողք հասարակապետութե՛ս. այլք անօրէնք՝ որոց ձեռք իւրեանց արեամբ շաղախեալ են, որոց չիք չափ ագահութեան. ապիրատք և գոռոզք, որք զհաւատս, զպատիւ, զաստուածպաշտութիւն, և համայն ստացեալ զպատշաճս և զանպատշաճս շահավաճառ համարէին: Կեաք 'ի նոցանէ զկոտորած որբունից ժողովրդեան, այլք զանիրաւ ամբաստանութե՛ս, և բազումք արիւնհեղութիւնս 'ի ձեզ՝ պատսպարան անձանց գործեն: Այսպէս որչափ ինչ ոք չա-

ըաչար անօրինի, նոյնչափ առա-
ւել անքոյթ և աներկեան գտա-
նի: Փոխանակ զի նոցա պարտ էր
երկնչել յեղեռանց իւրեանց,
դուք 'ի նոցանէ երկնչիք վատու-
թեամբ. նոցա նոյն խիղճք են, նոյն
ատելութիւն, և երկիւղ նոյն որ
զնոսա միաբանեն: Այլ որ առ
լաւս բարեկամութիւն կոչի, առ
չարս դաւակցութիւն է: Զի ե-
թէ ձեր այնչափ փոյթ էր ազա-
տութե՝ որչափ նոքա վառեալ են
'ի տիրապետութիւն, ոչ արդեօք
հասարակապետութիւնս որպէս
այժմ՝ ապականեալ գտանէր,
և ոչ ժպիրհ մարդիկ՝ այլ լաւ-
որեայն ձերումդ բարերարութե
հանդիպէր: Նախնիք ձեր 'ի ստա-
ցումն իրաւանց և յապահովութե
պատուոյ երկիցս ձեղքեալ յազ-
նուականաց կալան զինուք զԱւեն-
տինոն, և դուք արդ ընդէր ոչ
ձգնիք ամենայն զօրութեամբ 'ի
պահ հայրենատուր ազատութե.
մանաւանդ զի ամօթալի ևս է կո-
րուսանելն զստացեալն քան չըս-

տանալ բնաւ ։ Հարցանիցէ ոք ար-
դեօք թէ զի՞նչ ապա խորհեցիմ.
վրէժ խնդրել 'ի մատնչաց հասա-
րակապետութեան , ոչ զինուք և
ոչ բռնութեամբ, զոր ձեզ անպա-
տեհ է առնել քան թէ նոցա կրել,
այլ հարցափորձիւ և նորին իսկ
Յուգուրթայ ցուցակութեամբ ։
Զի եթէ ոչ վեր 'ի վերոյ լինի
անձնատուր , լուիցէ ապաքէն
հրամանաց ձերոց . իսկ եթէ ըն-
տունդանէ , ծանիջիք ապա որպի-
սի ինչ խաղաղութիւնն այն իցէ
և անձնատուր նուաճումն , ուստի
Յուգուրթայ եղեռանցն անպա-
տուհաս արձակուրդ , սակաւուց
ոմանց հզօրաց փարթամութիւն ,
և կորուստ և նախատինք հասա-
րակապետութեանս հասանիցեն ։
Չև ես արդեօք իցէք տաղտկա-
ցեալ 'ի բռնակալութենէ նոցա ,
և հաճոյագոյն ձեզ թուին ժա-
մանակքն , յորս թագաւորու-
թիւնք , գաւառապետութիւնք ,
օրէնք , իրաւունք , դատաստանք ,
պատերազմ և խաղաղութիւն , և

համայն իսկ աստուածայինք և
մարդկայինք 'ի ձեռս սակաւուց
էին, և դուք ժողովուրդ Հռով-
մայ անպարտելիք 'ի թշնամեաց և
իշխանք տիեզերաց՝ կեալ ևեթ
բաւական համարէիք. քանզի ո՞
ոք 'ի ձէնջ իշխէր թափել զանձն
'ի գերութենէ: Թէպէտ ես իսկ
վատութիւն համարիմ չխնդրել
զվրէժ անիրաւութեան, այլ մը-
տադիւր արդեօք համբերէի նե-
րելոյ ձեր անօրէն մարդկանն՝
քանզի քաղաքացիք են, եթէ գը-
թութիւն ձեր ոչ էր ձեզ 'ի վնաս:
Զի նոցա այնպիսի է յամառու-
թիւն, զի ոչ շատացին անկըշ-
տանալ համարձակ 'ի չարիս, ե-
թէ ոչ բառնայցէք 'ի նոցանէ
զազատութիւն անօրինելոյ, այլ
և մշտնջենաւոր յաւելցեն ձեզ
տագնապ՝ յորժամ բռնադատիցիք
կամ զգերութի յանձն առնուլ, և
կամ զինու զօրութեամբ պահել
զազատութի: Քանզի մ՞ր յոյս այ-
սուհետև հաւատարմութե և միա-
բանութե 'ի մէջի կայցէ: Նոքա տի-

ռապետել խնդրեն, դուք ազատս կեալ, նոքա անկրաւել, դուք խափանել զանկրաւութիւն. միով բանիւ՝ ընդ դաշնակիցս ձեր իբրեւ ընդ թշնամիս, և ընդ թշնամիս ձեր իբրեւ ընդ դաշնակիցս վարին: Մինթէ իցէ՞ հնար այսչափ հակառակութեան միջի խաղաղութե՟ և բարեկամութեան տեղի գտանել: Վասն այսորիկ խրատ տամ ձեզ և յորդորեմ չթողուլ անպատուհաս զեղեռնն մեծ: Ոչ զյափըշտակութենէ գանձուց հասարակաց, ոչ զհարստահարութենէ նիզակակից ժողովրդոց են բանք, որ թէպէտ և ծանունք, այլ 'ի սովորութենէ ժամանակիս առ ոչինչ համարին. իշխանութիւն ծերակուտին խաղալիկ լեալ է ոսերիմ թշնամւոյն, և պետութիւն ձեր մատնեալ 'ի ձեռս նորա, և առ անին և 'ի բանակի հասարակապետութիւնն 'ի վաճառ հանեալ: Եթէ ոչ 'ի քնին մատուցին ինքդ, եթէ ոչ պատուհաս 'ի վերայ յանցաւորացն կապեսցի,

զի՞նչ այլ հասցէ մեզ՝ բայց ընդ-
ձեռամբ անօրինելոցն կեալ. զի
բռնակալութիւն այն խակ է՝ գոր-
ծել զամենայն անպատուհաս ։
Իբր ոչ եթէ յորդորեմ զձեզ, ո՛
կուիրիտեանք, 'ի կամել զի քաղա-
քացիք ձեր չար գործիցեն քան
թէ բարի. այլ զի մի՛ չարաց նե-
րելով մատնիչք բարեաց լինիցիք ։
Եւ այն զի լաւ ևս է 'ի հասարա-
կապետութեան անտես առնել
զբարիս քան թէ զչարիս. քանզի
այսպէս լքեալ ևեթ լաւք, յու-
լադոյնք լինիցին. իսկ չարք՝ անօ-
րինագոյնք։ Եւ դարձեալ. զի եթէ
կարճեսցին, ոչ ևս յաճախ օգ-
նականութեան լինիցին պէտք”։

ԼԲ. Զայսոսիկ և զայլ սոյն-
պիսի բանս ստէպ խօսելով Մեմ-
միոս ընդ ժողովրդեան՝ հաւանե-
ցոյց զնոսա առաքել առ Յու-
գուրթ զՂուկիոս Կասսիոս՝ որ
պրետորն էր յայնժամ, որպէս զի
ածցէ զնա 'ի Հռոմ՝ վստահա-
ցուցեալ 'ի հաւատարմութիւն
հասարակապետութեան առ 'ի

դիւրագոյն ևս նշաւակել վկայ-
ութեամբ նորա զկաշառակրծու-
թիւն Սկաւրոսի և այլոց ։

Մինչդեռ այս անցք 'ի Հռովմ
անցանէին, 'ի Նումիդիա ոստի-
կանք զօրուն թողեալ 'ի Բես-
տեայ, ըստ օրինակի զօրավարին
իւրեանց՝ բազում ինչ աւերա-
տութիւնս գործեցին ։ Զի ոմանք
կաշառաւ զփիղս Յուգուրթայ
յետս դարձուցանէին, այլք ըզ-
փախստական դասալիքսն վաճա-
ռէին, և կէսք աւար առնուին
յազգաց՝ որոց չէր ինչ խլեալ ։
Այսպէս ընչաքաղցութիւն իբրև
ախտ ժանտ 'ի սիրտս նոցա բըռ-
նանայր ։ Իսկ Կասսիոս պրետոր,
ըստ վճռոյ ժողովրդեան զոր ըն-
կալաւ Կ. Մեմմիոս յահ և յեր-
կիւղ ազնուականացն, չոգաւ առ
Յուգուրթ՝ որ զահի հարեալ
կայր 'ի կասկածանս առ 'ի խղճէ
չարեացն, և յորդորեաց զնա, ո-
րովհետև անձնատուր լեալ էր
ժողովրդեան Հռովմայ, ջանալ
գթութեան նորա և մի սաստիցն

հանդիպել: Ապա և զեւրն ետ
նմա երաշխաւորութիւն, որ ոչ
ինչ նուազ քան զհասարակացն
համարէր առ նմա, զի մեծ էր
յոյժ 'ի ժամանակին համբաւ ա-
նուանն Կասսիոսի:

ԼԳ. Իսկ Յուգուրթ ոչ ըստ
փառաց Թագաւորութեն, այլ
դձուձ կերպարանաւ ընդ Կաս-
սիոսի եկն 'ի Հռովմ: Թէպէտ և
քաջասիրտ էր յոյժ, և խրախու-
սեալ և ևս 'ի զօրութէ գործակ-
ցաց անօրէնութե իւրոյ, զորոց 'ի
վեր անդր ասացաք, սակայն զԿ.
Բեբիոս զհազարապետ ժողովր-
դեան մեծամեծ պարգևօք կաշա-
ռեաց՝ պատսպարան իւր առնել
զժպրհութիւն նորա ընդդէմ օրի-
նաց և ամենայն Թշնամանաց: Իսկ
Մեմմիոս 'ի ժողով կոչեաց զա-
մեկն՝ որ ունէրիմ զայրագնեալ ընդ
Թագաւորին, կէսք 'ի կապանս
հրամայէին ածել զնա, այլք պա-
տուհասակոծ ըստ նախնեացն օ-
րինաց առնել զնա, եթէ ոչ յայտ-
նէր զմեղսակիցս իւր. և մեծա-

թեան պատուոյն քան ցասմանն իւրոյ տեղի տուեալ, խաղաղէր տրիբունն զաղմուկ ռամկին, ողոքէր զմիտս նոցա և ցուցանէր անդրժելի զհաւատս հասարակաց։

Եւ իբրև հանդարտեաց ամբոխըն, 'ի մէջ ածեալ Մեմմիոսի զՅուգուրթ, յուշ արար նմին որ ինչ 'ի Հռովմ և որ ինչ 'ի Նումանտիա եղեռունս գործեալ էր, և զանօրէնութիւս նորա առ հայրն և առ եղբարս. և զի թէպէտ գիտակ էր ժողովուրդն գործակցաց նորա և պաշտօնէից 'ի գործն ամբարշտութեան, սակայն յայտնագոյնս կամէր տեղեկանալ 'ի նմանէ. զորս եթէ ճշմարտութեամբ խոստովանէր՝ էր իսկ նմա վստահ լինել 'ի հաւատ և 'ի գթութիւն ժողովրդեան Հռովմայ. իսկ եթէ լռէր՝ ոչ միայն չկարէր փրկել զհամախոհս իւր, այլ և զանձն և զակնկալութիւս իւր միանգամայն կորուսանէր։

ԼԴ. Եւ իբրև դադարեաց Մեմմիոս 'ի խօսելոյ, հրամայե-

ցաւ Յուդուրթայ առնել պատասխանի։ Բայց Կ. Բեբիոս հազարապետ ժողովրդեան՝ որ կաշառակուրծն լեալ էր, որպէս 'ի վեր անդր ասացաք, պատուէր ետ Թագաւորին լռել։ Եւ թէպէտ ամբոխ բազմութեանն ծանրացաւ ահաբեկէր զնա 'ի գոչումն աղաղակի, խոժոռ աչօք, ստէպ յարձակմամբ, և ամենայն հնարիւք զոր սադրէր զայրոյթ, սակայն յաղթեաց լռութիւն։ Եւ այս օրինակ ծաղր և ծանակ լեալ ժողովուրդն 'ի բաց գնաց յատենէն. իսկ Յուդուրթ և Բեստիա ընդ այլս՝ որք կային 'ի տագնապ տարակուսի, քաջալերեալ խրախուսեցան։

ԼԵ. Եւ էր յայնժամ 'ի Հռովմ նումիդացի ոմն Մասիւա անուն, որդի Գուլուսայ թոռն Մասինիսայ։ Սա զի 'ի գժտել Թագաւորաց հակառակորդ լեալ էր Յուդուրթայ, վասն որոյ յետ առման Կիրտայ և սպանութեան Ադերբաղայ՝ փախստեայ գնա-

ցեալ էր 'ի Լիբիոյ ։ Զսա հաւա-
նեցոյց Սպուրիոս Ալբինոս՝ որ 'ի
միւսումն ամի յետ Բեստեայ ըն-
դեաշխ կացեալ էր ընդ Կ. Մի-
նուկեայ, խնդրել զթագաւորու-
թիւն Նումիդիոյ 'ի ծերակուտէն
իբր սերունդ Մասինիսայ՝ 'ի վը-
տանգի անդ Յուգուրթայ՝ մինչ
ատելի լեալ էր նա հասարակաց ։
Եւ զի այր պատերազմասէր էր
ըդեաշխն, խռովելոյ իրաց ցան-
կայր և ոչ հանդարտելոյ. մանա-
ւանդ զի Նումիդիա վիճակեալ էր
իւր 'ի գաւառ իշխանութեան, և
Մինուկիոսի Մակեդոնիա ։ Իբրև
այն ինչ սկսաւ Մասիւա դեգևել,
և Յուգուրթ չգտանէր պատըս-
պարան 'ի բարեկամին, քանզի
կէսք առ խղճի մտացն, այլք 'ի
վատահամբաւութենէ և յերկիւ-
ղէ խափանէին, հրաման ետ Բո-
միլկարայ ազգականի իւրոյ և մը-
տերիմ պաշտօնէի, կաշառաւ որ-
պէս 'ի բազում ինչ իրս ցայն վայր
յաջողեալն էր, դարանակալս
պատրաստել գաղտ կենաց Մա-

սիւայ • իսկ եթէ այնպէս ինչ ոչ յաջողիցէ , որով և է օրինակաւ արկանել 'ի կենաց զնուամիրդացին: Զհետ այնդի Բոմիլկար 'ի կատարումն հրամանի արքային, 'ի ձեռն արանց անօրինաց մարդասպանից լրտեսէ զել և զմուտ Նորա, գիտէ զժամանակին և զվայրաց քաղադիպութիւն, և ապա պատրաստով գործէ նմա դարան : Անդ ումն 'ի դարանամտիցն յանդգնաբար 'ի վերայ յարձակեալ, սպանանէ զնա, այլ և ինքն ձերբակալ լեալ և 'ի յորդորելոյ բազմաց, և մանաւանդ Ալբինոսի բդեշխի՝ 'ի վեր հանէ զդաւակիցսն : Յանցաւոր գտաւ Բոմիլկար ըստ արդարութեան քան ըստ իրաւանց ազգաց, զի ուղեկից էր նմին որ 'ի հաւատոյ հաստատակաց 'ի Հռովմ եկեալ էր : Բայց Յուգուրթ և 'ի յայտնել անօրէնութեանն մեծի ոչինչ յետս եկաց 'ի ջանից ընդդէմ Ճշմարտութեան, մինչև ծանեաւ թէ ոչ Նպաստիւք և ոչ կաշառով ձողոպրել կարէր զանձն

յատելութե՜ ։ Թէպէտ կանխեալ արս յիսուն 'ի բարեկամաց իւրոց 'ի պատանդ տուեալ էր, սակայն 'ի թագաւորութե՜ն իւր առաւել քան 'ի պատանդս խնայելով, գաղտ 'ի Նումիդիա արձակեաց զԲոմիլկար, երկուցեալ զի մի 'ի դատապարտել Նորա երկիցեն իւրքն հպատակել Նմին ։ Եւ ինքն յետ աւուրց յուղի անկաւ, հրաման 'ի ծերակուտէն ընկալեալ ելանել յԻտալիոյ ։ Այլ յելանել իւրում 'ի Հռովմայ, աւանդի հայեցեալ Նորա ստէպ յետս, և ապա ուրեմն ասացեալ «Քաղաք գիւրագին, եկեալ հասեալ է կորուստ քո, եթէ գնող ոք գտցի» ։

ԼԶ. Յայնմ ժամանակի Ալբինոս բդեշխ 'ի գրգռել վերստին պատերազմի՝ հանդերձեալ ըղհամբարս, զռոճիկ և զամենայն կարևոր պէտս զօրականին աճապարէ անցուցանել յԱփրիկէ, և ինքն անյապաղ ուղւոյ լինի, որպէս զի յառաջ քան զժողովքա-

ղաքացւոց՝ որ չէր ինչ հեռի, կա-
րասցէ զինու զօրութեամբ կամ
անձնատուր լինելով, կամ որ և է
օրինակաւ վախճան առնել մար-
տին: Իսկ Յուգուրթ յերկարա-
ձգէր ընդ հակառակն զամենայն,
նորանոր պատճառանս օր ըստ
օրէ պատճառելով. է զի խոստա-
նայր անձնատուր լինել, և է զի
կեղծէր չվստահել. մերթ տեղի
տայր, և մերթ յամառէր առ 'ի
չտալոյ իւրոցն կասկած. և այս օ-
րինակ ոչ 'ի պատերազմ և ոչ 'ի
խաղաղութեն Թեւակոխեալ, խաղ
առնէր զբդեաչխն: Եղեն որք
համախոհ համարեցան զԱլբինոս
ընդ Թագաւորին, նենգութեամբ
ևեթ և ոչ այլ ազգ դիւրին համա-
րեալ զգանդաղել նորա, որ այն-
չափ եռանդեամբ ձեռն արկեալ
էր 'ի պատերազմ: Այլ իբրև մեր-
ձեցաւ ժամանակ ժողովոյ քա-
ղաքացւոց, Թողեալ Ալբինեայ 'ի
բանակին զեղբայր իւր զԱւղոս փո-
խան պրետորի, դարձ արար 'ի
Հռովմ:

Լէ . Զայնու ժամանակաւ խռովութեամբ հազարապետաց ժողովրդեան 'ի Հռոմ վեր 'ի վայր վրդովէին իրք հասարակաց, քանզի Պ. Ղուկիոս և Ղ. Աննիոս հազարապետք ժողովրդեան ընդդէմ կամաց բարձակցացն ջանային հանապազորդել 'ի պաշտաման. և տալուկս այս զամն ողջոյն խափանէր զժողովն:

Մինչդեռ այսպէս երկարաձգէր ժողովն, Աւղոս՝ որ փոխան պրետորի կացեալ էր 'ի բանակին որպէս ասացաք, խորհեցաւ կամ մարտիւ պատերազմաւ խորտակել զԹագաւորն, և կամ ահաբեկեալ զնա հանել 'ի նմանէ գանձս. վասն որոյ յամսեանն յունուարի խաղացոյց 'ի ձմերոցաց զզօրականն, և երկայն ճանապարհաւ 'ի խիստ ձմերանի եհաս 'ի բերդն Սութուլ, ուր էին գանձք արքայի: Բայց Թէպէտ առ օդոցն անհարթութեան և առ տեղւոյն ամրութեան անմարթ էր առնուլ զայն կամ պա-

շարել, քանզի 'ի ծագ լերին սե-
պացելոյ պարսպապատ զնիստ
ունէր, և յանձրևաց ձմերայնոյ
դաշտավայրքն շուրջ մօրացեալ
էին 'ի ճահիճս, սակայն կամ
կեղծիս յահարկութիւն թագա-
ւորին կեղծեալ, և կամ յընչա-
քաղցութենէ կուրացեալ, պատ-
նէշ պաշարմանն պատեաց զքա-
ղաքն, և ետ պատրաստել զամե-
նայն ինչ կարևոր 'ի գործ պա-
տերազմին:

ԼԸ. Իսկ Յուղուրթ իբրև ծա-
նեաւ զմտապարծ միտս և զան-
հմտութիւն տեղակալ իշխանին,
զուն գործեաց յաւելուլ զյան-
դգնութիւն անմտութեան նորա,
և դեսպանս աղաչաւորս առ նա
նենգաւ արձակէր, և ինքն իբր
խոյս տալով ընդ դժուարուտ
վայրս և ընդ անկոխս ածէր ըզ-
զօրսն: Այպա յուսով խօսելոյ 'ի
խաղաղութիւն խաբեալ զԱւղոս,
և ձեռնթափ զնա արարեալ 'ի
պաշարմանէն Սութուլայ, զհետ
իւր ձգէ զնա 'ի ներքսակողմանս

իբր զհետ փախստէի: Եւ 'ի նմին
ժամանակի 'ի ձեռն արանց նեն-
գաւորաց զոխ և զգիշեր փորձէր
զզօրականն հռովմայեցի, կաշառս
գաղտախնթէր հարիւրապետաց և
գնդապետաց, կիսոց առ թշնա-
միս հատուածել, և այլոց 'ի տալ
նշանին թողուլ զկայս իւրեանց
և զռազմ: Եւ զայս այսպէս պատ-
րաստեալ՝ յեղակարծումն գիշե-
րայն բազմութեամբ նումիդա-
ցւոց շուրջ պաշարեաց զբանակ
զօրուն Աւղոսի: Ի շաւինդն աղմկին
ընդոստուցեալ զօրականացն հը-
ռովմայեցւոց, ոմանք 'ի զէն ըն-
թանային, այլք 'ի թագուստ, և
կէսք զերկչոտս խրախուսէին, ըշ-
տապ տագնապի ամենուստ 'ի վե-
րայ հասանէր, թշնամեաց բուռն
զօրութիւն, խաւար գիշերոյն ամ-
պամած, վտանգ երկուստեք, և
բնաւ իսկ վարանք տարակուսի՝
փախստեամբ արդեօք եթէ զտե-
ղի կալեալ մարթէր նոցա ապրել:
Բայց 'ի նոցանէ՝ որ կաշառաբեկն
լեալ էին՝ որպէս 'ի վեր այսր ա-

սացաք, գունդ մի հետևակաց լի-
գուրացւոց և երկու խումբ Թրա-
կացւոց և սակաւք ոմանք 'ի սեն-
ւքոր զօրականէն հատուածեցան
առ Թագաւորն. անդ և հարիւ-
րապետ ոմն 'ի տիգաւորաց եր-
րորդի լէգէոնին մուստ եւ Թըշ-
նամեաց 'ի պատնէշն, որ յանձն
էր նմա 'ի պահ, և խուժեցին անդր
նումիդացիք 'ի ներքս: Խոյս ե-
տուն մերքն վատութեամբ, և բա-
զումք զէնընկէց դիմեցին 'ի մօտա-
կայ բլուրն: Խաւար գիշերոյ և
աճապարել Թշնամեաց յաւար
բանակին՝ արգել զպատառասպուռ
ջախջախմանս պարտելոցն: Ի վա-
ղիւ անդր խօսեցաւ Յուգուրթ
ընդ Աւլոսի և ասէ. « Թէպէտ
պաշարեալ կաս հանդերձ զօրօքդ
մատնեալ 'ի սով և 'ի սուր, սա-
կայն ոչ մոռացօնք լեալ են ինձ
մարդկեղինիս յեղյեղուկ բաղդի.
եթէ մատնես ընդ իս յուխտ, ան-
երկեւանս արձակեցից զամենայն
զօրս քո՝ անցուցեալ զնոսա ընդ
լծով. բայց միայն զի 'ի տասն ա-

ուրս ելցես 'ի բաց 'ի Նումիդիոյ։ Թէպէտ ժանդ էին և անօթալից պայմանքն, սակայն ահաբեկեալ 'ի մահուանէ՝ յանձն առին զխաղաղութիւն ըստ կամաց արքայի։

ԼԹ. Իբրև եհաս գոյժ պարտութեանս 'ի Հռոմ, լցաւ քաղաքն տխրութեամբ և երկիւղիւ. ոմանք զփառս պետութեան ողբային, այլք իւրաց պատերազմի անտեղեակք ընդ կորուստ ազատութեան խիթային. և ամենեքեան մանաւանդ որք պատերազմողք զայրանային ընդ Աւղոս՝ որ զէն 'ի ձեռին վատութ̃ 'ի խնդիր լեալ էր կենաց և ոչ քաջութ̃։ Վասն այսորիկ և բդեաշխն Ալբինոս երկուցեալ թէ գուցէ վասն յանցանաց եղբօրն և ինքն լիցի ատելի, 'ի խորհուրդ ծերակուտին ապաստան արարեալ զհաստատութն ուխտին, ինքն զօրաժողով լինէր, խնդրէր և 'ի դաշնակցաց և 'ի Լատինաց թիկունս օգնականութ̃, և ամենայն հնարիւք փութայր 'ի գործ։ Իսկ ծերակոյտն,

որպէս և արժանն էր՝ սահմանեաց
զի անհրաման յիւրմէ և 'ի ժողո֊
վրդենէ չէր ումեք իշխանութիւն
դաշինս կռելոյ ։ Եւ արգելեալ
Ալքինոս 'ի հազարապետաց ժո֊
ղովրդեան ածել զպատրաստա֊
կան զօրան ընդ իւր, յետ աւուրց
ել և գնաց յԱփրիկէ ։ Եւ զի բա֊
նակ զօրացն հռովմայեցւոց ըստ
պայմանադրութեանն ելեալ 'ի
Նումիդիոյ 'ի գաւառս իշխանու֊
թե̃ Հռովմայ ձմերէր, հասեալ
անդր բդեաշխն վառէր բորբոքէր
'ի միտս՝ վանել զՅուգուրթ և
սրբել զնախատինս եղբօրն ։ Այլ
իբրև ետես զի զօրքն ոչ փախըս֊
տականք միայն, այլ և աղատ հա֊
մարձակ 'ի մեղկութիս զեղծեալ
էին, ըստ հարկի իրացն լաւ համա֊
րեցաւ չարկանել ձեռն 'ի գործ ։

Խ ․ Ի ժամանակին յայնմիկ 'ի
Հռովմ Կ ․ Մամիլիոս Լիմետանոս
հազարապետ ռամկին օրէնս ա֊
ռաջարկեաց ժողովրդեան, դա֊
տախազ կալոյ ընդդէմ այնոցիկ՝
որոց խորհրդով արհամարհեաց

Ցուգուրթ զհրամանս ծերակու-տին, որք կաշառակուրծ եղեն 'ի նմանէ 'ի դեսպանութեան կամ 'ի զօրավարութեան, որք ըզ-փիղսն և զդասալիք զօրսն դարձու-ցին 'ի նա, և որք դարձեալ 'ի խա-ղաղութե՛ և 'ի պատերազմի դա-շինս ընդ նմա կռեցին : Այսմ ա-ռաջարկութեան կէսք առ խղճի յանցաւորութեան՝ անհաւանք, և կէսք 'ի վտանգէ երկուց կող-մանցն ընդ իրեարս դրդռութեան երկուցեալ. և քանզի չկարէին յայտնի հակառակ կալ՝ առանց երևելոյ հաւան ընդ եղեալսն, գաղտաբար 'ի ձեռն բարեկամաց, և մանաւանդ Լատինաց և դաշնա-կից իտալացւոց արգելս ընդդէմ յարուցանէին : Իսկ ժողովուրդն ոչ է մարթ բանիւ յայտ առնել քանի՛ նախանձու և զօրութեամբ հրամայէր վճռէր և կամէր զօրէ-նացն հրատարակումն, մանա-ւանդ առ ատելութեան ընդդէմ ազնուականաց՝ որոց պատրաս-տէրն պատուհաս՝ քան առ օգտի

հասարակապետութ՟ե · այնչափ բուռն էր ատելութիւն երկպառակ կողմանցն ։ Մինչդեռ այլք զարհուրեալ կային, Մ · Սկաւրոս որ տեղակալն էր Բեստեայ, որպէս 'ի վեր անդր պատմեցաք, 'ի խնդալ ռամկին, 'ի խուսել իրոցն և 'ի տագնապեալ քաղաքայնոց, և քանզի ըստ Մամիլեայ առաջարկութեանն երեք ոմանք դատախազք խնդրէին, անվեհեր ետ զանձն ընտրել 'ի թիւս նոցա ։ Բայց խիստ և դժնդակ եղև դատաստանն ըստ հաճոյից և ըստ խառնամբոխ աղաղակի ռամկին · և որպէս յաճախ ազնուականացն պատահէր, և սաստ ռամկին սպատահեաց' 'ի յաջողութենէ իւրոց զառածանել 'ի ստահակութիւն ։

ԽԱ · Յամաց հետէ յաճախեալ էր հերձուած ժողովրդեան և երկպառակութ՟ե ծերակուտին, ուստի և ամենայն անկարգութ՟ք մուտ գտեալ 'ի Հռովմ առ բազում խաղաղութեան և առատութ՟ե ցանկալեաց մարդկան ։ Քան-

զի մինչդեռ կանգուն կայր Կար-
քեդոն, ժողովուրդն և ծերակոյտ
Հռովմայ հաշտ և խաղաղ միաբան
խնամ տանէին պետութեան, և
ոչ փառաց և իշխանութեան կագ
և կռիւ էր 'ի քաղաքացիս, զի թըշ-
նամեաց երկիւղ 'ի չափու ունէր
զնոսա և 'ի բարեկարգութեան:
Այլ իբրև անցին եւ երկիւղն այն
'ի մտաց, հեշտախտութիւն և ամ
բարտաւանութիւն ամոլք յաջո-
ղութե̃ն սողոսկեալ մտին 'ի ներքս:
Այսպէս 'ի ձախող դէպս անդ
ըղձացեալն խաղաղութի̃, դառն-
ագէտ և դժնդակագոյն 'ի յաջողս
գտաւ: Քանզի ազնուականք իշ-
խանութեամբն և ռամիկն ազա-
տութե̃ սկսան զեղծանել, իւրա-
քանչիւր զիւրն խնդրելով, յինքն
զամենայն ինչ ձգելով և յափշտա-
կութեամբ: Այսպէս յերկպա-
ռակել ամենայնի՝ հասարակապե-
տութիւնն 'ի միջի նոցա ճեղքեալ
պատառէր: Այլ կողմ ազնուա-
կանաց հզօր էր յոյժ. իսկ ռամիկն
զօրութիւն վայրատեալ 'ի խառ-

նիճաղանճ բազմութե՟ն՝ լոյծ էր
և տկար։ Ըստ հաճոյս սակաւուց
առանձին և 'ի պատերազմի վարէր
տեսչութիւն, և 'ի ձեռս նոցա էին
գանձք, գաւառք, ատենակալու֊
թիւնք, փառք և յաղթանակք։
Ժողովուրդն 'ի զինուորութեան
և 'ի չքաւորութեան ընկճեալ,
զաւարս պատերազմաց զօրավարք
'ի մէջ սակաւուց բաշխէին։ Դար֊
ձեալ և ընտանիք և սղածրի մանկ֊
տի զօրականին, եթէ սահմանա֊
կից հզօրագունի ումեք գտանէր՝
վտարէր մերժէր 'ի բնակութենէ
իւրմէ։ Այս օրինակ բռնութե՟, և
անչափ և անպայման ագահու֊
թեամբ յափշտակէին, յապակա֊
նութիւն գնէին, յաղարտ վարէին
զամենայն, ոչ ինչ ակն ածեալ 'ի
նուիրականաց իսկ և յաստուա֊
ծայնոց, մինչև ածին կործանումն
հասարակապետութեան։ Քանզի
իբրև գտան ոմանք յազնուակա֊
նաց՝ որ զճշմարիտ փառս լաւ քան
զանիրաւ բռնակալութիւն համա֊
րեցան, գրգռեցաւ քաղաքն, և ժո֊

ղովուրդն յուզէր իբր 'ի խառնի-
խուռն աղմկել տարերաց երկրի։

ԽԲ. Քանզի իբրև Տիբերիոս և
Կ. Գրակքոս, որոց հարքն 'ի պու-
նիկեան մարտի և յայլ պատերազ-
մունս մեծապէս վաստակեալ էին
'ի վերայ հասարակապետութե՟,
ձեռն արկին վրէժխնդիր լինել ա-
զատութեան ռամկին, և զաղկա-
ռուց անօրէնութիւն խայտառա-
կել. աւագանին յանցաւոր զայ-
րագնեալ մերթ 'ի ձեռն դաշնակ-
ցաց և Լատինաց, և մերթ 'ի ձեռն
հռովմայեցի ասպետաց՝ զորս ա-
կրնկալութե՟ իշխանութեան ու-
ծացուցանէր 'ի ժողովրդենէ, ընդ-
դէմ կալան գործոյ գրակքո-
սեանց. և նախ զՏիբերիոս և զկնի
ամաց զԿայիոս տրիբուն ռամկին
զմի յեռապետաց՝ որում յանձն
էր ածել գաղթականս, և որ 'ի
նոյն խորհուրդս եղբօրն յաջոր-
դեալ էր, ընդ Մ. Փուլուիոսի
Փլակկոսի սպանին։ Եւ թէպէտ
այսուիկ գրակքոսեանցն տենչ
յաղթութեան ոչ շատացաւ, սա-

կայն լաւ է զպարտութիւն յանձն առնուլ բարեաւ՝ քան չարեօք յաղթել անիրաւութեան ։

Արդ այսու յաղթութեամբ զառածեալ աղնուականք, զբազումս 'ի ժողովրդենէ 'ի սուր և յաքսոր զրաւեցին 'ի կենաց. այլ վտանգս այնու քան թէ զօրութիւն յաւելեալ անձանց ։ Մեծամեծք 'ի քաղաքաց կործանեցան, 'ի կամելն որ և է հնարիւք յաղթական լինել միմեանց, և չարաչար վրէժս 'ի պարտելոցն պահանջել ։ Այլ եթէ զհնարս երկաքանչիւր կողման և զամենայն սովորութիւնս քաղաքին ըստ իւրացն մեծութեան մի ըստ միոջէ ստուգապատում առնել կամիցիմ, ոչ բաւէ ժամանակ երկարութեան բանից ։ Դարձցուք ապա յառաջարկութիւն մեր ։

ԽԳ. Յետ ուխտին խաղաղութեան զոր եդ Աւղոս, և անարգ փախստեան զօրաց մերոց, իբրև Կ. Մետեղղոս և Մ. Սիղուանոս բդեաշխս կարգեալ բաժանեցին

յիւրեանս զգաստուս պետութե՛,
Նումիդիա վիճակեցաւ Մետեղ-
ղեայ՝ առն քաջի, որ Թէպէտ և
հակառակ էր ռամկին՝ այլ յեր-
կոցունց ևս կողմանց մեծարեալ
էր անկաշառ և արդարակորով:

Այն ինչ առեալ սորա զիշխա-
նութիւն զօրավարութեան, զայլն
ամենայն հաւասարապէս ընդ իշ-
խանակցին իւրում յանձանձեալ,
առաւել ևս առաջիկայ պատե-
րազմին միտ դնէր: Եւ ոչ վստա-
հացեալ ՚ի զօրականն զոր եգիտ,
զօրաժողով լինէր անդրէն, Թի-
կունս օգնականութե՛ ամենուստ
կոչէր. զէնս, նետս, երիվարս և
այլ հանդերձս մարտի պատրաս-
տէր. հանդերձ սոքօք և պաշար
առատ, և որ ինչ միանգամ նոր-
օրինակ պատերազմին պիտոյք էին
յոլով՝ հայթայթէր: Առ այս ա-
մենայն պատրաստութիւն ձեռն-
տու լինէր նմա ծերակոյտն իշխա-
նութեամբ, դաշնակիցք. Լատինք
և Թագաւորք նիզակակիցք կամա-
կար օգնականութեամբ. և համա-

ռօտ տատցեալ՝ քաղաքն համօրէն
ջանիւ մեծաւ գուն դնէր: Եւ
պատրաստեալ զամենայն որպէս
և կամէրն, խաղաց բդեաշխն 'ի
Նումիդիա. և քաջայոյս էին քա-
ղաքացիք ոչ միայն 'ի հնարս ա-
րութ̃է, այլ և 'ի սիրտ նորա ան-
մեղկելի 'ի մեծութ̃եց. զի ցայն-
ժամ ագահ ընչասիրութեամբ ա-
ւագանւոյն ընկճեալ և ակարա-
ցեալ էր մերոց զինուցս զօրու-
թիւն, և թշնամեացն հզօրացեալ:

ԽԴ. Եւ իբրև եհաս Մետեղ-
ղոս յԱփրիկէ՝ յանձն եղև նմա բա-
նակն 'ի Սպ. Ալբինեայ փոխա-
նակէ բդեշխին, վատթարացեալ,
դատարկապորտ, անժոյժ 'ի ամէ
վտանգաց և աշխատութ̃եց, բա-
նիւք քան արդեամբք խիզախելով,
աւարառու նիզակակցաց. կողոպ-
տիչ թշնամեաց, ինքնիշխան և ան-
սանձ: Այս անկարգութիւն զօ-
րացն առաւել հոգ և տագնապ
յաւելոյր նորոյ զօրավարին՝ քան
յոյս բարեաց և ակնկալութիւն
օգնականութեան՝ բազմութիւն

նոցին ։ Եւ Թէպէտ յապաղմամբ
ժողովոյն համառօտեալ էր ժա֊
մանակ ամարայնոյ, և յաջողու֊
թեամբ ելից իրացն գրաւեալ էին
միտք քաղաքացւոց, սակայն եդ՚ի
մտի Մետեղղոս չլինել ձեռնա֊
մուխ՚ի մարտ մինչև ըստ նախնի
կարգաց յաշխատութ̃ի և՚ի հրա֊
հանգ զզօրս կրթեալ ։ Քանզի Ալ֊
բին կարեվէր հարեալ ընդ բե֊
կումն եղբօր իւրոյ Աւղոսի և բա֊
նակի նորին, հաստատեալ էր՚ի
մտի չելանել յԱփրիկեայ, և ընդ
ամենայն ժամանակս զօրավարու֊
թեան իւրոյ յամարայնի ղակիշ
ածեալ նստէր, և ոչ տեղափո֊
խէր մինչև սախպեալ՚ի նեխոյ և
առ՚ի չգոյէ արօտից ։ Այլ և ոչ
ըստ զինուորութեան օրինաց գի֊
շերապահս ունէր, զի ըստ հաճոյս
իւրեանց մեկնէին զօրքն՚ի գրօ֊
շուց, և խառն՚ի խուռն ընդ պաշ֊
տօնեայս բանակին զտիւ և զգի֊
շեր Թափառական շրջէին, սա֊
պատակաւ արտօրայս յաղարս
վարէին և արշաւեալ՚ի գիւղս ա֊

ծէին կողոպուտ բազում, խաշն և
գերի, որովք 'ի վաճառականաց
գնէին գինի աղնիւ և այլ ինչ իրս
այսպիսիս. վաճառէին զցորեանն
տուեալ 'ի ռոճիկ՝ և զառօրեայ
հացն գնէին, և ընդ որ ինչ առել-
ոք կամ խորհել կարիցէ զատար-
կութեան և անառակ շուայտու-
թեան գործս՝ առաւելաւն 'ի բա-
նակի անդ գտանէր:

ԽԵ. Եւ սակայն 'ի դժուա-
րինսն յայնոսիկ ոչինչ նուազ քան
'ի պատերազմունս ընդդէմ Թըշ-
նամեաց մեծ և իմաստուն զաւ
Մետեղղոս, 'ի միջասահմանին կա-
ցեալ խստութեան և քաղցրու-
թեան: Քանզի նախ հրովարտա-
կաւ զճարակ զատարկութեան
արգել 'ի բանակէն. մի վաճառել
հաց և եփոյս 'ի բանակի, մի պաշ-
տօնէից բանակին ուղեկցել ընդ
զօրս, և մի սոսկական զինուորի
ունել 'ի բանակի և 'ի չուս ծա-
ռայ կամ գրաստ: Նոյնպէս և այ-
լոց իրաց խնամ տարեալ, ընդ ան-
կուռ ճանապարհս հանապազօր

զբանակն խաղացուցանէր ․ ապա եթէ այն թէ թշնամիք մերձ հասեալ կային, պատնէշս հրամայէր ածել և փոս շուրջանակի հատանել, գիշերապահս խիտ առ խիտ կարգէր, և անձամբ ընդ զօրապետս շուրջ գայր ․ և 'ի չուել զօրաց՝ էր զի ընդ առաջապահս, էր զի ընդ վերջապահս, և էր ուրեք զի 'ի բուն բանակին գնայր, զի մի օձանեսցէ ոք 'ի ռազմէն, զի ընդ դրօշս իւրաքանչիւր խուռն խաղայցեն, և զի իւրաքանչիւր ոք բարձցէ զզէն իւր և զպարէն ։ Այսպէս զառաջս կալեալ անկարգութեանց քան պատուհասիւք՝ 'ի սուղ ժամանակի զզօրսն հրահանգեաց ։

ԽՁ․ Ի սմին ժամանակի լուեալ Յուգուրթայ զգործս Մետելղոսի, և զի 'ի Հռովմայ իսկ գիտէր զանխառնելի լաւութիւն առնն, սկսաւ 'ի կատարած տարակուսի անկանել զիւրաց իւրոց, մինչև խընդրել անկեղծ մտօք անձնատուր լինել ։ Վասն որոյ դեսպանս ա-

զաչաւորս առ նա ինքն բդեաշխն
արձակեալ՝ վասն կենաց անձին և
որդւոյն իւրոյ պաղատէր, զայն
ամենայն 'ի կամս Ժողովրդեանն
Հռովմայ ապաստան արարեալ:
Այլ զի Մետեղղեայ կանխաւ ըզ-
փորձ առեալ գիտէր զազգին Նու-
միդացւոց զհաւատադրուժ բարս,
զյեղյեղուկ և զյեղափոխութեց
սիրող, ուրոյն յիրերաց զպատ-
գամաւորսն առեալ, և տակաւ
զնոսա 'ի փորձ մատուցեալ, և ոչ
օտարս 'ի խորհրդոց գտեալ՝ բա-
զում խոստմամբ յորդորէր, զի
զՅուգուրթ կենդանի, և կամ թէ
ոչ յաջողեսցի՝ սպանեալ տացեն
'ի ձեռս իւր: Իսկ վեր 'ի վերոյ
որ ինչ կամէրն հրամայեաց տա-
նել պատգամս առ Թագաւորն:
Յետ ոչ բազում ինչ աւուրց
քաջակիրթ բանակաւն խաղաց
Թշնամի 'ի Նումիդիա. չէր անդ
երկեան պատերազմի, հիւղք լի
մարդկութեամբ, երկրագործք և
անդէոց ջոկք 'ի դաշտս, և կու-
սակալք արքային 'ի քաղաքաց և

յաւանաց ընդ առաջ ելեալ բը-
դեշխին, ցորեան և համբարս բար-
ձեալ բերէին, պատրաստք 'ի կա-
տարել զամենայն հրամանս նորա:
Սակայն Մետեղլոս ոչինչ նուազ
քան եթէ թշնամիք մերձ կայցեն՝
ամենայն զգուշութեամբ առնէր
զչու բանակին. դէտս շուրջ ար-
ձակէր, և զայն ցոյց անձնատուր
գոլոյ Թագաւորին խաբէութիւն
համարեալ՝ հետազօտէր տեղի
դարանաց: Վասն որոյ ինքն ան-
ձամբ 'ի գլուխ կացեալ զօրուն ըն-
տիր ընտիր՝ բազմութեամբ պար-
սաւորաց և տիգաւորաց, և 'ի
վերջ բանակին Կայիոս Մարիոս
տեղակալ ընդ այրուձիոյն պահ
ունէր. աստի և անտի տողեալ
դաշնակցացն հեծելազօրք ընդ իշ-
խանութեամբ լեգէոնապետաց և
տախկանաց հետևակազօրուն, որ-
պէս զի խառն ընդ մեկնակազէն
զօրուն վանեսցեն զայրուձին թըշ-
նամեաց ուստ ուստէք և յարձա-
կեսցի: Քանզի Յուգուրթայ այն-
պիսի էր խորագիտութն, և այն-

քան տեղեկութիւն վայրաց, և զինուց հմտութիւն, զի 'ի մերձակայութեան նորա թէ 'ի բացակայութեան, 'ի պատերազմի արդեօք թէ 'ի խաղաղութեան առաւել էր 'ի նմանէ վտանգ, ոչ էր գիտելի:

ԽԷ. Ոչինչ հեռի 'ի Ճանապարհէն ընդ որ երթայր Մետեղղոս, էր քաղաք մի նումիդացւոց Վակկա անուն, շահաստան մեծ և հռչակաւոր ընդ բովանդակ թագաւորութիւն, անդ բազումք յազգաց իտալացւոց բնակեցեալ տուրևառիկ լինէին: Այս բդեաշխն առ 'ի փորձ մտաց բնակչացն մատեաւ, և 'ի կարգել անդ պահակապանս՝ եթէ ներէր պատեհութն տեղւոյն, հրամայեաց և ցորեան և զայլ ամենայն կարևորս մարտի հանդերձել. զմտաւ ածեալ, և յիրաւի, զի յաճախութիւն վաճառականաց ոչ միայն 'ի լռութն համբարուց զօրուն օգնէր, այլ և 'ի նպաստ ամենայն հանդերձանացն: Իսկ Յուգուրթ անդրէն

փութով դեսպանս արձակէր ա-
ղաչաւորս 'ի հաշտութիւն խաղա-
ղութե՛ , զամենայն ինչ բաց 'ի կե-
նաց իւրոց և որդւոց՝ 'ի Մետեղ-
ղոս ապաստան արարեալ: Զորս
բդեշխին ըստ առաջնոցն օրինակի
հրապուրեալ 'ի մատնութե՛ն՝ յետս
արձակէր , և առանց մերժելոյ
կամ խոստանալոյ զխաղաղութե՛ն
խնդրեալ յարքայէն , ելից խոստ-
ման դեսպանաց մնայր :

ԽԸ. Իսկ Յուգուրթ զՄետեղ-
ղեայ բանան ընդ գործոյն համե-
մատեալ, խելամուտ եղև զի 'ի
նոյն 'ի հնարս իւր դառնէր ինքն
ըմբռնեալ. քանզի Մետեղղոս բա-
նիւք խաղաղութե՛ն աւետեալ՝ ար-
դեամբք պատերազմ խիստ մղէր,
ապստամբեցուցանէր 'ի նմանէ
զքաղաքն մեծ , լուծանէր զերկիր
իւր , և զժողովուրդս հրապուրէր
'ի դաւաճանութիւն . վասն որոյ
հարկ լինէր նմա զէն առնուլ 'ի
պատերազմ: Հետազօտեալ ապա
զընթացս թշնամեաց , քաջալե-
րեալ 'ի յաղթութիւն քաջադի-

պուլթեամբ վայրացն, և յամե֊
նայն ազգաց յորոց և մարթէրն
տուարացուցեալ զգունդս զօ֊
րաց իւրոց, ընդ գողուղի ճանա֊
պարհ կանխեաց զառաջս էառ
Մետեղղեայ բանակին ։

Ի կողմն աշխարհին՝ որ 'ի բա֊
ժանման անդ անկեալ էր Ադեր֊
բաղայ, հոսէր 'ի հարաւոյ Մու֊
թուլ գետ, ուստի քսան ասպա֊
րիզաւ հեռի էր լեառն ըստ նմին
չափոյ երկայնանիստ, յամայի 'ի
բնէ և 'ի մշակութենէ ։ Եւ 'ի հով֊
տի անդ ամբառնայր բլուր ընդ֊
արձակ յոյժ, զարդարեալ վայրի
ձիթենեօք և մրտենեօք և այլովք
բազմադիմի ծառատնկովք, որք
բուսանին յաւազուտ և արևակէզ
երկրի ։ Իսկ 'ի միջնավայրն անա֊
պատ անջրդի՝ բաց 'ի գետա֊
փանցն, ուր էին թփուտք, և յա֊
ճախէին մշակք և խաշինք ։

ԽԹ. Անդ 'ի բլերն, զոր ընդ մէջ
ճանապարհին Մետեղղեայ ա֊
սացաք ընդարձակեալ զկայ էառ
Յուգուրթ, և ճակատեցոյց զզօրս

իւր ընդ երկայն: Փղացն և հե-
տևակախումբ զօրուն առաջնորդ
և իշխան կարգեաց զԲոմիլկար,
տուեալ նմա պատուէրս և հրա-
հանգս. և ինքն առ լերամբն դա-
սակարգեաց զընտիր ընտիրս հե-
ծելոց և հետևակաց, և ապա
շուրջ ընթացեալ ընդ գունդս և
ընդ վաշտս զօրականին, խրախոյս
յորդորանաց և աղերս մատու-
ցեալ ասէր. «Յուշ լիցին ձեզ
արութիւնքն ձեր առաջինք և յաղ-
թութիւն. զօրացարուք փրկել
զիս և զարքայութիւն իմ յանիրաւ
ագահութենէ հռովմայեցւոց.
պատերազմ է ձեզ ընդ այնոսիկ՝
զորս սուղ ինչ յառաջ նկուն ա-
րարեալ և ընդ լծով անցուցէք.
զօրավար նեթ այլ, բայց սիրտ
նոյն է նոցա: Որ ինչ պարան էր զօ-
րավարի՝ խնամ կալեալ արարի ընդ
ձեզ. ընտրեցի վայր դիպող, որ-
պէս զի կիրթք ընդ անհրահանգս
մարտնչել կարիցէք, և մի նուա-
զունք ընդ յոգունս, և անհրա-
հանգք ընդ պատերազմափորձ

զօրականին սախալիցէք 'ի կռիւ։
Հա՛պա, կազմ և պատրաստք 'ի
տալ նշանի գրոհ տուք 'ի վերայ
հռովմայեցւոց. որս այս լեցի մեզ
կամ բնաւ խոկ վաստակոց և յաղ-
թութեանց լրումն և հաստատու-
թիւն, և կամ սկիզբն ամենայն
երկանց և աղետից"։ Ապա զայր
այր 'ի սպայից յառաջ կոչեալ,
զորս միանգամ վասն պատերազ-
մական արութեանցն պարգևօք և
պատուով բարձրացուցեալն էր,
յուշ ածէր նոցա զբարերարու-
թիւնսն, և օրինակս զնոսա այլոց
կացուցանէր։ Եւ զի՞ մի մի ասա-
ցից, զիւրաքանչիւր ոք 'ի զօրուէն
ըստ բարուցն և ըստ բնաւորու-
թեան՝ խոստմամբ, սպառնալեօք,
աղաչանօք և այլ ամենայն ազգի
ազգի հնարիւք 'ի մարտ պատ-
րաստէր։

Յայնմ պահու գայր իջանէր
Մետեղղոս 'ի լեռնէն, ոչ գիտե-
լով ինչ բնաւ զթշնամեաց, և չկա-
րէր 'ի սկզբան անդ գուշակել
զնոր տեսիլն. քանզի այրուձին

նումիդացւոց 'ի թփուսս անդ ոչ բովանդակ էր ծածկեալ, զի ոչ բարձունք էին թուփքն, սակայն առ դրից տեղւոյն և զի դարանամուտ լեալ թագուցեալ էին զանձինս և զգրօշս իւրեանց խառն 'ի խուռն ինչ երևէին, այլ ապա ընդ հուպ գիտացեալ զդաւն, վայրիկ մի զտեղի էառ. անդ փոխեալ զկարգ զօրականին, զաջ թև բանակին, որ մերձաւորագոյն էր 'ի թշնամին՝ ամրացոյց եռապատիկ, 'ի մէջ հետևակազօրուն սփռեաց զպարսաւորս և զաղեղնաւորս, և զայրուձին համօրէն 'ի թևս բանակին բաժանեաց. և ըստ ժամուն փութոյ համառօտիւ ըզզօրականն խրախուսեալ 'ի դաշտ անդր մղեաց զճակատն, զառաջս բանակին նովին կարգաւ առաջեղեալ յահեակ :

Ծ. Այլ իբրև ետես զի ոչ խլրտէին նումիդացիք 'ի բլրոյն, երկեաւ Մետեղղոս թէ գուցէ առ 'ի չգոյէ անդ ջրոյ յամարային եղանակին սպառեսցի ծարաւ-

հիւծ զօրականն, և աճապարեալ արձակեաց զՀռութիլիոս տեղակալ թեթևընթաց հետևակօք և հեծելովք ոմամբք հասանել ունել զափունս գետոյն 'ի բանակետղ. կարծէր բդեաշխն զի թըշնամիք ստէպ յարձակմամբ առ 'ի կողաց արգելուցուն նմա զճանապարհն, և չվստահացեալ 'ի զօրութիւն զինուց իւրեանց՝ աշխատութեամբ և ծարաւով տագնապեցուսցեն զզօրսն։ Ապա, որպէս հարկն և տեղին պահանջէր, տակաւ՝ որպէս իջեալն էր 'ի լեռնէն յառաջ խաղայր, զՄարիոս 'ի բուն բանակին կացուցեալ, և ինքն 'ի հեծելազնդի 'ի ձախոյ թևին, որ յառաջախաղացն էր 'ի չուն։

Իսկ Յուգուրթ իբրև ետես զվերջապահս բանակին Մետեղղեայ յառաջ անցեալ քան զառաջնապահս իւր, իբր երկու հազար զօրօք հասեալ կալաւ ըզլեառնն՝ ուստի իջեալն էր Մետեղղոս, զի մի 'ի խոյս տալ թշնամեաց՝ լիցի նոցա այն տեղի ապա-

ւինի , և տապա մարտկոց ։ Հապա ,
ետ յանկարծակի նշան , և յար-
ձակեցաւ 'ի թշնամիս ։ Կէսք 'ի
նումիդացւոց զվերջապահս հար-
կանէին , այլք յաջ և յահեակ
գրոհ տային , 'ի նեղ և 'ի տագ-
նապ զհռովմայեցիս արկանէին ,
ամենայն ուրեք զամենայն կարգս
նոցա աղմկէին ։ Որ քաջասրտա-
գոյնք իսկ ընդդէմ թշնամւոյն դի-
մեալքն էին , տեղի տային 'ի կե-
ղակարծ մարտէն՝ նետահարեալք
'ի բացուստ , և ոչ բուեալ փո-
խանակել նոցա վէրս կամ գալ 'ի
կռիւ ։

Քանզի հեծելազօրն յառաջա-
գոյն խրատեալ 'ի Յուգուրթայ՝
'ի հալածելն 'ի հռովմայեցւոց ոչ
կուռ 'ի մի վայր ամնդէր , այլ
սփուէր ցիր և ցան ։ Եւ այսպէս
նումիդացիք առաւելեալք թուով
իբրև ոչ կարէին արգելուլ զհռով-
մայեցիս 'ի հետամուտ լինելոյ .
հարկանէին շուրջ 'ի թիկանց և
'ի կողից զցրուեալ գունդս նոցա .
և եթէ դիպողագոյն թուէր խոյս

տալ ընդ բլուրն քան ընդ դաշտ, երիվարք նոցա քաջավարժք էին ընդ Թփուտս սրանալ, ուր զձիանն մեր արգելոյր մացառախիտ դըժուարութիւն վայրացն ։

ԾԱ. Բայց մարտն յեղյեղուկ երկուստեք անպարտելի՝ ողորմ և դժնեայ ընծայէր տեսիլ. կէսք 'ի խմբից քակտեալ տեղի տային, այլք նոցին հետամուտ, ոչ կարգաց և ոչ դրօշուց էր պահպանութիւն. ուր ուրեք և հասանէր ումեք վտանգ, անդ զդէմ ունէր, անդէն փոխանակէր զհարուած ։ Ջէնք և նետք, ձիանն և մարդիկ, նումիդացիք և հռովմայեցիք խառն 'ի խուռն, ոչ խորհրդոց և ոչ հրամանաց ազդեցութեն, այլ զամենայն ինչ դէպք տնօրինէին ։ Օրն տարաժամէր և տակաւին անյայտ էին ելք մարտին, մինչև 'ի պարտասել ամենեցուն յաշխատութենէ և 'ի տօթոյ ։ Իբրև ետես Մետեղղոս զնումիդացիս թուլացեալս 'ի դիմակալութիւն, տակաւ 'ի մի վայր զզօրականն է-

ած. կարգս եդ նոցա, և զքառեակ
լէգէոնական գունդս ընդդէմ հե-
տևակազօրուն թշնամեաց կացոյց,
որ մեծաւ մասամբ 'ի բարձունս
բլրոյն խոնջեալ նստէին։ Աղա-
չէր միանգամայն և յորդորէր ըզ-
զօրականն, մի՛ լքանել, և մի՛ փա-
խստական թշնամւոյն թողուլ
զյաղթութիւն։ Չիք ձեզ բանա-
կետղ, ասէր, և ոչ տեղի ապաւի-
նի, 'ի զէնս է ամենայն։ Այլ և
ոչ Յուդուրթ անգործ կայր յայն-
ժամ, շուրջ գայր, քաջալերէր
զզօրսն, վարէր զնոսա անդրէն 'ի
մարտ, և ինքն անձամբ 'ի գլուխ
այրընտիր զօրականին՝ զամենայն
ձիգն 'ի գործ արկանէր, 'ի թի-
կունս հասանէր իւրոցն, զտարա-
կուսեալս 'ի թշնամեաց հասեալ-
վանէր, և զզօրաւորաց 'ի բա-
ցուստ պատերազմաւ զդէմ ու-
նէր։

ԾԲ. Այս օրինակ մրցէին յիւ-
րեանս զօրավարքն երկոքին արք
հռչակապ. քաջութեամբ հաւա-
սարք, այլ ոչ ևս զօրութեամբ։

Զի Մետեղղեայ քաջք էին զօրա֊
կանք. այլ տեղին դժպատեհ. իսկ
Յուգուրթայ բաց 'ի զօրացն՝ ամե֊
նայն ինչ բարեպատեհ: Իբրև 'ի
միտ առին հռովմայեցիք զի չէր
նոցա տեղի փախստի, և ոչ հնար
զԹշնամին ձգելոյ 'ի պատերազմ.
և զի օրն ընդ երեկս էր՝ 'ի բլուրն
կոյս գրոհ ետուն ըստ հրամանի
զօրավարին: Իսկ Նումիդացիք կո֊
րուսեալ զբարձրաւանդակն և 'ի
պարտութիւն մատնեալ դարձան
'ի փախուստ. բայց նուաղունք 'ի
նոցանէ կորեան, այլոցն զերծեալ
սրարշաւ՝ անտեղեակ գոլով Թըշ֊
նամեացն վայրաց գաւառին: Յայ֊
նըմ վայրի Բոմիլկար, որ հրամա֊
նատար 'ի Յուգուրթայ կարգեալ
էր 'ի վերայ փղաց և հետևակա֊
զօրուն, որպէս 'ի վեր անդր ասա֊
ցաք, իբրև ետես զՌուԹիլիոս
անցեալ յառաջ, էած տակա
ւզօրս իւր 'ի տեղի տափարակ. և
'ի փութալ զինել նորա 'ի գետն,
ինքն պատեհ առեալ լռիկ հան֊
դարտիկ Ճակատեցոյց զիւրսն, և

խնամ կալեալ լրտեսէր զգնացս
թշնամւոյն ։ Իսկ իբրև գիտաց զի
Հռութիլիոս նստէր աներկեան ,
և Յուգուրթայ պատերազմին
բարձրանայր շռինդն աղաղակի ,
երկեաւ զի մի գուցէ Հռութիլիոս
իրազեկ լեալ աճապարեսցէ իւ-
րոցն պարտասելոց 'ի թիկունս ,
զճակատ բանակին՝ զոր առ կաս-
կած տկարութեան զօրականին
անձուկ էր յօրինեալ առ 'ի խա-
փանել զչու թշնամւոյն , ընդար-
ձակեաց և խաղացոյց ընդդէմ բա-
նակի տեղակալին ։

ԾԳ ․ Դէտ ակն 'ի վեր ամբար-
ձեալ տեսին յանկարծ հռոմայե-
ցիք մրրիկ փոշւոյ մեծ ․ և քան-
զի մացառախիտն որ 'ի դաշտին
արգելոյր զտեսիլ բանակին , հա-
մարեցան 'ի սկզբան զփոշին ան-
ջրդի երկրին վեր 'ի վայր 'ի հող-
մոց յուզեալ ․ այլ իբրև տեսին զի
յարատեէր մրրիկն և ըստ յառաջ
խաղալ բանակին գայր մերձենայր
առ նոսա , ծանեան զգալուստ
թշնամեաց , և զէն առեալ առա-

Զի պատնիշացն ճակատեցան կա-
ցին ըստ հրամանի զօրավարին ։
Իսկ իբրև բանակք երկոքին ե-
կին հասին առ միմեանս , զա-
ղաղակ հարեալ դիմեցին 'ի վե-
րայ միմեանց ։ Նումիդացիք զա-
ռաջինն յօգնականութե̃ փղացն
յուսացեալ՝ ժուժկալէին քաջու-
թեամբ. այլ 'ի տեսանելն զնոսա
արգելեալս յոստոց ծառոց ցիր
և ցան պաշարեալս 'ի թշնամեաց ,
'ի փախուստ դարձան. և բազումք
զէնընկեց լեալ , օգնականութե̃
գիշերոյ և մերձակայ բլրոյն ան-
վ̃ասք ճողոպրեցան ։ Զորք ևեթ
'ի փղացն գերի վարեալ , այլք առ
հասարակ թուով քառասուն ըս-
պանան ։ Իսկ հռովմայեցիք թե-
պէտ վաստակաբեկք 'ի յերկար
ջուոյն , պատնէշս ածելոյ և 'ի
պատերազմէ , սակայն 'ի յամել
Մետեղղեայ առաւել քան զկար-
ծիս՝ անդակաղմք և զգուշաւորք
ելին ընդ առաջ , զի դարանակա-
լութիւնք Նումիդացւոց չներէին
նոցա յանհոգս լինել ։ Եւ իբրև

ոչինչ հեռի էին յիրերաց, 'ի մը-
թան գիշերոյ զառաջինն զթշնա-
մեաց կարծելով յարձակումն՝ ար-
հաւիրս 'ի միմեանս և աղմուկս
շփոթի գոչմամբ և աղաղակաւ ար-
կանէին. և եթէ ոչ երկուստեք
հեծեալք ոմանք 'ի վերայ հասա-
նէին իրացն, նախճիր աղետալի
յանդուգն վրիպակաւ 'ի տեղւոջ
անդ գործէր: Անդ յանկարծ ընդ
երկիւղին փոխանակէր խնդու-
թիւն, զօրականք զուարթագին
ձայն տային միմեանց, լռել և պա-
մել զանցս իրերաց. և իւրաքան-
չիւր զանձին քաջութիւն յերկինս
ամբառնայր: Այսպիսի բնաւո-
րեալ են մարդիկ, 'ի յաղթութե՟՝
վատաց իսկ պարծել, իսկ 'ի ձա-
խողակս լքանել ևս և քաջաց:

ԾԴ. Զաւուրս չորս եկաց
Մետելլոս 'ի բանակին 'ի դար-
ման վիրաւորաց, և ըստ օրինի զի-
նուորութեան բաշխէր պարգևս
քաջաց և զամենեսեան դրուա-
տէր 'ի ժողովս, և շնորհս ունելով
յորդորէր զնոսա 'ի նոյն արութի՟

և յառաջինկայ պատերազմունս. և
ասէր. «Շատ իսկ մարտերուք 'ի
վերայ յաղթութեան, թեթևա-
գոյն ինչ թուոյ ձեզ փաստակել
յաւար և 'ի կողոպուտ թշնա-
մեոյն»: Եւ արձակէր զդաստալէք
զօրականն և արս քաջս 'ի լրտե-
սել ո՞ւր և յի՞նչ խորհուրդս էր
Յուգուրթ, սակաւո՞ւք ոմամբք
թէ բանակաւ գայր, և թէ հա-
մարէր զանձն պարտեալ: Բայց
նորա խոյս տուեալ էր յանտառս
և 'ի վայրս ամուրս 'ի բնէ, և անդ
կազմէր բանակ բազմաձեռն 'ի
բերդ և 'ի վատ ամբոխէ 'ի մշակու-
թիւն և 'ի տուարածական կեանս
վարժելոց քան 'ի պատերազմ:
Հարկ իսկ էր այսմ այսպէս պա-
տահել, զի հեծեալք ևեթ նու-
միդացիք 'ի փախչել արքայի եր-
թեալ ընդ նմա, այլք առ հասա-
րակ ցրուեին ըստ հաճոյս, չհա-
մարեալ այս նոցա 'ի յանցանս
ըստ սովորութեան երկրին: Իբ-
րև ետես Մետեղղոս զթագաւո-
րին վայրագ միտս զի կրկին ձեռն-

տրկէր 'ի մարտ , յոր պատերազ-
մասէր ցանկութիւն ևեթ մղէր
զնա , և զի վճռական էր իւր գալ
ընդ թշնամիս 'ի զէն , և զի դար-
ձեալ առաւել տուժէին իւրքն
յաղթութեամբ քան թշնամիք 'ի
պարտութենէ , խորհուրդ կալաւ
ոչ յարձակմամբ և ոչ կարգեալ
ճակատու պատերազմել , այլ այ-
լով իմն հնարիւք : Վասն այսորիկ
մխեցաւ 'ի բազմահարուստ գա-
ւառս՝ նումիդիոյ, յապականութե
եդ զարտորայս , և զբազում ամ-
րոցս և աւանս անզէնս և անպա-
հանորդս կալեալ հրձիգ արար ,
որքունս առ հասարակ սրոյ ճա-
րակ ետ , զայլն ամենայն մատ-
նեաց յաւար զօրականին : Յար-
հաւրաց անտի բազումք դիմէին
անձնատուր լինել 'ի հռովմայե-
ցիս , զցորեան և զայլ պէտս նո-
ցա լիով հայթայթեալ . և Մե-
տեղղոս ուր և կարեար համարէր
պահակապանս դնէր : Այս ամե-
նայն առաւել քան պարտութիւն
իւրոցն ահաբեկէր զթագաւորն .

զի որ զամենայն յոյս 'ի փախըս-
տեան եդեալ՝ բռնադատիւր զհետ
լինել թշնամւոյն, և որ չզօրէրն
զիւր տեղիս պահել՝ ստիպէր 'ի
վայրս դրաւեալս յայլմէ պատե-
րազմ մղել: Ապա յանհնարինս
անդ խորհուրդ կալեալ որ ինչ
օգտակարագոյն թուէր նմա, ե-
թող 'ի տեղւոջ անդ զմեծ մասն
բանակին և ինքն ընտիր հեծելովք
հետամուտ եղև Մետեղղեայ, և
գիշերախառն ընդ դողուղի շա-
ւիղս անկաւ յեղակարծում 'ի վե-
րայ հռովմայեցւոց որ ցիր և ցան
կային: Ցորոց բազումք անզէնք
կոտորեցան և բազմագոյնք 'ի գե-
րութի վարեցան. և ոչ ոք անվը-
նաս կարաց զերծանել. և նումի-
դացիք՝ մինչև 'ի բանակէն օգնու-
թիւն հասեալ, մեկնեցան 'ի մօ-
տաւոր բլուրս որպէս հրաման էր
նոցա:

ԾԵ. Բայց 'ի Հռովմ ցնծու-
թիւն մեծ էր 'ի լուր քաջութեցն
Մետեղղեայ, թէ որպէս զանձն
և զզօրս իւր նախնեացն կարգօք

յորդորեալ,՚ի ձախող վայրս յաղ-
թող լեալ էր քաջութեամբ, կա-
լեալ զերկիր թշնամեաց, և զգո-
ռոզացեալն վատութեամբ Աւ-
ղոսի զՅուգուրթ՝ ՚ի նենգ արկեալ
էր յանապատս և ՚ի փախուստ ա-
պաստանել: Հրաման ետ ծերա-
կոյտն վասն յաջողութեան պա-
տերազմին գոհութիւնս դիցն ան-
մահից մատուցանել. և քաղաքն
բազմահոգ և երկմիտ զելից մար-
տին՝ յուրախութիւն փոխէր, և
համբաւ Մետեղղեայ պայծառա-
նայր: Վասն այնորիկ և Մետեղ-
ղոս մտադիւրագոյն ևս ձգնեալ
ամենայն հնարիւք փութայր ՚ի
յաղթութիւն, բայց զգուշանայր
չտալ ուստեք տեղի թշնամւոյն,
և ուշ ՚ի կուրծս առնէր զի զհետ
փառաց յաջորդէ նախանձ: Սո-
րին աղագաւ ըստ պայծառանալ
անուան նորա յաճախէին նմա
հոգք, և զկնի դարանակալութե՜ն
Յուգուրթայ ոչ ևս թողոյր զօ-
րացն ասպատակել: Այլ ՚ի պէտս
ցորենոյ և յարգի հետևակա-

խումբք շուրջ՚ի հեծելոց առ հա-
սարակ պատսպարեալ գնային. և
մասին ինչ զօրացն ինքն բդեաշխն,
և այլոց Մարիոս առաջնորդէր:
Ոչ ևս ասար հարկանէին, այլ՚ի
հուր զերկիրն մատնէին. յերկուս
վայրս ոչինչ հեռի յիրերաց բա-
նակէին. և ուր պէտք լինէին օգ-
նականութեան՝՚ի մի վայր գային.
իսկ ուր չէին պէտք՝ ինքնուրոյն
երկաքանչիւր մարտնչէին առա-
ւել ևս խուձապ և արհաւիրս ար-
կանել ՚ի թշնամին: Յայնմ վայրի
Յուգուրթ հետամուտ լեալ ընդ-
բլուրս՝ ժամ պատեհ խնդրէր և
վայր քաջագէպ կռուոյ. ուր և
լսէր զգալուստ թշնամւոյն, յա-
պականութիւն գնէր զարօտս և
զաղբիւրս՝ որ նուազունք իսկ էին
անդ: Ի զի ՚ի վերայ Մետեղղեայ,
և է զի ՚ի վերայ Մարիոսի դիմէր,
ընդ վերջապահսն բախէր, և ան-
տի դարձեալ՚ի բլուրս ամփոփէր.
մերթ աստ և մերթ անտի սպառ-
նայր, ոչ՚ի կռիւ համարձակէր
և ոչ դլայր դադարէր, շատ հա-

մարէր անգործ զԹշնամին կա֊
ցուցանել:

ԾԶ. Բդեաշխն հռովմայեցի
տագնապեալ 'ի դարանից սու֊
խին, և ոչինչ կարացեալ ձգել
զնա 'ի Ճակատ պատերազմի, խոր֊
հուրդ կալաւ զքաղաքն մեծ զՋա֊
մա, որ էր գլխւքն իւր դուան
համարեալ և ամրոց Թագաւորու֊
Թեանն՝ առնուլ մարտիւ պատե֊
րազմաւ, զի անդ 'ի Թիկունս պա֊
շարելոցն յուսայր աճապարել
Յուդուրթայ, և 'ի կռիւ կաքա֊
ւել: Այլ նորա 'ի դասալիք փա֊
խստական զինուորաց իմացեալ
զխորհուրդ Մետեղղեայ՝ հապ֊
ճեպ տագնապաւ յառաջեաց
քան զնա, խրախուսեաց զքեր֊
դակալս վերամարտիկ լինել քա֊
ղաքին, և յաւել նոցա յօգնակա֊
նուԹիւն զզօրս հատուածեալս 'ի
Թշնամւոյն, որ հաւատարմագոյնք
էին 'ի զօրս Թագաւորին՝ ոչ ևս
կարելով լինել դասալիք, և խոս֊
տանայր ևս նոցա գալ հասանել
ինքնին ընդ հուպ բանակաւն: Եւ

որպէս կարգեալ յօրինեալ զա-
մենայն, մեկնեցաւ ընդ գօղուղն·
և յետ սակաւ միոյ լուեալ, զի
Մարկոս զօրահատոյց լեալ գնայր
զցորենոյ 'ի Սիկկա քաղաք, որ
նախ քան զայլս յետ պարտութե̃
թագաւորին նշկահեալ էր, զորըն-
տիր արարեալ յայրուձիոյն՝ դի-
մեաց անդր 'ի գիշերի, և ընդ հը-
ռովմայեցիս՝ որ այն ինչ ելանէին
'ի քաղաքէն՝ սաստկապէս բախե-
ցաւ. և ձայն բարձեալ գոչէր 'ի
յորդոր սիկկացւոց. «Գրոհ տուք
'ի թիկանց հետեւակազօրուն, պա-
տեհ մեծի արութեան շնորհէ
մեզ բաղդն. զայս արարեալ ինձ
զթագաւորութիւնս և ձեզ զա-
զատութիւն և զանքոյթ կեանս
հայթհայթեսջիք»: Եւ եթէ չէր
Մարկոսի աճապարեալ յափըշ-
տակել զդրօշն և արտաքս քան
զդուռն ելանել, ապաքէն ամե-
նեքեան կամ մեծ մասն սիկկա-
ցւոց հաւատադրուժք գտանէին.
այնչափ յեղյեղուկ են նումիդա-
ցիք: Եւ գունդն յուղղութեան

վայրէկ մի ժուժկալեալ յորդո-
րանօք արքային, ապա 'ի բուռն
զօրութենէ թշնամւոյն վարեցան
'ի փախուստ՝ ոչ մեծ ինչ կրեալ
կոտորած:

ԾԷ. Եւ եհաս Մարիոս 'ի
Զամա: Քաղաքս այս 'ի տափա-
րակ տեղւոջ կառուցեալ՝ չէր ինչ
ամուր 'ի բնէ, այլ ձեռագործ ամ-
րացեալ. ոչինչ 'ի կարեւորաց պա-
կասէր անդ, զինուք և զօրօք բազ-
մօհարուստ: Արդ Մետեղղեայ
տուեալ զամենայն պատուէրս՝
որ ինչ 'ի դէպ էր տեղւոյն և ժա-
մանակին, էած շուրջ զնովաւ
զքանակն, և հրամայեաց զօրա-
պետացն ում ուրեք պարտն էր
ունել պահ: Եւ ապա 'ի հարկա-
նել փողոյն՝ ձայնք խրախուսանաց
հնչեցին ամենուստ 'ի գոչումն ա-
հեղ: Այլ ոչինչ երկեան Նումի-
դացիք, կացին մնացին անսա-
սան և անշփոթ, և սկսան մարտն:
Հռովմայեցիք այլ իւրաքանչիւր
ըստ իւրում Ճարտարութեան
կէսք 'ի հեռուստ կապարեայ գըն-

տօք և քարամբք մարտնչէին յա-
ջորդելով իրերաց . այլք զհիմունս
պարսպաց բրէին , և կէսք ընդ
սանդուղս վերելակէին խառ-
նել զպատերազմ ։ Սոցին ընդդէմ
քաղաքացիք վէմս մեծամեծս 'ի
մօտակայս Թաւալէին , ևիւս և
վիրգս և խանձողս ծծմբախառն
նաւթիւ բորբոքեալ Թօթափէին ։
Եւ ոչ այնոքիկ որ կային 'ի բա-
ցեայ՝ էին անվտանգ վասն եր-
կիւղին զմիտս նոցա խուճապելոյ .
քանզի բազումք հարեալք 'ի նե-
տից , որ 'ի մարտկաց անտի և 'ի
մանգղիոնաց արձակեալ՝ վիրաւո-
րեալք անկանէին . և նոյն վտանգ՝
Թէ և ոչ նոյն համբաւ քաջաց և
վատաց 'ի վերայ կայր ։

ԾԸ . Եւ մինչդեռ այս մարտ
պատերազմի զպարսպօքն Ջամայ
մղէր , յեղակարծուց Յուդուրթ
բազմաձեռն գնդաւ դիմեաց 'ի
բանակ Թշնամւոյն . և քանզի նո-
քա յանհոգս կային՝ անկասկածք
ամենեքին 'ի յարձակմանէ , ընդ
դուռն զակշին գրոհ եա 'ի ներքս։

Իսկ մերքն 'ի յեղակարծ երկիւղէն
պակուցեալք՝ այր իւրաքանչիւր
ըստ մասին Թելադրանաց կէսք 'ի
փախուստ և կէսք 'ի զէնս աՃա-
պարէին, և բազումք վիրաւոր
կամ դիտապատ անկանէին: Եւ
յայնքան բազմութեանն ոչինչ ա-
ւելի քան զքառասուն այր 'ի յուշ
հռովմէական անուան խումբ ա-
րարեալ 'ի բարձրագոյն ուրեք
վայրի զտեղի կալան, և ժուժկա-
լեալ ընդդէմ ամենայն բռնութ̃ե
Թշնամւոյն, զնետս ձգեալս յիւ-
րեանս յետս ընդդէմ առաքէին,
և սակաւք զբազմաց 'ի դերև ըզ-
ձիգն զօրութեան հանէին: Իսկ
'ի մերձ մատչել Նումիդացւոց՝
նոքա առաւել եւս քաջութ̃ի ցու-
ցեալ մեծաւ բռնութեամբ վա-
նէին զնոսա, խորտակէին և 'ի փա-
խուստ դարձուցանէին: Յայնմ
վայրի Մետեղղոս որ ուժգինս
կռուէր ընդ քաղաքին, լուեալ
յետ կուսէ շռինդն պատերազմի
և Թշնամեաց, դարձոյց զերիվարն.
և տեսեալ զդէմ փախստի զօրաց

յինքն կոյս, գուշակեաց զի իւրոց անտի էին փախստեայք, և աճապարեալ փութացոյց զհեծելազօրն ամենայն 'ի բանակ անդր, և զՄարկոս անդէն ընդ հետևակախումբս դաշնակցաց. և աղաչէր զնա արտասուօք առ սէր բարեկամութեան և հասարակաց պետութեան մի՛ հանդուրժել ընդ նախատինս յաղթական բանակին, և մի՛ զթշնամիս անպատուհաս թողուլ: Նա արագ արագ կատարեաց զհրամանն: Իսկ զօրացն Յուգուրթայ 'ի պատնիշացն մերոց արգելեալ, կէսք ընդ պատուարս դահավէժ լինէին, այլք ընդ անձուկս խռնեալ զիրեարս խափանէին, մինչև բազմաց կորըստեամբ՝ յամուրս ուրեք պատըսպարել: Բայց գիշերոյ 'ի վերայ հասեալ, Մետեղղոս առանց 'ի գլուխ հանելոյ զգործ պատերազմին, դարձ առնէր զօրօք 'ի բանակն:

ԾԹ. Ի վաղիւ անդր մինչև անդէն յարձակեալ 'ի վերայ քա-

ղաքին՝ զհեծելազօրն ամենայն
յայն կողմն, ուստի Թագաւորին
էր գալուստ՝ կարգէր 'ի պահ ա-
ռաջին բանակին, և զդրունան և զմօ-
տակայ վայրս յանձն առնէր հա-
զարապետաց զօրուն. ապա դի-
մէր ընդ առաջնոյ աւուրն 'ի վե-
րայ քաղաքին և զպարիսպս նորա
հարկանէր: Յայնմ վայրի Յու-
գուրթ գաղտաբար յեղակար-
ծում 'ի վերայ մերոցն յարձակի.
'ի սկզբան անդ յառաջապահքն
խռովեալ խուճապին, այլ արագ
հասանէն նոցա այլք յօգնակա-
նութիւն: Չէր իսկ մարթ նումի-
դացւոց յերկար ընդդէմ նոցա
ժուժկալել, եթէ ոչ համախըմ-
բեալ հետևակաց ընդ հեծելազօ-
րուն նախճիր մեծ 'ի խառնուրդս
անդ պատերազմին գործէին: Ո-
րով նոցա խրախուսեալ, ոչ և՛
որպէս սովորութիւն է հեծելա-
զօրուն 'ի մարտի՝ տեղի ետուն յե-
վանելոյ զթշնամին, այլ ձիարձակ
'ի վերայ նորա դիմեալ աղմկէին
խառն 'ի խուռն զռազմ և զկարգ

Ճակատուն , և իբր գրեթէ պար֊
տեալ մատնէին զնա քաջամար֊
տիկ հետևակազօրուն իւրեանց ։

Կ . Ի նմին ժամանակի պատե֊
րազմ սաստիկ էր առ Զամայ ,
իւրաքանչիւր 'ի զօրավարաց և 'ի
հազարապետաց ուր հրամայէրն՝
անդ առաւել վառեալ բորբոքէր
զխազմն , այր այր 'ի նոցանէ յիւր
զօրութեն առաւել վառահացեալ
քան յընկերին ։ Նոյն օրինակ և քա֊
ղաքացիքն Ճգնէին . մարտ տային ,
առ 'ի մարտ պատրաստէին յղձա֊
գոյնք վիրաւորելոյ զթշնամին քան
անձանց պահ ունելոյ ։ Զայն աղա֊
ղակի խրախուսանաց , խնդութե
և հեծութեան , դարձեալ և զի֊
նուց չկահիւն և շառաչ խառն
յերկինս ելանէին , և նետք երկ֊
ուստէք թռուցեալ թօթափէին ։
Իսկ ամրականքն 'ի գլալ հակա֊
ռակամարտիցն սուղ մի , 'ի պա֊
տերազմ հեծելազօրուն մտ ե֊
գեալ դէտ կային ։ Եւ ըստ ելից
իրացն Յուզուրթայ՝ մերթ խնդա֊
գինս և մերթ ահաբեկս էր տե֊

սանել զնոսա. և որպէս եԹէ զի-
նուորակցացն իւրեանց մօտ կա-
լով 'ի լուր և 'ի տեսիլ, կէսք
խրախուսէին զնոսա, այլք խրատ
տային, ձեռամբացի կամ 'ի ձև
մարմնոյ ցուցակի զխորհուրդս մը-
տացն յայտնէին, մերԹ իբր 'ի վը-
տանգէ խոյս տալով և մերԹ իբր
նետաձիգ լինելով այոր անդր տա-
րուբերեալ շարժէին: Զայն ամե-
նայն տեսեալ Մարկոսի որ յայնմ
կողման զօրավարէր, դլացոյց խոր-
հրդով զգործ մարտին իբր անյոյս
զելից իրացն լեալ, և Թողոյր զնու-
միդացիս անխռով 'ի զնին կռուոյ
արքային: Եւ մինչդեռ նոքա յակ-
ձիւս կային, ինքն յեղակարծում
մեծաւ զօրուԹե̃ յարձակեցաւ 'ի
պարիսպն. և իբրև զօրքն ընդ սան-
դուղս 'ի վեր սողոսկեալ` մերձ 'ի
վեր անդր հասեալ կային, ըն-
Թացան ամբականք, վէմս, խան-
ձողս և նետս 'ի նոսա ԹօԹափել:
Ի սկզբան անդ մերքն դիմակալե-
ցին. այլ իբրև կէսք 'ի սանդղոցն
խորտակեալ ԹօԹափեցան վերև-

լեակք, այլք այսր և անդր ուր և
կարացինն փախեան, սակաւք 'ի
նոցանէ ողջանդամք և բազումք
կարեվէրք։ Եւ գիշերոյ 'ի վերայ
հասեալ դուլ արար մարտին։

ԿԱ. Իբրև ետես Մետեղղոս
զի 'ի դերև ելին խորհուրդք իւր,
և քաղաքն էր անառիկ, և զի Յու֊
գուրթ՝ եթէ ոչ կազմէր դարան
կամ գտանէր զպատեհութիւն վայ֊
րաց՝ ոչ տայր պատերազմ, և զի
դարձեալ 'ի վերջ կոյս ամառն
խոնարհէր, 'ի բաց հեռացաւ 'ի
Զամայ. և 'ի քաղաքս, որ նշկա֊
հեալ էին յարքայէն, և դիւրքն և
պատուարօք ամրացեալ՝ պահա֊
կապանս եդ։ Իսկ այլոց զօրաց 'ի
գաւառի անդ մերձ 'ի Նումիդիա
ետ ձմերել։ Եւ ոչ ըստ սովորու֊
թեան այլոց զժամանակն զայն 'ի
հանգստի և 'ի դրդանս անցոյց.
այլ քանզի զինուք ոչ յաջողէր
պատերազմ, ձեռն արկ դարանա֊
կալ լինել Թագաւորին 'ի ձեռն
բարեկամաց նորա, և զնենգութիւն
նոցա փոխան զինուց 'ի կիր առ֊

նուլ: Վասն որոյ զԲոմիլկար՝ որ
ընդ Յուգուրթայ 'ի հռովմ լեալ,
և ապա երաշխաւորս կացուցեալ՝
'ի դատաստանէ սպանութեանն
Մասխեայ գաղտ փախուցեալն
էր, և՛առ կարի մտերմութեան ընդ
արքայի մարթէր նմա դիւրաւոյն
զնա 'ի ծուղակ խաբէութեան արկա֊
նել, մեծամեծ խոստմամբք խոր֊
հեցաւ փորձել. հրաւիրեաց զնա
նախ գալ 'ի ծածուկ խօսել ընդ
իւր. ապա խոստացաւ զի եթէ
զՅուգուրթ կենդանի կամ մե֊
ռեալ 'ի ձեռս տացէ, շնորհեսցէ
նմա ծերակոյտն արձակուրդ ան֊
պատուհաս, և զամենայն ստա֊
ցուածս նորա դարձուսցէ 'ի նա:
Դիւրաւ ընդ այս հաւանէր Նու֊
միդացին նենգամիտ, որ խիթայրն
զի 'ի հաստատել հաշտութեան ընդ
հռովմայեցիս, մի 'ի պայմանաց
սահմանեսցի մատնել զինքն 'ի
մահ:

ԿԲ. Արդ սորա ժամ պատեհ
գտեալ մատեաւ առ Յուգուրթ,
և իբրև վշտացեալ և կարեկից ընդ

բաղդին նորա ձախողութն՝ յոր-
դոր և աղերս սրտառուչ արտա-
սուօք հեղոյր առաջի նորա և ա-
սէր. « Խնայեա յանձն և յորդիս
քո և յազգ նումիդացւոց արժա-
նաւոր. տես զզօրացդ խորտա-
կումն, զանդաստանաց ապակա-
նութիւն, զբազմաց մահ և զգե-
րութիւն, զգանձուց թագաւո-
րութեան սպառումն. շատ իսկ
զքաջութեան զօրացդ և զբաղդին
ձախողութեան առեր զփորձ. մի
գուցէ 'ի յապաղել քո՝ ինքնին
նումիդացիք վասն անձանց խնամ
կալցեն »: Այսոքիւք և այլ սոյին
սակի բանիւք շարժեալ խոնար-
հեր զմիտս թագաւորին լինել
անձնատուր: Եւ առաքեցան դես-
պանք առ բդեաշխն յայտ առնել
զի պատրաստ էր Յուգուրթ 'ի
կատարումն հրամանացն, առանց
պայմանի զանձն և զթագաւորու-
թիւն իւր 'ի հաւատարմութիւն
նորա ապաստան արարեալ: Ան-
դէն Մետեղղոս զամենայն աւագ-
որեարն և զարս քաջս 'ի խոր-

հրդականութեն'ի ձմերոցաց անտի
կոչեաց 'ի ժողով. և այսպէս ըստ
նախնեացն օրինի վճռով ժողո-
վոյն 'ի ձեռն դեսպանաց հրաման
արար Յուդուրթայ տալ քսան
բիւր կշիռս արծաթոյ, զամենայն
երասաս փղաց, և մասն ինչ զզի-
նուց և զերիվարաց: Եւ 'ի կատա-
րել նորա զայն անյապաղ, հրա-
մայեաց և զամենայն դասալիքս զօ-
րականն տալ կապեալս ածել առ
ինքն: Եւ ածան իսկ բազումք ըստ
հրամանին, սակաւուց միայն կան-
խեալ քան զպատուէր հրամանին,
և առ Բոկքոս արքայ մաւրիտա-
նացւոց անկեալ: Եւ իբրև այս-
պէս կողոպտեալ Յուդուրթ 'ի
զինուց, 'ի զօրաց և 'ի դրամոց, 'ի
Տիսիդիոն կոչէր 'ի բդեշխէն՝ անդ
առնուլ հրաման, վերստին սկը-
սաւ վարանել յանձն իւր, և 'ի
խղճէ չարեացն կասկածել զար-
ժանին պատուհաս: Եւ զաւուրս
բազումս կայր 'ի տագնապ տա-
րակուսի. է զի տաղտկացեալ 'ի
ձախողելոյ իրացն՝ զամենայն իսկ

լաւ համարէր քան զպատերազմ, և է զի խորհէր և խելամուտ լինէր քանզի ծանր էր նմա 'ի թագաւորութենէն 'ի ծառայութիւն անկանել: Եւ քանզի էին նորա դեռ ևս բազում և մեծամեծ գունդք զօրաց՝ ձեռն էարկ անդէն 'ի մարտ պատերազմի: Իսկ 'ի Հռովմ ծերակոյտն խորհուրդ արարեալ ըզկուսակալութեանց, զՆումիդիա կրկին Մետեղղեայ տայր:

ԿԳ. Յաւուրսն յայնոսիկ դէպ եղև Կ. Մարիոսի 'ի զոհել դիցն յՈւտիկէ, առնուլ պատգամ 'ի լերդահմայէն՝ որ մեծամեծս և սքանչելիս զնմանէ գուշակէր, քաջալերելով զնա դիցն օգնականութեամբ հանել 'ի գլուխ որ ինչ խորհէրն, և մի դադարել 'ի փորձ զբաղդն մատուցանելոյ, յաջող ամենայնի ելս նմա խոստանալով: Ի բազմաց հետէ տենչ հիւպատոսութեան տագնապէր զնա. և առ այս բաց յազնուականութենէն ոչ ինչ պակասէր նմա. զի էր աջողակ, արդարակորով, քաջա-

հմուտ 'ի զինուորութե՟, գոլ 'ի
մարտի, սակաւապէտ առանին,
անվտանգ 'ի գրգանաց և 'ի ճո-
խութեանց, փառաց ևեթ ցան-
կացող: Քանզի ծնեալ և սնեալ
յՕրբինոն, երբև յարբունս և 'ի
հասակ զինուց ժամանէր, դար-
ձոյց զաչս 'ի զինուորութիւն, ոչ
'ի յունական պերճախօսութիւն
և ոչ 'ի քաղաքական փափկութիւն
վարժեալ, 'ի բարուոքն և յառա-
քինի ճարտարութիւն զարգացաւ
ընդ հուպ ոգի նորա անեղծ:
Վասն որոյ յառաջնումն անդ
նուագի 'ի խնդրել նորա զզինուո-
րական տիրութիւն 'ի ժո-
ղովրդենէ, թէպէտ և անծանօթ
էր բազմաց երեսօք, համբաւոյն
ևեթ անդէն հասանէր խնդրոյն:
Եւ սպա յատենակալութե՟ անտի
յայլ ատադութիւնս հեռացեալ
ամբարձեալ, այնպէս միշտ վարէր
յիշխանութեան՝ զի մեծադունին
ևս համարէր արժանի: Բայց սա
ինքն այր այսպիսի չիշխէր թէկն
ածել զայնր իշխանութեան, յոր

ապա փառասիրութեամբն դի-
մեաց դահավէժ ։ Զի թէպէտ
զայլ ատենակալս ամիկն ընտրէր,
այլ զբդեշխութիւն ազնուականք
իրերաց աւանդէին ․ և ոչ ոք յան-
տոհմից, թէպէտ ականաւոր և
վաստակօքն երևելի, արժանի դա-
տէր այնմ պատուոյ, իբր ստուե-
րածս զնովաւ ածելով ։

ԿԴ․ Արդ իբրև լուաւ Մարիոս
զբանս լերդահմայն՝ ակնարկե-
լով յոր տենչ մտացն ձկտէր, խըն-
դրեաց 'ի Մետեղղեայ հրաման
երթալոյ 'ի խնդիր իշխանութեն ․
որ թէպէտ և արութեամբ և համ-
բաւով և այլովք բարեմասնութեք
պայծառացեալ, բայց արհամար-
հոտ էր և ամբարտաւան՝ հասա-
րակաց անտի ազնուականացն
ատեցեալ ։ Վասն որոյ զարմա-
ցեալ նորա 'ի սկզբանն ընդ ան-
սովոր խնդիրն և ընդ խորհուրդ,
բարեկամաբար խրատէր զնա ․
« Մի՛ 'ի վտանգաւորս ձեռնարկել,
և ոչ անդր քան զիւր պայման
զխղձս մտացն ձկտեցուցանել ․ զի

ոչ ամենայնի օրէն է ամենեցուն
տենչալ, և զի իւրոյին պարտ էր
նմա շատանալ, և ընաւ իսկ զգու-
շանալ չխնդրել այնպիսի ինչ 'ի
ժողովրդենէն Հռովմայ, զոր իրա-
ւամբք մարթէր նմա ժխտել»: Եւ
ոչ կարացեալ ոքիմբք և ոցին
ակն բանիւք շրջել զմիտս Մա-
րիոսի, ասէ. Տաց հրաման յոր-
ժամ ներեսցեն իրք հասարակաց:
Եւ 'ի ստէպ թախանձելն Մարիո-
սի, աւանդեն պատասխանեալ
Մետեղղեայ. «Մի՛ փութալ 'ի
չու, զի վաղ իսկ ընդ որդւոյ իւ-
րում լիցի 'ի խնդիր բդեշխութե»:
Իսկ որդի նորա զինուորէր յայն-
ժամ ընդ ձեռամբ հօրն ամաց իբրև
քսանից: Այս բանք յաւելին բոր-
բոքել 'ի Մարիոս և զատենչ իշխա-
նութեանն և զոխերիմ թշնամու-
թիւն ընդ Մետեղղեայ: Այսպէս
փառասիրութի և զայրոյթ կրկին
խորհրդակիցք ժանտք զառածա-
նէին զնա. և ոչ ևս խնայէր 'ի
բան և 'ի գործ առ հասանել փա-
ռամոլ ըղձիցն. Թուլացուցանէր

զհրահանգս զօրացն՝ որոց հրա֊
մայերն ՚ի ձմերոցս. և առ վաճա֊
ռականս հռովմայեցիս, որոց բազ֊
մութիւն մեծ էր յՈւտիկէ, չարա֊
խօսէր զպատերազմէն՝ մեծամեծս
կոտորելով, զի եթէ ինքն էր՝ կի֊
սով չափ զօրօք ՚ի սակաւ աւուրս
զՅուգուրթ շղթայակապ ունէր.
և զի բդեաշխն այր անապարծ՝ կա֊
մաւ երկարաձգէր զգործ մարտին
առ ՚ի վայելել ընդերկարս յար֊
քունական պերճութեանն: Եւ
հաւատարիմ բանք ամբաստանու֊
թեանցն թուէին նոցա, այնչափ
ևս առաւել՝ որչափ զի երկարու֊
թե՛ն պատերազմին վնաս մեծ գոր֊
ծէր շահից նոցա, և զի ելից իրացն
փափաքողի ամենայն փոյթ՝ թուէր
յապաղումն:

ԿԵ. Եւ էր ՚ի զօրս մեր նումի֊
դացի ումն Գաւդաս անուն որդի
Մաստանաբաղայ թոռն Մասի֊
նիսսայ, զոր Միկիպսայ երկրորդ
ժառանգ իւրոյ արքայութեանն
կտակաւ էր թողեալ. սա ախտա֊
կիր մարմնով, սակաւ ինչ և մը֊

տօքն խօթացեալ էր․ որոյ խըն-
դրեալ 'ի Մետեղղեայ ըստ օրինի
թագաւորաց մերձ նմին զաթոռ
իւր դնել, և դարձեալ գունդ մի
'ի հեծելոց հռովմայեցւոց ունել
իւր թիկնապահ, զերկոսին ևս
չետ նմա Մետեղղոս․ զի նոցա
միայն պահեալ էր պատիւն այն՝
որք 'ի ժողովրդենէ Հռովմայ ըն-
դունէին զանուն թագաւորի․
գունդն թիկնապահ 'ի նախատինս
հեծելազօրուն հռովմայեցւոյ էր՝
նումիդացւոյն արքանեկելով։ Մա-
րիոսի զգժգմնութիւն սորա պա-
տեհ գտեալ, հրապուրէր զնա իւ-
րով օգնականութեամբն խնդրել
զվրէժ նախատանացն 'ի բդեշխէն։
Հպարտացոյց դրուատեօք զայրն
տկարացեալ մտօք վասն խօթու-
թեանն, իբր այն զի այր մեծ և 'ի
թագաւորութ̃ե էր ծնեալ թոռն
գոլով Մասինիսայ․ և զի 'ի ձեր-
բակալել կամ 'ի սպանանել Յու-
գուրթայ՝ նմա հասանէր անդէն
թագաւորել նումիդիոյ, և զի վաղ
իսկ յաջողէր այն, եթէ ինքն

բդեշխութեամբ զօրավարէր պատերազմին ։ Այսու օրինակաւ սակինքն, և հեծելազօրն հռովմայեցի, զինուորք և վաճառականք, կէսք 'ի Նմանէ, և բազումք յուսով խաղաղութեան յորդորեալ՝ խիստ 'ի Հռովմ առ կարևոր բարեկամս իւրեանց գրեցին զՄետեղղեայ և զպատերազմէն, և ըղ Մարիոս խնդրէին բդեաշխ ։ Եւ այսպէս յաջողէր Նմա բազմաց և մեծարոյ արանց Նպաստիւք հասանել բդեշխութեան ։ Մանաւանդ զի 'ի ժամանակին յայնմիկ մամիլեան օրինօքն ընկճեալ ազնուականք և ռամիկն բարձր 'ի գլուխ ամբառնայր զիւրսն 'ի պատիւ . որով ամենայն ինչ յաջողէր Մարիոսի ։

ԿԶ . Իսկ Յուգուրթ իբրև յետս եկաց ոչ ևս լինել անձնատուր, ձեռն էարկ դարձեալ 'ի մարտ պատերազմի, և մեծաւ փութով հանդերձէր զամենայն . աճապարէր զօրաժողով լինել, զքաղաքս նշկահեալս յիւրմէ սպառ֊

նաւեօք և խստամամբ վերստին
յինքն դարձուցանէր, զտեղիս իւր
ամրացուցանէր, զզէնս և զնետ և
զայլ կարևորս՝ զորս յուսով խա֊
ղաղութեան թողեալ էր 'ի բաց,
տայր նորոգել կամ գնոց առնուլ.
հրապուրեալ գրգռէր զատրուկս
հռովմայեցւոց, և պահակապա֊
նաց կաշառս գաղտախնթէր, և ըն֊
նաւ իսկ չթողոյր ինչ անփորձ և
անդոյր, զամենայն ինչ վէր 'ի
վայր յուզեալ խռովէր:

Արդ Վակկացիք՝ առ որս 'ի սկզբ֊
բան անդ Մետեղղոս 'ի բանա֊
գնաց լինելն վասն հաշտութեան
ընդ Յուգուրթայ՝ պահակապանս
եդեալ էր, 'ի Թախանձանաց ար֊
քային խոնջեալք, և զի կանխաւ
իսկ ոչ յօժարութեամբ ինչ 'ի նը֊
մանէ էին ուծացեալք, դաւակից
եղեն յիւրեանս գլխաւորք քաղա֊
քին. զի խառնիճաղանճն որպէս
ամենայն ուրեք սովոր է, եւ ա֊
ռաւել 'ի Նումիդիա՝ յեղյեղուկ
էր և խռովայոյզ, անխաղաղասէր
և յեղափոխութեանց ցանկացող.

և Թշնամի անգորրութեան և հան-
դարտութեան։ Ապա կարգեալ
հանդերձեալ զիրսն՝ սահմանե-
ցին զօրն երրորդ, որ օր մեծահան-
դէս տօն էր ընդ ամենայն Ափրի-
կէ, և 'ի խաղս և 'ի հեշտութիւնս
դրաւէր զմիտս քան 'ի կասկած
երկիւղի։ Եւ 'ի հասանել ժամա-
դրութեան աւուրն տօն զհարիւ-
րապետս, և այլ ոմն զտրիբունս զօ-
րաց և զինքն իսկ զբերդակալ իշ-
խանն զՏ. Տուրպիլիոս Սիղանոս
հրաւիրեն առ իւրեանս 'ի կո-
չունս. և անդէն 'ի բազմականին
սուր 'ի վերայ եդեալ կոտորեն
զոսսա բաց 'ի Տուրպիլեայ. և ա-
պա յարձակին 'ի զօրականն վասն
աւուրն տօնի ցրուեալ անզէն և
անզգոյշ։ Զնոյն և խառնիճա-
ղանճն գործէր, կէսք յազնուա-
կանաց դրդեալ, այլք 'ի յօժա-
րութենէ իւրեանց յայնպիսիս.
որք Թէպէտ անգէտ իրացն էին և
խորհրդոյն, բայց հաճոյ էր նոցա
աղմուկն ինքնին և յեղափոխու-
Թիւն։

ԿԻ. Զօրականն հռովմայեցի 'ի յեղակարծում վտանգէն վարանեալ չգիտէին զինչ առնել. և յահէ անտի դիմեցին յամրոց անդր ուր գրօշքն էին և վահանք, այլ թշնամեաց առեալ զդրունս խափանէին զփախուստն. դարձեալ և կանայք և մանկտին 'ի տանեաց զմիմեամբ ելեալս առնելով՝ քարինս և որ ինչ 'ի ձեռս գայր՝ արկանէին: Այսպէս նոքա 'ի կրկին վտանգ ըմբռնեալ անխուսելի, արք քաջք չկարէին զդէմ ունել տկար ազգին, և զի նոյն օրինակ արիք և վատք, հզօրք և անզօրք առանց խնդրելոյ զվրէժ արեան իւրեանց կորնչէին: Յայն դժնդակ աղէտս 'ի մոլել նումիդացւոց զայրագին և 'ի փակել ամրոցին ամենուստ, յամենայն իտալական խմբէ անտի Տուրպիլիոս ևեթ հրամանատար ապրէր անվնաս. գթութեամբ արդեօք ասպնջականին, եթէ դաշամբ կամ ըստ բախտի՝ չունիմ ասել. այլ զի 'ի մեծի վտանգին ընտրեաց զկեանս

վատութեամբ քան զանստգիտ համբաւ, անօրէն և ատելի համա-րեցաւ ։

ԿԸ. Իբրև ազդ եղև Մետեղ-ղեայ կոտորած զօրուն 'ի Վակ-կա, վայրկ մի տխրեալ մտախոհ լինէր, այլ ապա զայրոյթ և զառ-նութիւն 'ի միասին մեծաւ փու-թով մղեցին զնա 'ի քէն վրիժու ։ Առեալ ընդ իւր զլէգէոնն ընդ որում ձմերէր, և այրուձի բա-զում Նումիդացի՝ խաղաց ընդ ե-րեկս, և 'ի վաղիւ անդր զերրորդ ժամաւ առաւօտին եկն եհաս 'ի դաշտ ուրեք շրջապատեալ 'ի բլրոց ։ Անդ զօրականն վաստակա-բեկ յերկարութենէ ճանապար-հին զտեղի առեալ՝ ոչ ևս կամէր գնալ. այլ նա եցոյց նոցա զի ոչ աւելի քան զմղոն մի հեռի էր ա-ւանն Վակկա, և զի վայել իսկ էր նոցա յօժարակամ տանել փոքր միւս ևս աշխատութեանն առ 'ի խնդրել զվրէժ քաղաքացեաց իւ-րեանց արանց քաջաց թշուա-ռացելոց ։ Դարձեալ և 'ի յոյս ա-

ւորին քաղցրութեամբ զմիտս նո֊
ցա զարթուցեալ, հրամայեաց յա֊
ռաջ կոյս խաղալ հեծելազօրուն
և հետևակաց յետկուսէ միա֊
խուռն ծածկեալ զդրօշս ։

ԿԹ. Տեսեալ վակկացւոց զգալ
մօտել բանակին դէպ ուղիղ առ
ինքեանս, և՛ի սկզբան անդ զՄե֊
տեղղեայ համարելով զայն որ֊
պէս և էրն իսկ, առին զդրունան.
ապա իբրև տեսին զի չապակա֊
նէին նոքա զանդաստանս, և կա֊
րապետէին նոցա հեծեալք նու֊
միդացիք՝ կարծեցին զզօրս Յու֊
գուրթայ, և խնդութեամբ բազ֊
մաւ ելին ընդ առաջ ։ Եւ 'ի տալ
յանկարծ նշանին՝ գրոհ ետուն
հեծեալք և հետևակք. կէսք ըզ֊
խուժանն 'ի դուրս դիմեալ կոտո֊
րեցին, այլք աճապարեցին առ֊
նուլ զդրունս, և ոմանք տիրել
աշտարակաց. զայրուցք և ցանկու֊
թիւն աւարին զօրանայր 'ի նոսա
քան զխոնջութն ճանապարհին ։
Այսպէս վակկացւոց զերկուս
միայն աւուրս ընդ նենգ դաւոյն

խնդացեալ, քաղաքն մեծ և բազ-
մահարուստ յաւար և 'ի պատու-
հաս մատնեցաւ: Եւ Տուրպիղիոս
ստիկան ամրոցին որ միայն զեր-
ծեալն էր 'ի կոտորածէն, որպէս
'ի վեր անդր ասացաք, 'ի հարց-
փորձ կոչեցեալ 'ի Մետեղղեայ,
և ոչ կարացեալ տանել վասն ան-
ձին պատասխանի, դատապարտե-
ցաւ, և գանահարեալ զպատիժ
մահու ընկալաւ կառափմամբ,
զի էր քաղաքացի 'ի Լատինէ:

Հ. Ընդ այն ժամանակս Բո-
միլկար՝ յորմէ յորդորեալն էր Յու-
գուրթ խոնարհել անձնատուր
լինել, և ապա առ ահի յետս կա-
ցեալ, և որ կասկածաւորն էր Թա-
գաւորին, և ինքն ևս կասկածէր
զնմանէ, յեղափոխութենց ըղձիւք
սկսաւ դարանել կենաց արքային,
զտիւ և զգիշեր յուզեալ 'ի խոր-
հուրդս: Մինչև զամենայն փորձ
փորձեալ եգիտ իւր համախոհ
զՆաբդալսա ոմն, զայր ազնուա-
կան և մեծափարթամ, սիրելի քա-
ղաքայնոցն իւրոց, որ սովորն էր

ուրոյն 'ի Թագաւորէն յաճախ զօ-
րավարել և յանձանձել զամենայն
իրս տեսչութե̃՝ զորս Յուգուրթ
խոնջ 'ի բազում վաստակոց, և
կամ 'ի կարևորագոյնս պարա-
պեալ չբաւէր անձամբ կատա-
րել. որով Նաբդալեայ յաճա-
խեալ էին փառք և ճոխութիւնք:
Արդ սոքա երկոքին միաբանեալ
սահմանեն օր. իսկ զայլն ամենայն
ըստ ժամուն պատշաճի համա-
րին պատրաստել: Դարձ արար
Նաբդալեա 'ի բանակն՝ զոր մօտ
'ի ձմերոցս հռովմայեցւոց կար-
գեալ էր 'ի պահ, զի մի թշնամիք
ազատ և անպատուհաս յաղարտ
վարեսցեն զերկիրն. բայց 'ի վե-
տանգէ եղեռանն խռովեալ՝ ոչ
եկն ըստ պայմանեալ ժամուն, և
երկիւղն արգել լինէր գործոյն:
Իսկ Բոմիլկար տագնապեալ յըղ-
ձից զառաջարկեալ գործն 'ի գլուխ
հանելոյ, և յերկիւղէ զաւակցին՝
թէ գուցէ զառաջին խորհուրդն
թողեալ 'ի նոր ինչ ձեռնարկես-
ցէ, ետ տանել գիր 'ի ձեռն հա-

ւատարիմ որերոյ, բողոք կալեալ
զթուլութենէ և զդանդաղութէ
նորա, և վկայ զդիւան կոչելով յորս
երդուեալն էր, խրատ տայր նմա
և ասէր. «Զգոյշ լեր, մի զպար֊
գևս Մետեզղեայ 'ի վնաս քո դար֊
ձուցանել. Յուգուրթայ կործա֊
նումն 'ի վերայ կայ. այլ մերժլ
արդեօք, թէ Մետեզղեայ զօրու֊
թեամբ կորիցէ՝ այն ևեթ է ան֊
գիտելի. ապա քաջ խորհեսջիր
ընտրել ընդ վարձ և ընդ պատու֊
հաս»:

ՀԱ. Ի հասանել նամակին՝
Նաբդալսա խոնջ 'ի վաստակոց
հանգչէր յանկողնի: Եւ իբրև
ծանեաւ զբանս Բոմիլկարայ, յու֊
զեալ 'ի սկզբան 'ի ծուփս խոր֊
հրդոց, և ապա որպէս անձին
տրտմեցելոյ է բնաւորեալ՝ եմուտ
'ի քուն: Էր նորա Նումիդացի ոմն
հազարապետ տան իւրոյ. հաւա֊
տարիմ և պատուական և ամենայն
խորհրդոց նորա գիտակ՝ բաց 'ի
վերջնոյն: Իբրև լուաւ սա զհա֊
սանել թղթոյն՝ կարևոր համա֊

րեալ ըստ սովորութեանն զգոր-
ծակցութիւն իւր և զխորհրդակ-
ցութ̃ին, եկն եմուտ 'ի վրան անդր՝
ուր 'ի քուն կայր տէր իւր Թո-
ղեալ յանխորհուրդս զգիրն առ-
մարս 'ի վերայ բարձին. Էառ
զայն և ընթերցաւ. և անդէն իմա-
ցեալ զդաւաճանութ̃ին դիմեաց
առ Թագաւորն: Յետ սակաւ միոյ
զարթեաւ Նաբգալաս. և իբրև ոչ
եգիտ զԹուղթն և ծանեաւ զիրսն՝
աճապարեաց զհետ պնդել մատ-
նչին, այլ անտի 'ի դերև ելեալ,
դիմեաց առ Յուգուրթ ողոքել
զերեսս նորա՝ ասելով, զի զոր
ինքնին պատրաստէր 'ի վեր հա-
նել՝ նենգութիւն սպասաւորին
կանխեալ էր 'ի նոյն, և արտա-
սուօք աղերսէր 'ի սէր բարեկա-
մութեան և վասն առաջնոց գոր-
ծոցն իւրոց հաւատարմութեան
մի ոճիր այնպիսի կասկածել զին-
քենէ:

ՀԲ. Առ այս Թագաւորն, Թէ-
պէտ այլ ազգ խորհէր 'ի մտի,
քաղցրութ̃բ արար պատասխանի.

և զԲոմիլկար և զայլս բազումս որ
խորհրդակիցք յայտնեցան դա-
ւոյն՝ 'ի մահ մատնեաց, այլ սան-
ձահարեալ զցասումն՝ զի մի աղ-
մուկ ինչ յուզեսցի անտի։ Եւ ոչ
յետ այնորիկ հանդիստ էր Յու-
գուրթայ ոչ զտիւ և ոչ զգիշեր,
ոչ ուրեք և ոչ երբէք յոք վստա-
հացեալ. 'ի քաղաքացեաց իբր 'ի
թշնամեաց երկնչէր, զամենե-
ցունց կասկածէր, յամենայն շա-
ռաչմանց սրտաթունդ սրտաբախ
լինէր, աստանդական ընդդէմ
արքայական պատուոյն զգիշերս
անցուցանէր, և է զի ընդոստու-
ցեալ 'ի քնոյ զէն առնոյր, զաղա-
ղակ հարկանէր. և այսպէս առ
ահին որպէս խելացնոր դանդա-
չէր։

ՀԳ. Բայց Մետեղլոս իբրև
գիտաց 'ի դասալիք զօրուէն զար-
կածս Բոմիլկարայ և զդաւակցու-
թեն յայտնել, փութացաւ դար-
ձեալ իբրև 'ի նոր պատերազմ զա-
մենայն ինչ պատրաստել։ ԶՄա-
րիոս որ ստէպ թախանձէր 'ի նը-

մանէ հրաման երթալոյ, որ դըժ-
պհին էր իւր, և զոր գրգռեալն
էր ընդդէմ անձին, ոչ ևս պիտանի
համարեալ արձակեաց 'ի Հռովմ։
Եւ ժողովրդեանն Հռովմայ ըն-
թերցեալ զնամականին որ զՄե-
տեղղեայ և զՄարիոսէ գրեալ՝
հաճոյ թուեցան որ 'ի նոսա զեր-
կաքանչիւրոցն էին բանք։ Մե-
տեղղեայ ազնուականութիւն, ո-
րով յառաջ մեծարեալն էր, ա-
տելի զնա առնէր, և Մարիոսի
տոհմին նուաստութիւն լինէր նմա
'ի նպաստ։ Սակայն յերկոսին ևս
քան զլաւութիւն բարուց կամ զյո-
ռութիւն ազդողագոյն գտան կու-
սակցացն փոյթ. դարձեալ և ան-
խաղաղասէր հազարապետք ժո-
ղովրդեան յուզեալ խռովէին ըզ-
ռամիկն, զՄետեղղոս գլխապարտ
առնէին յամենայն ատենաբանու-
թիւնս, և զՄարիոսի պանծացու-
ցանէին զքաջութիւն։ Արդ այս-
պէս վառեալ բորբոքեալ ռամիկն,
գործաւորք և գիւղականք՝ որոց
ինչք և հասք 'ի բազուկս իւրեանց

էր՝ ձեռնթափ աշխատութեանցն
'ի տես Մարիոսի դիմացն, նախա-
մեծար զպատիւ նորա քան զապ-
րուստ իւրեանց արարեալ։ Այս-
պէս 'ի բեկումն ազնուականաց
շնորհէր բդեշխութիւն առն ռամ-
կականի, որպիսի ինչ 'ի բազում
ժամանակաց հետէ չէր լեալ։ Ա-
պա իբրև հարցաւ ժողովուրդն 'ի
Մանլեայ Մանտինոսէ հազարա-
պետէն՝ ո՞ւմ զՅուգուրթեան մար-
տըն յանձն առնել, միաբարբառ
զՄարիոս գոչեցին։ Եւ թէպէտ
սակաւ մի յառաջագոյն Մետեղ-
ղեայ 'ի ծերակուտէն սահմանեալ
էր Նումիդիա, այլ 'ի դերև ել
վճիռն։

ՀԴ. Զայսու ժամանակաւ կո-
րուսեալ Յուգուրթայ զբարե-
կամսն, յորոց զբազումս իւր
իսկ մատնեալ էր 'ի մահ, և այլք
զարհուրեալ կէսք առ Հռովմայ-
եցիս և կէսք առ Բոկքոս թա-
գաւոր ապաստանեալ էին, ոչ
իշխէր 'ի մարտ առանց պաշտօ-
նէից. և զի նորոց ոմանց հա-

ւատս ընծայել առ անհաւա-
տարմութեամբ առաջնոցն վը-
տանգաւոր համարէր, 'ի վարանս
և 'ի տարակուսի կայր, ոչ ընդ
գործ ինչ, ոչ ընդ խորհուրդ և
ոչ ընդ այր ոք հաճէր, զչուս և
զզօրավարս զօրուն զոր ամենայն
փոփոխէր, մերթ 'ի թշնամիս կոյս
և մերթ յանապատս դիմէր, յա-
ճախ 'ի փախուստ և ընդ հուպ 'ի
զէնս ապաւինէր, և ոչ գիտէր ըզ-
զօրութենէ՞ արդեօք ժողովրդեան
թէ զհաւատարմութենէն առա-
ւել կասկածել. և այսպէս յոր
ինչ և զխորհուրդս դարձուցանէր՝
ամենայն ձախողակի նմա թուէր։
Մինչ այս մինչ այն եկն եհաս
յանկարծ Մետեղղոս բանակաւն.
և Յուգուրթայ ճեպ 'ի ճեպոյ
ճակատեցուցեալ զնումիդացին,
սկիզբն եղև մարտին։ Որք մերձ առ
արքային կային զօրքն՝ առ ժամա-
նակ մի զդէմ կալան, այլք ամե-
նեքեան յառաջնում յարձակման
անդ վանեալ 'ի փախուստ դար-
ձան։ Հռովմայեցիք կալան դրօշս

և զէնս բազումս , բայց գերի սա-
կաւ . զի գրեթէ յամենայն պա-
տերազմունս ոչ այնչափ զէնք քան
թէ ոտիցն երագութիւն փրկէ
զնումիդացիս ։

ՀԵ. Այսու պարտութեամբ
յաւել Յուգուրթ 'ի վհատու-
թի . դասալիք զօրօքն և ջոկատիւ
հեծելոց դիմեալ յանապատս ,
անտի եհաս 'ի Թալա բերդաքա-
ղաք մեծ և բազմահարուստ , ուր
էր նորա գանձ բազում և որ ինչ
'ի դաստիարակութի որդւոց իւ-
րոց սպաս յոլով ։ Այդ եղև Մե-
տելլոսի , և թէպէտ գիտէր նա
զի ընդ Թալա և ընդ գետն մեր-
ձաւոր էին յիսուն փարսախա-
վայրք անջրդիք և ընդարձակ ան-
ապատ , սակայն յուսով վճարե-
լոյ զպատերազմն 'ի տիրել քա-
ղաքին՝ դիմեաց անդր կոխեալ զա-
մենայն խոչ և զխութ և բնութեն
իսկ կարեօք յաղթանակեալ ։ Վասն
որոյ հրամայեաց 'ի բաց բառնալ
'ի գրաստուց զամենայն կարասի
բաց 'ի ցորենոյ 'ի տասնօրեայ պա-

րէն, և բառնալ 'ի նոսա տիկս և
այլ անօթս ջրոյ: Եւ խնդրեալ
'ի գիւղօրէից գրաստս որչափ և
գտանէր, եբարձ 'ի նոսա ազգս
ազգս անօթոց գրեթէ առ հասա-
րակ փայտակերտս, ժողովեալ
'ի հիւղից նումիդացւոց: Պատուէր
ետ և մերձաւոր ժողովրդոց, որք
յետ փախստեան արքային անձ-
նատուր լեալ էին իւր, բերել ջուր
որչափ ոք և կարէր, և սահմա-
նեաց նոցա օր և տեղի գալ ժա-
մանել անդր: Եւ ինքն ևս 'ի գե-
տոյն որ մերձ էր 'ի քաղաք անդր
որպէս ասացաքն՝ եբարձ ջուր 'ի
գրաստս. և այսպէս կազմ և պատ-
րաստ խաղայր 'ի Թալա: Եւ իբ-
րև եհաս 'ի տեղին՝ ուր ժամադիր
լեալ էր ընդ նումիդացւոց, և ղա-
կիչ ածեալ բանակեցաւ, պատմի
յեղակարծումն յանժամ առատ
անձրևոյ տեղացեալ յերկնից 'ի
լիութիւն բաւականի զօրացն: Դար-
ձեալ և համբարոց յաճախեալ
քան զակնկալութին. քանզի նու-
միդացիք ըստ սովորութեան ազ-

դաց այն ինչ անձնատուր եղելոց՝ խնամով սպաս հարկանէին Մետեղղեայ : Իսկ զօրքն կրօնաւոր քաջալերեցան ոչ սակաւ՝ անձրեւային ջրոյն առաւել վարեալ. զի 'ի խնամոց դիցն անմահից համարէին զայն : Եւ 'ի վաղուէ անդր մինչ ոչն կասկածէր երբէք Յուգուրթ, հասին 'ի Թալա : Գաղաքացիքն՝ որք վասն դժուարամատոյց վայրացն յապահովս զանձինս վարկանէին, Թէպէտ և ընդ մեծ և ընդ անսովոր գործն ապշեալք՝ սակայն ոչ դանդաղեցին պատրաստել 'ի մարտ. զնոյն և մերքն արարին :

ՀԶ. ԱՅԼ Թագաւորն Յուգուրթ ոչինչ այնուհետև անհնարին Մետեղղեայ վարկուցեալ, որոյ Ճարտարութեան տեղի ետուն զէնք և նիզակք, ամրութիւն վայրաց և ժամանակն դժպատեհ, և բնութիւնն ինքնին ամենայնի իշխեցող. գիշերախառն խոյս ետ 'ի քաղաքէն որդւովք իւրովք հանդերձ և մեծաւ մասամբ գանձուն.

և ոչ ուրէք քան զոր մի կամ զգի-
չեր յամեալ՝ պատճառէր աճա-
պարել 'ի գործ կարևոր, այլ
ստուգիւ 'ի մատնութենէ խի-
թայր, յորմէ ճեպովն ևեթ յու-
սայր խուսափել. գիտելով զի չէր
մարթ ձեռնարկել 'ի խորհուրդ-
այնպիսի առանց պարապ և պա-
տեհութիւն գտանելոյ։

Իսկ Մետեղղոս իբրև ետես
զքաղաքացիս պատրաստեալ 'ի
պատերազմ, և զքաղաքն 'ի բնէ և
արուեստիւք ամրացեալ, խրա-
մովք և պատնիշօք զայն փակեաց։
Ապա ընդ դիպան վայր յառաջ
մատոյց զբազմութիւն մեքենայից,
հողաբլուրս կանգնեալ և մարտ-
կոցս 'ի վերայ նոցին ամբարձեալ.
պաշտպանել անտի զգործս և ըզ-
գործօնեայս։ Նոցին ընդդէմ կազ-
մէին և քաղաքացիքն, և ոչ ինչ 'ի
հնարից Թողին երկուստեք ան-
գործ։ Հռովմայեցիքն բազում վաս-
տակօք և ճգամբք մարտի յետ
քառասուն աւուրց զբռամբ ա-
ծին զքաղաքն միայն, զի աւարն

ամենայն 'ի դաստալէք զօրացն մատ_
նեցան յապականութիւն : Քան_
զի տեսեալ սոցա զխրամատել_
պարսպացն 'ի խոյոց, և զիրաց ի_
րեանց ձախողութիւն, զոսկին և
զարծաթ և զամենայն ինչ մեծա_
գին կուտեալ յապարանս արքու_
նի, և անդ շուայտութեամբ և գի_
նւով զգլխեալք, հրայրեացք ընդ
գանձուցն կորեան, և զոր պար_
տութեամբն 'ի թշնամեաց խի_
թային ունել պատուհաս, ան_
ձամբ անձանց ետուն ինքնակամ:

ՀԷ. Եւ իբրև առաւ քաղաքն
Թալա՝ եկին հասին պատգա_
մաւորք 'ի լեպտացւոց առ Մե_
տեղղոս, աղերսել զի գունդս զօ_
րաց և ոստիկան 'ի Լեպտիս առա_
քեսցէ. քանզի Ամիլկար ոմն յազ_
նուական տոհմէ այր խռովասէր
յեղափոխութեանց ցանկայր, ո_
րում ոչ սաստ իշխանութեան ա_
տենակալաց և ոչ օրէնք ահ ար_
կանէին. և եթէ ոչ փութայր նա
հասանել 'ի թիկունս՝ փրկութիւն
իւրեանց որ նիզակակիցք էին Հռ_

ռոմմայ՝ անկանէր 'ի վտանգ մեծ։
Քանզի լեպտացիք 'ի սկզբանէ
յուզութեան մարտին առ բը-
դեաշխն Կալպուրնիոս Պեսոնի
և ապա 'ի Հռոմ յղեալ էին ա-
ղերս 'ի խնդիր նիզակակից բարե-
կամութեան. և յետ ընդունելու-
թեանն հաւատարիմ գտեալ միշտ
և հլու 'ի կատարումն հրամանաց
բդեշխացն Կալպուրնեայ, Ալբի-
նոսի և Մետեղղեայ։ Որով և հեշ-
տեաւ արդ ընկալան զխնդիրսն 'ի
բդեշխէն, և առաքեցաւ անդր 'ի
Լեպտիս Կայիոս Աննիոս ոստի-
կան չորիւք գնդովք լիգուրացւոց։

ՀԸ. Քաղաքս այս կառուցաւ
'ի սիդոնացւոց, որք վասն առ-
տնին քաղաքական գժտութեանց
աւանդին նաւեալ փախստեայ 'ի
վայրսն յայնոսիկ. և կայ 'ի միջի
ընդ երկուս աւազուտս, յորոց և
զանունն կալաւ։ Զի են խորշք
կրկին 'ի ծայրս կոյս Ափրիկեայ,
անհաւասարք մեծութեամբ, նը-
մանաձևք 'ի բնէ, որոց առ ա-
փամբքն անդնդախորք, իսկ 'ի մի-

Չի ուրեք խոր ըստ դիպաց և այլ
ուրեք ծանծաղուտ գործեալ 'ի
մրրկաց: Քանզի յուռնուլ ծո֊
վուն և 'ի սաստկանալ հողմոց՝
զտիղմ՛, զաւազ և վէմս մեծա֊
մեծս ձգեն ալիք, և տեսիլ վայ֊
րացն փոփոխի ընդ հողմոյ. ուս֊
տի խորշքն այնոքիկ խրուտք ա֊
նուանեցան: Նաւապետացւոց բար֊
բառոյն 'ի խնամութենէ նոցա ընդ֊
նումիդացիս այլայլեալ, բայց օ֊
րէնք նոցա և սովորութիւնք բա֊
զումք էին սիդոնականք, և այնու
իսկ դիւրաւ պահէին անփոփոխ,
զի հեռի յարքունեաց կէին, և 'ի
մէջ նոցա և բնակախիտն Նումի֊
դիոյ ընդարձակ անապատք էին:

ՀԹ. Եւ քանզի զնաւապետացւոց
աստանօր առաք խօսել, ոչ ան֊
դէպ թուի զմեծ և զզարմանալի
առաքինութիւն երկոցուն կար֊
քեդոնացւոցն յիշատակել, յոր
պատեհութի տեղւոյս զմեզ յոր֊
դորէ:

Զայնու ժամանակաւ իշխէին
կարքեդոնացիք մեծի մասին Ափ֊

րիկեայ. և կիւրենացիք իսկ հը-
զօրք էին և բազմահարուստ:
Դաշտ աւազուտ միօրինակ էր 'ի
միջի, ոչ գետ և ոչ լեառն զսահ-
մանս նոցա որոշէր, որով երկար
և անլուելի մարտ պատերազմի էր
'ի նոսա: Իբրև երկուստեք գունդք
զօրաց և նաւատորմիղք սատէպ խոր-
տակեալ 'ի փախուստ դարձան և
նկուն եղեն իւրերօք, խիթացեալ
թէ գուցէ այլ ոք 'ի վերայ յար-
ձակեսցի պարտելոցն և յաղթա-
կանաց պարտասելոց, դուլ զի-
նուց արարին, և դաշինս եդին.
“Զի 'ի նմին աւուր և 'ի ժամու
դեսպանք արձակեալ յերկաքան-
չիւր աշխարհէն՝ յորում վայրի և
միմեանց հանդիպեսցին, այն լիցի
երկոցունց ազգացն սահման”:
Արդ 'ի կարքեդոնացւոց անտի
արձակեալ եղբարք երկու փիլե-
նեանքն անուանակոչեալք՝ սուր-
հանդակօրէն խաղացմամբ համա-
ռօտեցին զճանապարհն. իսկ կիւ-
րենացիք դանդաղեցին, այլ առ
յուլութեան արդեօք եթէ ըստ

դիպաց այսպէս պատահեալ՝ չու-
նիմ ասել հաւաստեաւ։ Բայց ՚ի
կողմանան յայնոսիկ մրրիկ որպէս
՚ի ծովու արգելու յաճախ զճա-
նապարհորդս. զի ընդ դաշտ տա-
փարակ և անծառատունկ հողմ
ուժգին զաւազն ՚ի վեր փոթոր-
կեալ ընու զերեսս և զաչս ան-
ցաւորաց, և հարեալ զնոսա շլա-
ցութեամբ խափանէ ՚ի գնացից։
Իբրև տեսին կիւրենացիք զմնալ
իւրեանց յետս, երկուցեալ վասն
պարտութեանն ՚ի պատուհասէ
քաղաքայնոցն, սկսան սադրա-
նել զկարքեդոնացիս իբր յա-
ռաջ քան զժամադրութիւնն մեկ-
նեալս ՚ի քաղաքէն, և աղմուկ ա-
րարեալ զամենայն ինչ յանձն
առնուին քան դառնալ յետս
պարտութեամբ։ Յայնժամ խըն-
դրեցին կարքեդոնացիք այլ ինչ
սահմանել պայման, բայց միայն
իրաւացի. և զիջան Յոյնք ՚ի խըն-
դիր նոցա, եդեալ պայման՝ զի
կամ ինքեանք ուր զսահման ժո-
ղովրդեան իւրեանց խնդրէին՝ անդ

կենդանւոյն Թաղեսցին, և կամ ին֊
քեանց նովին պայմանաւ յառաջ
խաղալ ցոր վայր կամիցին։ Հա֊
ճոյ Թուեցաւ փիղենեանց պայ֊
մանն այն, և անձնանուէր եռուն
զկեանս իւրեանց 'ի շահ օգտի հա֊
սարակապետութեան, Թաղեալք
անդ կենդանւոյն։ Եւ կարքեդո֊
նացիք սեղան 'ի տեղւոջ անդ
կանգնեալ փիղենեանցն եղբարց,
և այլ ևս պաշտամունս 'ի քաղա֊
քին օրինադրեցին։ Դարձցուք արդ
'ի պատմութիւնս։

Զ. Յետ առմանն Թալայ իբրև
ետես Յուգուրթ զի չէր բաւա֊
կան զդէմ ունել Մետեղղեայ,
սակաւուք ոմամբք յիւրոցն ան֊
ցեալ ընդ մեծ անապատս եհաս
առ գետուլացիս, այր վայրագ և
բիրտ, և ցայնժամ անգէտք ա֊
նուան Հռովմայ։ Եւ ժողովեալ
զբազմութիւն նոցա 'ի խումբս,
ուսոյց նոցա տակաւ հնազանդել
կարգաց, զհետ երԹալ դրօշուց,
ընդ ձեռամբ զօրավարաց կալ, և
հրահանգաց հպատակել։ Այպա

զբարեկամն արքային Բոկքոսի
մեծամեծ պարգևօք և առաւելա-
գոյն խոստմամբ յինքն յանկու-
ցեալ, նոցին սատարութբ գըր-
գռեալ յորդորեաց զթագաւորն՝
պատերազմ յարուցանել ընդդէմ
Հռովմայեցւոց: Եւ դիւրեաւ իսկ
յաջողեաց նմա այս՝ այնու զի 'ի
սկիզբն մարտին դեսպանս 'ի Հը-
ռովմ արձակեալ էր Բոկքոսի 'ի
խնդիր նիզակակից բարեկամու-
թեան. և զկարևորն զայն նիզա-
կակցութի խափանեալ էր կու-
բացելոց ոմանց ագահութեամբ,
որ սովոր էին զամենայն ինչ իրա-
ւացի և անիրաւ գնոց վաճառել:
Դարձեալ զի և սակաւուք յա-
ռաջ զդուստր Յուգուրթայ 'ի
կնութիւն ածեալ էր Բոկքոսի.
Թէպէտ և խնամութիւն առ նու-
միդացիս և առ մաւրիտանացիս
ոչ մեծ ինչ համարի, զի իւրաքան-
չիւր ոք ըստ գոյից կանայս բա-
զումս ածէն մինչև ցտասն և աւե-
լի, և առաւել ևս թագաւորն.
որով 'ի բազումս բաժանեալ սէրն,

ոչ զոք 'ի նոցանէ ունի իբրև զա-մուսին, այլ ամենեքեան նմա հա-ւասարապէս անարգ են :

ՉԱ. Արդ 'ի տեղւոջ՝ որ եր-կաքանչիւրոցն հաճոյ թուեցաւ՝ հանդիպեցան իւրեանց բանակքն. և յետ տալոյ և առնլոյ զերդումն հաւատարմութե̃ երկուստեք, մա-տոյց Յուգուրթ գրգիռ Բոկքո-սի և ասէ. «Անիրաւ են հռով-մայեցիք, և անհնարին ագահու-թեամբ թշնամիք հասարակաց. նոյն տենչ աշխարհակալութեան գրգռէ զնոսա ընդդէմ քո 'ի մարտ, որով ընդ իս և ընդ այլ ազինս մարտնչին, ոխերիմք ամենայն թա-գաւորաց. այժմ ես, սակաւիկ մի յառաջ կարքեդոնացիք և ար-քայն Պերսէոս, և յայսմ հետէ ամենեքեան որ նոցա ձոխք թուի-ցին ընդ հակառակորդս նոցա հա-մարեսցին »: Այսոքիւք և սոցին նման բանիւք ուղւոյ եղեն 'ի քա-ղաքն Կիրտա. քանզի անդ Մե-տեղղեայ զաւարն, զգերին և ըզ-կարասին եդեալ էր : Կարեւոր հա-

մարէր Յուգուրթ կամ առնուլ
զքաղաքն, և կամ եթէ բդեաշխն
'ի թիկունս օգնականութեան իւ-
րոցն հասանէր, 'ի զէն գալ ընդ
նմա: Քանզի խորհէր խորագի-
տութեամբ չթողուլ 'ի խաղաղու-
թեան զԲոկքոս, զի մի յապաղ-
մամբն յուզեալ 'ի խորհուրդս՝
հրաժարեսցէ 'ի պատերազմէ:

ՁԲ. Իբրև գիտաց Մետելլոս
զնիզակակցութի̃ն թագաւորացն,
ոչ ևս կամեցաւ յանդգնել, և ոչ
որպէս յաճախ սովորն էր 'ի յաղ-
թել Յուգուրթայ, ուր և է ան-
խտիր ձեռն 'ի գործ առնել 'ի
պատերազմ. այլ ոչինչ հեռի 'ի
Կիրտայ շրջապատնէշ ամրացեալ
դէտ ակն ունէր թագաւորացն.
լաւ համարեալ ճանաչել զմաւ-
րիտանացիս՝ որ նորոգ յաւելեալ
էին 'ի թշնամիս, և ապա գալ 'ի
պատերազմ: Յայնմ վայրի նա-
մականի 'ի Հռովմայ եհաս առ
նա, յորմէ ստուգութեամբ իրա-
զեկ լինէր Մարիոսի Նումիդացւոց
աշխարհին կալոյ կուսակալ. քան-

զի զհիւպատոսութենէն լուր ա-
ռեալ էր յառաջագոյն: Առաւել
քան զարժանն և զպատշաճ վըշ-
տացեալ ընդ այն, ոչ ժուժկալել
արտասուաց և ոչ զնեղու իւր կա-
րաց սանձահարել. այլ ամենայն
մտաւմբք առաքինի, մեղկ՝ի տըր-
մութեանն գտաւ: Զոր ոմանք
ամբարտաւանութեան ընծայէին,
այլք բարելաւ մտաց Նախատա-
նօքն դառնացելոյ. և բազումք զի
զպատրաստեալ յաղթութիւնն՝ի
ձեռանէ նորա յափշտակէին: Այլ
ինձ հաւաստի թուի, զի քան ընդ
Նախատինս իւր՝ ընդ փառս Մա-
րիոսի զայրագնէր նա, և ոչ ար-
դեօք այնքան ծանր թուէր նմա՝
եթէ այլում և ոչ Մարիոսի գա-
ւառն այն յանձնէր:

ՁԳ. Արդ՝ի վշտաց անտի
լքեալ, և յիմարութիւն համա-
րեալ վտանգել զանձն՝ի շահ այ-
լոյ, դեսպանս առ Բոկքոս առա-
քեաց. «Մի վայրապար թշնամի
ժողովրդեանն Հռովմայ լինել,
զի առհա դէպ ժամանակ էր նմա

առնելոյ բարեկամութիւն նիզա-
կակցութեան ընդ Հռովմայեցիս,
որ շահաւորագոյն էր նմա քան
զպատերազմ. զի եթէ յառաւե-
լութիւն զօրութեանն վստահա-
նայր, սակայն չէր պարտ զատոյգն
ընդ կեղակարծին փոխանակել:
Դիւրին է, ասէր, ձեռնարկել 'ի
մարտ, այլ դժուարին յոյժ ձեռն-
թափ լինել անտի. քանզի չէ 'ի
կամս սկսողին և կատարածն. սկը-
սանել մարթ է և տկարաց, այլ
վախճան առնել 'ի կամս յաղթա-
կանաց է: Խորհեաց ապա զօգուտ
անձին և զյաղթաւորութեդ, և մի
զգեղեցիկ բաղդ քո ընդ չարա-
բաղդին Յուգուրթայ խառներ»:
Առ այս Թագաւորն քաջութ̃բ
արար պատասխանի՝ թէ «Ըղձալի
է և ինձ խաղաղութիւն, այլ ողոր-
միմ ընդ բաղդ Յուգուրթայ. ե-
թէ հռովմայեցիք զնոյն և նմա ա-
ռաջարկեսցեն, ամենայնիւ յաջո-
ղեսցի»: Դարձեալ Մետեղղոս
'ի պատասխանի խնդրոցն Բոկքո-
սի դեսպանս արձակեաց, իբրաց

իրաց հաւանեալ՝ զայլս ժխտէր։ Եւ զայս օրինակ երկուստեք ստէպ բանագնացութեամբք ժամավաճառ լինէին. և յաջողէր կամաց բդեշխին չմտել ՚ի մարտ։

ՁԴ. Բայց Մարիոս, որպէս կանխեալ ասացաք, մեծատենչ ըղձիւք ռամկին բդեաշխ կացեալ, իբրև էառ հրամանաւ նորին և զիշխանութիւն Նումիդիոյ, վաղ իսկ ոխերիմ ազնուականաց՝ ևս քան զևս յայնժամ հակառակորդ եկաց նոցին. մերթ ուրոյն զոմանս, և մերթ առ հասարակ զամենեսեան թշնամանէր, և ստէպ յեպյեղէր ՚ի պարտելոց անտի առեալ աւար զբդեշխութիւն. և այլ բազում ինչ յանձին պարծանս և ՚ի նոցին նախատինս յաւելոյր։ Ի նմին ժամանակի որ ինչ պէտք էին պատերազմի հոգայր, լնոյր զլէգէոնիցն պակասութիւն, և խնդրէր օգնականութիւն ՚ի նիզակակից ազգաց և ՚ի Թագաւորաց. և ՚ի Լատինն կոչէր զընտիր զօրականն, յորոց բազումք ընդ

ձեռամբ նորա զինուորեալ էին ,
և սակաւք ևեթ ծանօթք 'ի լոյս .
և զայնոսիկ իսկ որոց լցեալ էր
զժամանակ զինուորութե̃ , ստի-
պէր ընդ իւր 'ի պատերազմ : Եւ
ծերակոյտն թէպէտ դժկամակ՝
չիշխէր ձիկ հանել ընդ գործս
նորա . բայց յօժարութեամբ տայր
զհրաման զօրաժողովոյ 'ի լրումն
լէգէոնացն , համարելով անհա-
ճոյ ռամկին զայս զինուորութի̃ ,
որով ակն ունէր կամ կարօտել
Մարիոսի 'ի կարևորաց մարտի , և
կամ կորուսանել նմա զշնորհս
ժողովրդեան : Այլ 'ի դերև ել
ակնկալութիւն նորա . զի բուռն
տենչային բազումք զինուորել
ընդ Մարիոսիւ , յուսացեալք լի
աւարաւ և յաղթական փառօք
դառնալ 'ի տուն , և այլովք սոյն-
պիսի ակնկալութեամբք : Զօրս
և ատենաբանութեամբն իւրով
արծարծանէր Մարիոս ոչ սա-
կաւ . քանզի 'ի վճռել ծերակու-
տին զամենայն խնդիրս նորա՝ իբրև
կամեցաւ զօրաժողով լինել , առ-

'ի յորդոր ժողովրդեան և առ 'ի
կծանել զազատանին՝ որպէս սո-
վորն էր, 'ի ժողով զռամիկն գու-
մարեաց. և խօսեցաւ օրինակ զայս.

ՁԵ. « Գիտեմ, ո՜ կուիրի-
տեանք, զի բազումք ոչ նովին պայ-
մանաւ՝ որով խնդրեն 'ի ձէնջ
զիշխանութիւն, յետ ընդունելու-
թեանն վարին նովաւ. 'ի սկզբանն
փոյթք, աղաչաւորք և զգօնք, և
ապա յոյլք և գոռոզամիտք երևին:
Այլ ինձ թուի զի ընդ հակառակն
պարտ էր նոցա քաղաքավարել.
քանզի որչափ գեր 'ի վերոյ է հա-
սարակաց պետութիւն քան զբը-
դեշխութիւն և զզօրավարութիւն,
նոյնչափ առաւելագոյն փութոյ
պէտք են 'ի վարել զայն, քան 'ի
հետամուտ լինել սոցին: Ոչ ան-
գիտանամ որպիսի ինչ գործ 'ի
մեծէ բարերարութենէդ ձերմէ
յանձն է ինձ: Ի մարտ պատրաս-
տել, միանգամայն և խնայել 'ի
գանձ հասարակաց. ստիպել 'ի զի-
նուորութիւն զորս չեն կամք դըժգ-
մնեցուցանելոյ. տուտնին և սր-

տաքոյ խնամել զամենայն , և այն 'ի մէջ յաչաղկոտ ոխերիմ և խռովասէր մարդկան , գժնդակագոյն է քան զկարծիս, ո՛ կուիրխոսեանք: Մանաւանդ զի 'ի սայթաքել այլոց՝ ազնուականութիւն վաղեմի, նախնեաց արութիւնք, ազգականաց և մերձաւորաց զօրութիւն , և ձեռնասունք բազումք հասանեն նոցա 'ի Թիկունս . իսկ իմս ակընկալութիւն յիս միայն հաստատեալ է, զոր անմեղութեամբ և առաքինութեամբ պարտ է ամրապնդել, զի այլն ամենայն անկայուն է :

Քաջ 'ի միտ առնում, ո՛ կուիրխոսեանք, զի ամենեքեան ակնկառոյց կան յիս . լաւք և արդարակորովք 'ի նպաստ ինձ, զի սպասաւորեմ հասարակաց պետութեանս . իսկ ազնուականք պատճառս խնդրեն յարձակելոյ յիս: Որով մեծագոյն ջանից պէտք են ինձ, զի դուք մի խաբիցիք, և նոքա ելցեն 'ի դերև: Անդստին 'ի մանկութենէ մինչև 'ի հասա֊

կըս յայս այնպէս վարեցի կեանս,
զի սովորականք են ինձ ամենայն
աշխատութիւնք և վտանգք. և զոր
յառաջ քան զձերդ բարերարու-
թիւն անվարձ առաքինանայի,
յընդունել վարձս առ 'ի ձէնջ՝
լքեալ թողուլ զայն չէ իմաստու-
թիւն, ո՛ կուիրիտեանք: Դժուա-
րին է նոցա 'ի չափու ունել զան-
ձինս յիշխանութեան, որք առ
փառասիրութեան զլաւութիւն
կեղծաւորին. իսկ ինձ, որ զընա-
կեանս իմ 'ի մարզս առաքինու-
թեանց անցուցի, բարիս գործել
արդ 'ի սովորութենէ 'ի բնութի̅
փոխեցաւ: Դժպհի եղև ազատա-
նեայն զի պատերազմ ընդ Յու-
գուրթայ մղել ինձ հրամայեցէք.
խորհեցարուք աղաչեմ, լաւա-
գո՞յն իցէ արդեօք փոխել զընտրու-
թիւնդ, և 'ի դնդէ ազնուականաց
զոք առ այս կամ առ այլ գործ
արձակել, այր 'ի վաղեմի զարմէ
և ձոխ նախնեացն կենդանագրօք,
բայց անփորձ զինուց, որ 'ի մեծի
պատերազմիս ազէտ քան զամե-

նայն ոք դեդևիցէ , և շտապեալ
տագնապեալ կալցի զոք 'ի ժողո-
վրդենէ խորհրդական գործոց իւ-
րոց ։ Յաճախ իսկ այս այսպէս
պատահեաց , զի զոր դուք հրամա-
նատար զօրացն կացուցէք՝ նա այ-
լոյ ուրուք զօրավորի 'ի խնդիր
լինէր ։ Գիտեմ իսկ զայնոսիկ , ո՛
կուիրիտեանք , որոց բդեաշխ կա-
ցեալ արքյետասամիւք՝ ապա յետ
այնորիկ ձեռն արկին ընթեռնուլ
զարութիւնս նախնեաց և զօրէնս
զինուորութեան Յունաց ։ Զի
թէպէտև յետոյ է հրամայել քան
զառնուլ իշխանութի , այլ փոր-
ձոյ իրացն պարտ է կանխել քան
զգործ հրամանատարութեան ։ Ի
կշիռ ածէք արդ , ո՛ կուիրի-
տեանք , ընդ գոռոզութեան նո-
ցին զիս զայր նորահաս ։ Որոց
միանգամ 'ի լոյ և ընթերցանու-
թեամբ գիտակ են նոքա , մասին
ինչ ականատես գտեալ եմ և մա-
սին գործակից ․ և որ ինչ նոքա 'ի
գիրս , ես 'ի զէն և յասպարիզի
ուսայ ։ Արդ դուք ձեզէն տուք

զիրաւն, քանզի թէ արդիւնք իցեն
ընտրելի ։ Արհամարհեն նոքա
զիմ անտոհմութիւն, և ես զնո֊
ցայն ապիկարութիւն. նոքա ինձ
զբաղդ, իսկ ես զանարժան գործս
նոցա մեղադրեմ ։ Մի է բնութիւն
և հասարակաց ամենեցուն ըստ
խմոցս կարծեաց. այլ որ քաջա֊
գոյնն է, նա է ազնուական ։ Ե֊
թէ էր հնար զնախնիս Ալբինոսի
և Կալպուռնեայ հարցանել, զնո֊
սա՞ արդեօք եթէ զիս ընտրէին ու֊
նել իւրեանց զաւակ, զո՞ր պա֊
տասխանի համարիցիք թէ տային,
բայց զի լաւագունից ցանկալ
ծնող լինելոյ ։ Եթէ իրաւամբք
դոքա անգոսնեն զիս, անգոսնես֊
ցեն և զնախնիս իւրեանց որք ի֊
րև զիս յառաքինութենէ ընկա֊
լան զազնուականութի ։ Նախան֊
ձին ընդ փառս իմ, նախանձեսցին
ապա և ընդ վաստակ իմ, ընդ ան֊
բծութիւն կենաց և ընդ վտանգս,
որովք զայն ստացայ ։ Այլ դոքա
արք ամբարհաւաճք՝ կեան որ֊
պէս թէ արհամարհելով զպա֊

տիւս առ 'ի ձէնջ, և հետամուտ լինին պատուոյ որպէս եթէ արժանի այնոցիկ կեցեալ իցեն։ Անիրաւին տպաքէն զանկցորդելեան միանգամայն խնդրելով, ըղդատարկապորտութիւն հեշտութեան և զվարձս առաքինութե՟։ Դարձեալ և 'ի խօսել իւրեանց առ ձեզ կամ առ ծերակոյտն դովութիւնս բազումս զնախնեացն յօրինեն, և զարութիւնս նոցա պատմելով՝ պայծառացուցանել զանձինս ջանան, այլ հակառակ ընդդէմ ամենևին։ Զի որչափ մեծապայծառ իցեն նոցա կեանք, նոյնչափ ևս առաւել վատութիւն սոցա անդոսնելի։ Եւ ի՞բր ոչ. քանզի փառք նախնեաց լոյս է պայազատաց նոցա, որ զբարին և զչար չթողու 'ի թագստի։ Ի փառաց նախնեաց թափուր գտանիմ, ո՛ կուիրիտեանք, այլ պայծառագոյն ևս մարթ է ինձ զարութիս իմ յառաջ բերել։ Տեսէք քանի՛ անիրաւք են. ինքեանք օտարին առաքինութեամբ պանծան, և

ինձ իմովս ոչ ներէն պանծալ, այնու զի չէն ինձ պատկերք նախնեաց, և զի նոր ազնուականութիւնս իմ սկսանի. այլ չիցէ՞ իսկ լաւագոյն յանձնէ սկսանել, քան զժառանգեալն 'ի նախնեաց եղծանել: Գիտեմ զի առ 'ի պատասխանել ինձ չպակասեն նոցա պերճ՚ և ողորկ բանից սեթևեթք: Այլ քանզի վասն մեծի բարերարութեան ձերոյ առ իս՝ ամենայն ուրեք զիս և զձեզ չարախօսութեամբք խածատեն, չկամեցայ լռել, զի մի համբերութիւնս իմ 'ի խոստովանութիւն ճաստապարտութեան ինձ գրեսցի: Զի ոչ ինչ ճառատանք գիտակցութեաս իմում կարիցեն ստանել. եթէ ճշմարիտ իցեն՝ հարկ է զի 'ի գովեստ լիցին ինձ. իսկ եթէ սուտ, կեանք իմ և գնացք յանդիմանեսցեն զայն: Այլ քանզի զվձիւդ ձեր ամբաստանեն, զի պատիւ մեծ և գերագոյն գործ իշխանութեան ինձ յանձն արարիք, անդէն վերստին 'ի քնին մատուցէք

մի՛ գուցէ զղջասջիք ընդ այն ։ Չկարեմ ապաքէն պատկերս և յաղթանակս զնախնեաց իմոց և զբդեշխութիւնս նոցա ածել 'ի մէջ. այլ եթէ պէտք իցեն՝ ածից նիզակս, դրօշս, ախոյեանս և այլ մրցանակս զինուորութեան. 'ի վերայ այսոցիկ և այլս ընկալեալս ոչ 'ի թիկանց ։ Սոքա են իմ պատկերքս, սոքա ազնուականութիւն՝ ոչ ժառանգեալ որպէս զնոցայն, այլ բազում ճգամբ և վտանգօք կենաց 'ի բուռն ածեալ ։ Չիցեն արդեօք քաջ ողորկեալ բանք իմ, այլ ոչ մեծ ինչ գրեմ զայն. առաքինութիւն շատ իսկ ճանաչի իւրև. ճարտարութիւն բանից նոցա է կարեւոր առ 'ի պատրուակել զամօթալի գործս իւրեանց ։ Չուսայ հելլէն դպրութիւն, զի չեղև ինձ փոյթ ուսանելոյ զայն, քանզի ուսուցչացն չէր ինչ յաւելեալ նոքա յառաքինութիւն ։ Այլ որ ինչ շահաւէտն էր հասարակաց պետութեան ուսայ՝ վէրս տալ թշնամեաց, հսկել 'ի

պահ զգուշութեան, չերկնչել
ուստեք՝ բայց 'ի վստահունութէ,
տոկալ ցրտոյ և տօթոյ, գետնա-
խշտի լինել, և միանգամայն քաղ-
ցու և աշխատանաց տանել: Սո-
քօք զզօրականն խրախուսեցից. մի-
լեցի նոցա 'ի կարօտութե̃ կեալ,
և ինձ 'ի լիութեան. և ոչ զպար-
ծանս ինձ սեփականել, և թո-
ղուլ 'ի նոսա զաշխատութի̃: Այս
իսկ է յօգուտ վարել զիշխանու-
թիւն, և այս քաղաքական տես
չութիւն. քանզի յապահովն և 'ի
մեղկութեան կեալ, և զզօրականն
սպառնալեօք պատուհասից աշ-
խատ առնել, բռնաւորի է գործ
և ոչ զօրավարի. զայս օրինակ
նախնիք ձեր զանձինս և զհաս-
րակաց պետութիւն մեծահամ-
բաւ կացուցին: Ի նոսա արդ ա-
ղատանին պանծացեալ՝ աննման
ամենեին գնացից նոցա, զնախան-
ձորդս նոցին զմեզ անգոսնեն, և
իբրև հարկս պահանջեն 'ի ձէնջ
զամենայն բարձ և պատիւ՝ որոց
անարժանք գտանին: Այլ խաբին

յոյժ յամբարհաւաճութեան իւ-
րեանց. ժառանգեցին 'ի նախ-
նեաց իւրեանց զամենայն որ ինչ
մարթն էր ձոխութիւնս, պատ-
կերս և անուն պայծառ, այլ զա-
ռաքինութիւն ոչ ևս, քանզի և
կարէին իսկ ոչ. զի զաս ևեթ ոչ
աւանդել ումեք և ոչ ժառանգել
յումեքէ մարթ է: Անկիրթ հա-
մարին զիս և կծծի, այնու զի չգի-
տեմ մեծահաց կոչունս պատրաս-
տել, ոչ խեղկատակս ածեմ, և
ոչ 'ի խաղարարս աւելի ինչ ծա-
խեմ քան 'ի վարձկան հողագործս:
Հաճոյ իսկ է ինձ խոստովանել
զայդ. այսպէս 'ի հօրէ իմմէ և
յարանց լաւաց ուսեալ՝ զի զեղ-
խութիւն՝ կանանց վայել է, իսկ
արանց աշխատութի. և զի առնա-
ռաքինեաց կարևորագոյն են փառք
քան զմեծութիւնս ընչից. և զի
զէնք և ոչ կարասիք են նմա 'ի
զարդ: Իսկ եթէ այլ ազգ թուի
նոցա, որ ինչ հաճոյ է՝ զայն մե-
ծարեսցեն, 'ի նոյն յօրասցին, և
զնովիմբ միշտ դայցեն. յորս ան-

ցուցին զոխս մանկութեան՝ 'ի
նոսին և զծերութեան հասակ
վարեսցեն, 'ի գինեբրբուս և 'ի
շուայտութի և յամօթալիան անձ-
նատուրք, թողեալ մեզ զքըր-
տունս և զփոշի այլովքն հանդերձ,
որ քան զկարախձանս նոցա սիրելի
են մեզ: Այլ նոքա ոչ այսպէս,
այլ եղծեալ ապիրատութեամբքն
զհամբաւ իւրեանց արք եղծա-
պիղծք, ձեռնարկեն 'ի յափշտա-
կութիւն վարձուց առաքինեաց:
Այսպէս յանկրաւի շուայտութի
և մեղկութիւն չարախտաւոր՝ ոչ
ինչ իմաստակար եղեալ վարելոցն
նոքօք, անպարտական համարա-
կապետութեանն լինելն 'ի կործա-
նումն: Յայս վայր առ նոսա ըստ
իմոցս բարուց պատասխանեալ,
և ոչ որպէս ապիրատութիւն նո-
ցա պահանջէրն, սակաւուք արդ
և զիրաց համարակաց խօսեցայց:
Յառաջ քան զամենայն վստահ
լերուք զելից մարտին Հումիգիոյ,
ո՛ կուիրիտեանք, զի որ ցարդ
պատապարանքն էին Յուգուր-

թայ, բարձէք զայնս 'ի միջոյ, զա֊
գահութիւն ատեմ, զանհմտու֊
թիւն և զգոռոզութիւն: Ի ձեր
անդ բանակ եղի և մտի երկրին
հմուտ, այլ արդարեւ արիագոյն
քան բարեբաղդ. զի առաւելա֊
գոյնք 'ի զօրաց անտի ընչաքաղցու֊
թեամբ կամ յանդգնութեամբ զօ֊
րավարացն կորեան: Արդ որ բա֊
նականքդ էք 'ի զէն, պատերազ֊
մակից լերուք ընդ իս 'ի վերայ
հասարակապետութեան, մի՛ ոք 'ի
տառապանաց որ հասին այլոց,
կամ յամբարտաւանութենէ զօ֊
րավարաց երկիցէ: Ես ինքնին ընդ
ձեզ եմ 'ի չու և 'ի ճակատու պա֊
տերազմի խորհրդական, կցորդ 'ի
վտանգս, և հաւասար ամենայն
ուրեք ընդ ձեզ: Ամենայն ինչ
դիցն օգնականութբ̃ պատրաստ
է. յաղթութիւն, աւար և գո֊
վութիւն. որ եթէ կեղակարծ իսկ
էին և հեռի, սակայն պարտ էր
առաքինեաց դիմել յօգնութիւն
հասարակապետութեան: Զի ոչ
դատարկութեամբ ոք անմահա֊

ցաւ. և ոչ ոք 'ի հարց յանմա-
հութիւն որդւոց իւրոց ցանկա-
ցաւ, այլ բարեկիրս գոլ և առա-
քինիս: Բազում և այլ ինչ խօ-
սէր, կուիրիտեանք, եթէ բանք
յաւելուլին վատացզքաջութիւն.
այլ քաջաց շատ իսկ համարիմ խօ-
սեցեալ”:

ՁԶ. Իբրև ետես Մարիոս
սրտապնդեալ 'ի բանից անտի ըզ-
ժողովուրդն, աճապարեաց լնուլ
զնաւս համբարովք, գանձուք,
զինուք և այլովք կարևորօք, և
Աւղոսի Մանլիոսի տեղակալին
պատուէր ետ չու առնել յԱփրի-
կէ: Եւ ինքն զօրաժողով լինէր
ոչ ըստ նախնի սովորութեան 'ի
կարգաց քաղաքացւոց, այլ և յաղ-
քատաց բազումս որ ոք և կամէր:
Ոմանք առ նուաղութեան լաւ-
որերոյ համարեցան զայս այսպէս
գործեալ բդեշխին, և այլք առ
ամբարհաւանութեանն, որ յայս-
պիսեաց փառաւորեալ և ամբար-
ձեալ էր 'ի պատիւ, և զի առն
իշխանաւորի կարևոր էին և պատ-

կանաւոր այնոքիկ, որոց չէր ինչ հոգ զգուշից՝ որ չգոյին իսկ նոցա, և որք զամենայն ինչ պատշաճ համարէին ընդ արծաթոյ: Այսպէս Մարիոս բազմագոյն քան զսահմանեալն գումարեալ զօրս, անց յԱփրիկէ, և 'ի սակաւ աւուրս եհաս յՈւտիկէ. և 'ի Պոմպեայ Հռութիլեայ յանձն եղև նմա բանակն. քանզի Մետեղղոս խոյս տուեալ էր յերեսաց Մարիոսի, զի մի լիցի ականատես իրաց՝ որոց և լուր իսկ անհանդուրժելի լեալ էր նմա:

ՁԷ. Բայց բդեշխին բովանդակեալ զլէգէոնս և զհետևակազօրն նիզակակից, դիմեաց նոքօք յերկիր որդաւանդ և փարթամ աւարաւ, և զամենայն կապուտն 'ի զօրականս բաշխեաց: Ապա զամրոցս և զքաղաքանին տկար 'ի բնէ կամ 'ի պահպանութենէ՝ յարձակմամբ առնոյր, և բազում պատերազմունս 'ի տեղիս տեղիս տայր, ընդ առաւելագոյն մասին Թեթևս, յորս նորավարժ զօրա-

կանն աներկիւղ դիմագրաւէր 'ի մարտ, տեսանէր ձերբակալս լեալ և սպանեալ զփախստեայս, իսկ զարիացեալս անքոյթս . և ուսանէր զինուք զազատութիւն, զհայրենիս և զազգակիցս և զամենայն ինչ պաշտպանել, և նովաւ խընդրել զփառս և զմեծութիւն: Այսպէս հուպ ընդ հուպ նորամարզքն ընդ հինաւուրց զօրականին խառնեալ հաւասարեցին քաջութեամբ:

Իսկ իբրև լուան թագաւորք զգալատենէ Մարիոսի, յայլ և այլ դժուարուտ վայրս մեկնեցան. այսպէս լաւ համարեալ Յուգուրթայ, քանզի յուսայր 'ի վերայ հասանել վայրատեալ թըշնամեոյն, համարելով զհռովմայեցիս որպէս սովոր են բազումք՝ 'ի հեռանալ երկիւղի թուլագոյնս գոլ:

ՁԸ. Յայն աւուրս Մետեղլոս հասեալ 'ի Հռովմ՝ հակառակ ակնկալութեան իւրոյ մեծաշուք ընդունելութիւն գտա-

նէր. 'ի դադարել նախանձուն սիրելի լեալ ռամկին և ազնուականաց: Իսկ Մարիոս ժիրաժիր և զգոյշ, իւրոցն և թշնամեաց միտ դնէր՝ որ ինչ երկաքանչիւրոցն էր 'ի նպաստ կամ 'ի տոյժ. լրտեսէր զճանապարհս թագաւորաց, և զխորհրդոց նոցին և զգարանաց զառաջս առնոյր, ոչ հանդիստ անձին, և ոչ նոցա ապահովութեան տեղի տուեալ: Զգետուլացիս և զՅուգուրթ որ յերկիրն Նիզականկցաց մերոց ասպատակէին'ի հարուածս սաստիկս առէպ յարձակմամբ 'ի փախուստ դարձուցանէր, և զալքայն իսկ զՅուգուրթ ոչինչ հեռի 'ի Կիրտայ կապտէր'ի գլխուց: Բայց տեսեալ զի թէ շքեղ էին և արութիւնքն, այլ ոչ 'ի յաղթանակ պատերազմին, եդ 'ի մտի պաշարել զքաղաքս, որ ապահովականօքն և դրիւք կարևորք էին թշնամեաց և իւր 'ի վնաս, և այսպէս կամ արկանել'ի զօրութէ զՅուգուրթ, և կամ ստիպել զնա 'ի պատերազմ:

Քանզի Բոկքոս ստէպ պատգա-
մաւորս առաքեալ առ Մարիոս՝
յայս առնէր, զի ցանկայր բա-
րեկամութիւն առնել ընդ ժո-
ղովրդեան Հռովմայ, և զի մի կա-
կած թշնամութեան կայցի զնմա-
նէ։ Նա զայս կեղծէր արդեօք առ
'ի գրոհ տալ յեղակարծուց, ե-
թէ առ յեղյեղուկ մտաց՝ մերթ 'ի
խաղաղութիւն և մերթ 'ի պատե-
րազմ փոխէր, ոչ է յայտ։

ՁԹ. Իսկ բդեաշխն, որպէս
սահմանեալ էր, խաղաց 'ի վերայ
ամուր ամուր քաղաքաց և բերդո-
րէից. զկէսս բռնութեամբ զի-
նուց, զայլս սպառնալեօք կամ
խոստմամբ առնոյր 'ի թշնամեաց։
Ի սկզբան անդ 'ի տկարագոյնն
յարձակէր, զի թերևս Յուգուրթ
'ի պաշտպանութն իւրոցն 'ի զէն
գայցէ։ Այլ իբրև գիտաց զի նա
հեռի յայլ գործս պարապէր,
ժամ պատեհ համարեցաւ 'ի մե-
ծամեծան և 'ի դժուարինս ձեռ-
նամուխ լինելոյ։ Էր յահագին
անապատի անդ քաղաք մեծ և զօ-

րաւոր Կափսա անուն, շինեալ 'ի Հերակլեայ լիբէացւոյ՝ որպէս աւանդի ։ Բնակիչք քաղաքին ազատք 'ի հարկաց՝ ընդ թեթև լըծովն իշխանութեան հաւատարիմք էին Յուգուրթայ, ամրացեալք ոչ միայն պարսպօք և զինուք և զօրօք ընդդէմ թշնամւոյն, այլ և վայրացն դժուարութբ̃ ։ Քանզի բաց 'ի շրջակայից քաղաքին, այլ ամենայն երկիրն թափուր 'ի մշակութենէ, անջրդի և լի էր օձիւք թիւնաւորօք. որոց զօրութիւն առ 'ի չգոյէ ճարակի բարկագոյնս պատահէ, որպէս և ամենայն գազանաց. դարձեալ զի և այս ազգ վնասակար օձից 'ի ծարաւոյ առաւել քան այլով իւիք զայրանայ ։

Արդ զօրն զայս քաղաք 'ի բուռն առնուլ տենչայր Մարիոս առ 'ի պէտս պատերազմին և առ 'ի յաղթանակել դժուարութե̃ց. քանզի և Մետեղղեայ առեալ էր փառօք մեծաւ զքաղաքն Թալա, որ դրիւքն և ամրութեամբ ոչ

ինչ ընդհատ էր քան զԿափսա ·
բայց միայն զի մերձ առ պարսպօք
Թալայ էին աղբիւրք ոմանք · իսկ
՚ի Կափսա մի եւեթ աղբիւր էր, և
այն ՚ի ներքս ՚ի պարսպին մշտա-
հոս, և հարկ էր բազմաց ՚ի քա-
ղաքայնոց վարել անձրևային ջը-
րովք ։ Այժմ որ անդ և որ ընդ
համօրէն Ափրիկէ բնակիչք հեռի
՚ի ծովէ բրտագոյն կենցաղով
կեալ Ճահաւորեալք՝ դիւրութե̃
տանէին, զի բազումք ՚ի Նումիդա-
ցւոց կաթամբ և մսով երէոց սնա-
նէին, ոչ աղ և ոչ այլ ինչ ՚ի մար-
մաջ որկորոյ ՚ի կիր արկեալ, զի
կերակուր նոցա ՚ի բուժումն քաղ-
ցոյ է և ծարաւոյ, և ոչ ՚ի շուայ-
տութիւն և յորկորուստ ։

Ղ· Արդ բդեշխին յետ քննե-
լոյ զամենայն, ՚ի դիւ որպէս կար-
ծեմ ապաստանեալ, զի չէր իսկ
մարթ զայնքանեաց դժուարու-
թեանց զառաջս ունել իմաստու-
թեամբ, քանզի ցորենոյ իսկ կա-
րօտ գտանէր, զի Նումիդացիք ա-
րօտից խաշանց առաւելագոյն իր-

նամ ունէին .քան արտօրէից և կա֊
լոյ, և որ ինչ հունձքն լեալ՝ զամե֊
նայն 'ի հրամանէ արքայի յամուրս
ածեալ էին, և երկիրն յայնժամ
'ի վերջ կոյս ամարայնոյ ցամաք և
յամենայն բերոց մերկ գտանէր:
Սակայն ըստ ժամուն հանդամա֊
նաց զկնութիւն բաւականի հոգա֊
ցեալ խմաստութե՟, զամենայն ան֊
դեայն զոր աւուրբք յառաջ յա֊
ւարի առեալ էր, օգնական այ֊
րուձիոյն տայր 'ի պահ. և զԱւղոս
Մանլիոս տեղակալ հետևակազօ֊
րուն արձակեալ 'ի Լարիս քաղաք,
ուր զուռձիկս զօրաց և զպարէնս
ամբարեալ էր, հրամայեաց յա֊
ռաջել քան զինքն, խոստացեալ
հասանել անդր ինքնին յետ սա֊
կաւ աւուրց լի աւարաւ: Եւ այս֊
պէս զխորհուրդս մտացն Թագու֊
ցեալ, չու արար խաղաց 'ի գետն
Տանայ:

ՂԱ. Բայց 'ի Ճանապարհի օր
ըստ օրէ յանդգնոց անտի բաշխէր
բանակին հաւասարապէս 'ի հա֊
րիւրապետս և 'ի զօրականն առ 'ի

զէնումն , և 'ի մորթոցն տիկս տայր
գործել . որով օգնէր կարօտու-
թեան ցորենոյ , և յանգէտս ամե-
նեցուն պատրաստէր որ ինչ յետ
սակաւուց պիտանի լինելոց էին :
Եւ յաւուրն վեցերորդի երբև
հասին 'ի գետանդր , մեծ ևս ճիգն
գործէին 'ի պատրաստել տիկս :
Անդ զանկիշ հարևանցի ածեալ՝
հրամայեաց զօրուն առնուլ կե-
րակուր , և 'ի մուտս արևուն կազմ
լինել 'ի չու , և զամենայն կարա-
սին թողեալ՝ բառնալ ջուր բա-
ղում 'ի գրաստս և ընդ անձին :
Ապա երբև ժամ պատեհ թուե-
ցաւ՝ խաղացոյց զբանակն , և զգի-
շերն ամենայն չու արարեալ՝ ըդ-
տեղի հառ . զնոյն արար և յա-
ւուրն երկրորդի . և ապա յեր-
րորդումն աւուր յառաջ քան
զարշալուրջս եհաս 'ի տեղի ու-
րեք բազմաբլուր՝ ոչինչ առաւել
քան զերկուս մղոնս հեռի 'ի
Կափսայ . անդ լռելեայն որպէս
հնարն էր՝ ամենայն բանակաւ
թագեաւ : Եւ 'ի ծագել արևու

յորժամ Նումիդացիք անկասկած 'ի Թշնամեաց ելանէին 'ի քաղաքէն գունդագունդ, հրամայեաց յանկարծ ամենայն այրուձիոյն և Թեթևընթաց զօրաց դիմել 'ի Կափսա և ունել զդրունս, և ինքն շտապաւ հետամուտ եղև նոցա, այլ չէԹող զօրուն աւար հարկանել ։ Իբրև զայն տեսին քաղաքացիքն, տագնապ տարակուսին, երկիւղն ահագին, աղէտքն յեղակարծ, և զի բազումք 'ի քաղաքացւոց արտաքոյ պարսպաց կային ընդ ձեռամբ Թշնամւոյն, հարկեցուցին զնոսա անձնատուր լինել ։ Քաղաքն հրայրեաց դատեցաւ, և արբունք Նումիդացւոց կոտորեալ, մնացեալքն վաճառեցան 'ի ստրկուԹի, և աւարն բաշխեցաւ զօրականին ։ Այս գործ ընդդէմ օրինաց մարտի ոչ առ ագահուԹեան և ոչ առ եղեռանէ բդեշխին գործեալ, այլ զի դիպող էր վայրն ՅուգուրԹայ և մեզ անմատոյց, և մարդիկ տեղւոյն յեղյեղուկ և հաւատա֊

դրուժ, ոչ բարերարութեամբ և ոչ ահիւ երբէք սանձահարէին :

ՂԲ. Մարկոսի զայսպիսի գործ կարեւոր առանց զիւրսն աշխատ առնելոյ 'ի գլուխ տարեալ, մեծն և երևելին՝ մեծագոյն այնու և երևելագոյն եղանէր : Յանդգնութիւնք իսկ նորա այնուհետև յառաջնութիւնս նմա գրէին. և զօրականն ընդ քաղցր իշխանութ̃բ նորա վայելեալ և մեծացեալ՝ երկնաչափ ամբառնայր զնա դրուատեօք : Նումիդացիք առաւել քան 'ի մահկանացուս երկնչէին 'ի նրմանէ. և այլք նիզակակիցք և թշնամիք հանճար իմն գերաշխարհիկ 'ի նմա նկատէին, և 'ի դիցն ակնարկութ̃է թուէր նոցա գործել նմա զամենայն : Իսկ բդեաշխըն յետ յաջողութեան գործոյն դիմեաց և յայլ քաղաքս, զոմանս էառ պատերազմաւ, և զյոլովս որ լքեալ թողեալ էին 'ի Նումիդացւոց վասն աղէտիցն Կափսայ՝ հրկէզ արար. և յանձնեաց ամենայն ուրեք սուգ և կոտորած :

Նու տիրապետեալ տեղեաց բազ-
մաց, յաճախ ուրեք և առանց իւ-
րոցն արեանհեղութեան, ձեռն
արկ և յայլ իմն գործ, որ թէ-
պէտ և ոչ իբրև զկափասացուոցն
խոչ դժնդակ առաջի անկեր, սա-
կայն ոչինչ նուազ էր դժուարին:
Ոչինչ հեռի 'ի Մոլուքայ գետոյ,
որ բաժանէր ընդ տէրութեն Յու-
գուրթայ և ընդ Բոկքոսի, էր
լեառն քարաժայռ 'ի դաշտի լայ-
նանիստ և բարձրագագաթն, և 'ի
վերայ նորա ամրոց ոչինչ մեծա-
կառոյց, յոր ընդ անձուկ վերելս
էր մուտ, այլ ամենայն կողմանք
լերինն 'ի բնուստ և ձեռագործ
սեպացեալք: Զսա Մարիոս, զի
անդ էին գանձք Թագաւորին, եդ
'ի մտի զինու զօրութեամբ առ-
նուլ, այլ դէպք առաւել յաջո-
ղեցին նմա զայն քան զճարտա-
րութիւն խորհրդոց: Քանզի հզօր
էր ամրոցն զինուք և զօրօք, և պա-
շար ցորենոյ 'ի նմա և աղբիւր
ջուրց. և վայրն դժպատեհ 'ի կա-
ռուցումն հողաբլրոյ, աշտարա-

կաց և կարևոր կազմածոց մարտի , և Ճանապարհ բերդականաց ան-ձուկ յոյժ և երկուստեք դաՀա-վէժ ։ Մեքենայք և մանգղիոնք մեծամեծ վտանգօք ընդ վայր մատ-չէին անդր , զի այն ինչ Հուպ լեալ՝ 'ի Հրձգութենէ և 'ի վիմաց Հոլովելոյ ապականէին ․ և ոչ զօ-րականք առ տեղւոյն անՀարթու-թեան դիմակալել զօրէին , և ոչ 'ի մեքենայս անդր կալ անվտանգ-առ 'ի վարել զայնոսիկ ․ քաջա-մարտիկքն 'ի նոցանէ անկանէին կամ վիրաւորք ելանէին , և տկարք երկիւղաբեկ լինէին ։

ՂԳ․ Անդ Մարիոս զաւուրս բազումս սնավաստակ լեալ՝ վա-րանէր յանձն իւր , ձեռնթափ արդեօք լինել 'ի գործոյն՝ որ ան-օգուտն թուէր , եթէ բաղդին թողուլ զյաջողութիւն , այնմ որ ստէպն լինէր իւր ձեռնտու ։ Եւ իբրև զբազում տիւս և զգի-շերս յայսպիսի ծուփս խորՀրդոց տագնապէր նա , Լիգուրացի ումն 'ի դաշնակից Հետևակագնդէն զի-

նուոր սոսկական ըստ յաջողելոյ
բախտին եղեալ՚ի բանակէն զջրոյ,
ոչինչ հեռի 'ի կողմանէ ամրոցին
ուր կռուէինն՝ ետես 'ի պատա-
ռուածս ժայռից խղնջուենիս որ
սողային. յորոց 'ի միոյ յայլ և
անտի 'ի միւսն ընթացեալ առ 'ի
ժողովել, տակաւ մերձ 'ի ծագ
ամրոցին եհաս: Եւ 'ի տեսանել
զվայրն անմարդի, եկն նմա բնա-
ւորապէս խղձ անծանօթիցն հե-
տաղօտութեան: Կաղնի մեծ ըստ
դիպաց 'ի տեղւոջ անդ 'ի ժայռս
արմատացեալ էր, դուն ինչ հա-
կեալ և ապա կոր 'ի վեր աճե-
ցեալ՝ ուր դիմէ բնութիւն բու-
սականաց: Մերթ ընդ սոսս նո-
րա և մերթ ընդ սեպս ժայռից
սողոսկեալ լիգուրացին գծա-
գրեաց զյատակ բերդին. քանզի
նումիդացիք համօրէն 'ի զինին պա-
տերազմողացն կային: Եւ իբրև
լրտեսեալ զամենայն որ ինչ ընդ
հուպ կարևորն լինելոց էր, դարձ
արար ընդ նոյն ճանապարհ, ոչ
հարևանցի որպէս 'ի վերելն, այլ

տեղեկանալով ամենայն վայրացն և շուրջ դիտելով: Ապա աճա-պարեալ գայ առ Մարկոս, պատ-մէ զամենայն և յորդորէ զնա ընդ-կողմն ընդ որ իջեալն էր՝ դիմել 'ի բերդն, խոստացեալ անձամբ ա-ռաջնորդել՝ զվտանգ յանձն ա-ռեալ: Մարկոս առ 'ի հաւաս-տել զբանս լրգուրացւոյն առա-քեաց զոմանս յիւրոց անտի, որք քաջ իւրաքանչիւր մտացն թուե-լոյ՝ հեշտին կամ դժուարին ըզ-գործն ցուցին: Բայց բդեշխին ոչ սակաւ խրախոյս տուեալ, ընտ-րեաց 'ի գնդէ անտի փողարացն և ընդգահարաց այս հինգ թե-թեւընթացս, և հարիւրապետս չորս 'ի թիկունս օգնականութե տուեալ նոցա, հրամայեաց ամե-նեցուն նոցա հնազանդել լրգու-րացւոյն, և 'ի վաղիւ անդր կա-տարել զգործն:

ՂԴ. Եւ 'ի սահմանեալ ժա-մանակին զամենայն ինչ կազմեալ նախ և պատրաստեալ, անկան 'ի չու: Բայց հարիւրապետացն

խրատեալ յառաջագոյն յառաջ-
նորդէն, փոխեալ էր զզէն և ըզ-
զարդ, և զոտս և զգլուխ մերկա-
ցեալ, որպէս զի հեշտեաւ ընդ-
ժայռս վերելակել կարիցեն. և
զսուր և զվահան կախեալ զթի-
կանց, և վահանքն ըստ նումիդեան
տարազու կաշեայք, որպէս զի
թեթևագոյնք լիցեն, և ՚ի բախել
նոցա ընդ վէմս ոչ ուժգին շա-
ռաչիցեն: Արդ լիգուրացին յա-
ռաջագէմ զժայռից և զհինա-
ւուրց արմատոց՝ որ ուրեք ուրեք
ցցուեալ ՚ի դուրս գտանէին, ար-
կեալ պարանս դիւրէր նոքօք ըզ-
հետ եկելոցն զվերելս. և վատա-
սրտելոց ՚ի խստութենէ Ճանա-
պարհին ձեռն կարկառէր. և ՚ի
դիպել ափափայից՝ մի առ մի
զնոսա անզէնս արձակեալ, և ինքն
ստանձնեալ զզէնս նոցա գայր
զհետ. և ուր վտանգն էր՝ ինքն
նախ արիաբար դիմադրաւէր, և
ատէպ ընդ նոյն ելևէջս գործեալ
զամենեսեան խրախուսէր: Եւ
յետ երկար և բազում աշխատա-

նաց ուր ուրեմն հասին 'ի կողմն
ամրոցին Թափուր 'ի պատերազ-
մողաց. քանզի ամենեքեան որ-
պէս և յայլ աւուրս՝ ընդդէմ Թըշ-
նամեաց երթեալ էին։ Այգ եղև
Մարիոսի 'ի ձեռն լրտեսաց յա-
ջողութեն գործոց ընդուրացւոյն.
և Թէպէտ զօրն 'ի բուն նեղեալ
էր նորա զնումիդացիս, սակայն
խրախուսեալ յայնժամ զիւրսն,
և ինքն 'ի մքենայից արտաքս ե-
լեալ, յառաջ մատչէր ընդ աս-
պարափակ հովանեաւ, և 'ի բա-
ցուստ 'ի ձեռն աղեղնաւորաց և
պարսաւորաց տագնապ ահագին
հասուցանէր Թշնամեաց։ Իսկ նու-
միդացիք՝ որոց բազում անգամ
տապալեալ և հրկէզ արարեալ էր
զմանգղիոնս հռովմայեցւոց, ոչ'ի
ներքս'ի պարսպի ամրանային, այլ
զտիւ և զգիշեր արտաքոյ դեգե-
րեալ՝ Թշնամանէին զհռովմայե-
ցիս, վատ կոչէին զՄարիոս, և զօ-
րաց մերոց գերութիւն սպառ-
նային, յաջողութեամբքն գոռո-
զացեալ։ Ի նմին պահու մինչդեռ

հռովմայեցիք առ հասարակ և թշնամիք սաստիկ պատերազմաւ գունն եղեալ երկուստեք, որքա վասն փառաց և իշխանութեան, և նոքա վասն անձանց փրկութե մարտնչէին, և ահա յեղակարծումն 'ի թիկանց ձայնք հնչեցին փողոց. և նախ կանայք և մանկունք, որ կային 'ի զնին մարտին, փութացան 'ի փախուստ. ապա որք մերձ առ պարսպօքն էին, և ապա զինեալք և ապաղէնք: Ուրանօր այս դէպք պատահեցին, անդ հռովմայեցիք սաստկագոյնս մարտընչէին, և հասեալ վանեալ ըղթշնամիս՝ զբազումս 'ի նոցանէ տապաստ արկանէին, և 'ի վերայ սպանելոցն դիականց գրոհ տըւեալ ծարաւիք փառաց 'ի պարիսպս անդր դիմէին՝ ընդ հակառակս ընթացեալ և ոչ ուրուք ցանկութեամբ աւարոյ յամեալ: Այսպէս յանդգնութեամբն Մարիոսի օգնականեալ 'ի բաղդէն, փառս 'ի վճռպանացն եգիտ:

ՂԵ. Մինչդեռ այս իրք գոր-

ծէին, Ղ. Սիզղա գանձապետ բա-
գուն այրուձիով եկն եհաս 'ի բա-
նակն. քանզի զնա 'ի Հռովմ թո-
ղեալ էր բդեշխին վասն զօրաժո-
ղով լինելոյ 'ի Լատինաց և 'ի դաշ-
նակցաց: Եւ քանզի զառնէս մե-
ծէ անկաւ բանս, 'ի դէպ համա-
րիմ սուղ ինչ զազգէ և զբուսոյ
բարուց նորա անցանել. զի ոչ այլ
ուրեք զգործոց նորա լցլին բանք.
և Ղ. Սխաննա ստուգապատումն
և ճշմարտասէր քան զամենայն
պատմիչս իրաց նորա՝ ոչ ազատ-
օրէն թուի ինձ գրեալ զնմանէ:
Արդ Սիզղա էր յազգէ պատ-
րկաց ազնուական, այլ առ յու-
լութեան նախնեացն շիջեալ փառ-
գոգցես ազգատոհմ նորա: Ի
յոյն և 'ի լատին դպրութիս հա-
ւասարապէս ներհուն. մեծահո-
գի, սիրող գրգանաց՝ այլ առա-
ւել ևս փառաց. պարապեալ 'ի
զեղխութիւն, այլ ոչ բնաւ առ
հեշտութեան 'ի կարևորաց որ-
գելեալ. բայց միայն պարկեշտա-
գոյնս մարթ էր նմա գնալ ընդ ա-

մուսնոյն ։ Էր նա պերճախօս, խորագէտ, դիւրընտել, և ճար-
տարութեամբն 'ի կեղծել չհա-
ւատալի ։ Առատաձիր 'ի բաշխս, մանաւանդ դրամոց. և թէպէտ երջանկագոյն քան զամենայն որք էր յառաջ քան զքաղաքական յաղթութիւնն, այլ ոչ երբէք գեր 'ի վերոյ քան զքաջութիւն նորա գտաւ բաղդն, մինչև բազ-
մաց յերկբայս լինել՝ քաջագո՞յն արդեօք թէ բարեբաղդագոյն գը-
տաւ նա ։ Իսկ որ ինչ յետ այ-
նորիկ գործեաց, դժպհի է ինձ պատմել, առ ամօթո՞յ թէ առ տաղտկութեան՝ ոչ ունիմ ասել ։

ՂԶ. Արդ Սիղլա, որպէս ա-
սացաք, եկեալ յԱփրիկէ 'ի բա-
նակն Մարիոսի հեծելազօրօք, անհմուան և անփորձ մարտի՝ 'ի սուղ ժամանակի յաջողագոյն քան զամենեսեան գտանէր ։ Դար-
ձեալ զի և քաղցրութեամբ վարէր ընդ զօրականին, առատաձեռնէր խնդրողաց, և բազմաց ես ինքնա-
յօժար. դժկամակութեամբ ըն-

գունէր բարերարութեան, և փու-
թայր 'ի հատուցումն նոցին առա-
ւել քան սպարտուց արծաթոյ:
Իսկ ինքն ոչ պահանջէր փոխա-
րէնս բարեացն, այլ գուն գոր-
ծէր առաւելագոյնս ևս շնորհա-
պարտս կացուցանել: Ընդ նուաս-
տագոյնս զինջանէր խօսել զկարեւո-
րաց և զբօսալեաց. 'ի վաստակս,
'ի չու և 'ի պահ կանխէր ընդ նո-
սա. և ոչ երբէք որպէս փառա-
մոլութեան է սովորութիւն՝ ըզ-
բդեշխէն կամ զայլմէ ումեքէ չա-
րախօսէր, բայց միայն չներէր ու-
մեք խորհրդով կամ քաջութեամբ
գերազանցել զիւրև, և քան զբա-
զումս վեհագոյն գտանէր. որովք
ընդ հուպ Մարիոսի և զօրակա-
նին սիրելի եղև:

ՂԷ. Իսկ Յուգուրթ իբրև կո-
րոյս զԿափսա և զայլ ամուր ամուր
տեղիս և գանձ բազում, պատ-
գամաւորս առ Բոկքոս առաքեաց
փութալ զօրս 'ի Նումիդիա հա-
սուցանել, զի ժամ էր մղելոյ պա-
տերազմ: Այլ իբրև ետես զի

գայթ 'ի գայթի կայր նա ընդ պա-
տերազմ և ընդ խաղաղութիւն,
ձեռն էարկ վերստին պարգևս
գաղտախթել մտերմաց նորա, և
նմին ինքեան մաւրիտանացւոյն
խոստանայր զերիր մասն Նումի-
դիոյ, եթէ միայն մերժել կարաս-
ցէ զհռովմայեցիս յԱփրիկեայ
կամ 'ի սահմանաց տէրութեան
իւրոյ: Ի խոստմանէ աստի հրա-
պուրեալ Բոկքոս՝ ծանր ձեռամբ
եկն առ Յուգուրթ: Եւ գումա-
րեալ բանակք երկաքանչիւր՝ յար-
ձակեցան 'ի վերայ Մարիոսի, իբ-
րև այն ինչ ելանէր նա 'ի ձմեռո-
ցացն զտասներորդ ժամու ա-
ւուրն: Խորհէին զի 'ի պարտելն,
գիշերն որ 'ի վերայ կայր՝ պատըս-
պարան լինէր ինքեանց, և 'ի յաղ-
թելն ոչինչ արգելուր զի տեղեակ
էին վայրացն. իսկ հռովմայեցւոց
յերկոսին իսկ դէպս յաւելուր դը-
ժուարութիւն խաւարան: Ընդ-
առնուլ բդեշխին աստի և անտի
զլուր թշնամեացն գալստեան, և
ահա հասին նոքա չև ճակատեալ

բանակին, չև զկարասին ամփո֊
փեալ, չև նշան ինչ կամ պա֊
տուէր ընկալեալ: Հեծեալք մաւ֊
րիտանացիք և գետուլացիք ոչ
ճակատամարտիւ և ոչ օրինօք ինչ
պատերազմի, այլ գունդագունդ
խառն 'ի խուռն խմբեալ գրոհ 'ի
մերան եռուն: Սոքա առ հասա֊
րակ թէպէտ և 'ի յեղակարծ եր֊
կիւղէն տագնապեալք, սակայն
ոչ մոռացեալ զքաջութիւն, կէսք
'ի զէն դիմեցին, այլք զանզէնս
պաշտպանէին, և կէսք 'ի ձի աշ֊
տանակեալ ընդդէմ թշնամեաց
խոյանային: Զհինից յարձակման
քան զճակատամարտի բերէր ըզ֊
տեսիլ պատերազմին այն. ոչ դրօշք
արձակեալ, ոչ ռազմ կարգեալ.
խառն 'ի խուռն հեծեալ և հե֊
տեակ, կէսք տապաստ, այլք վի֊
րաւոր անկեալ. բազումք 'ի մար֊
տընչելն արութեամբ 'ի թիկանց
ըմբռնեալ. ոչ քաջութիւն և ոչ
զէնք բաւէին 'ի պահ, զի բազմա֊
թիւ էին թշնամիք և ամենուստ
խռնեալ: Ապա հինաւուրց զօ֊

րականն հռովմայեցի և նորքն վար-
ժեալք ընդ նոսին, տեղւոյն կամ
դիպաց օգնականութեամբ բոլո-
րեալ 'ի մի, և շուրջ պնդեալ ամ-
րակուռ, վանէին զբռնութիւն
թշնամեաց:

ՂԸ. Յայսպիսում դժնդակ
մարտի ոչինչ զարհուրեալ Մա-
րիոսի, և ոչ վհատութիւն 'ի միտս
նորա անկեալ, գնդաւն իւրով որ
'ի քաջաց քան 'ի մտերմաց էր
գումարեալ, հասանէր ամենայն
ուրեք. մերթ խոնջելոց ձեռն
տայր, մերթ 'ի սաստկագոյն
կողմն թշնամեաց խոյանայր նը-
պաստ 'ի կռիւ լինել, քանզի 'ի
խռան անդ հրամայել ոչ կարէր:
Տարաժամեալ իսկ էր օրն. սա-
կայն բարբարոսք չառնէին դուլ,
և ըստ հրամանի թագաւորացն
զգիշերն օգնական առեալ՝ վայրե-
նագոյնս կռուէին: Յանժամ
Մարիոս ըստ հարկի իրաց ժամա-
նակին խորհուրդ կալաւ հասա-
նել ունել զերկուս մօտակայ ի-
րերաց բլուրս 'ի տեղի ապաստա-

նի իւրոցն: Մէն յայնցանէ ան֊
ձուկ 'ի բանակետեղ, այլ էր 'ի նը֊
մա աղբիւր առատահոս. իսկ
միւսն քաջադէպ 'ի դղեակ, զի
շուրջ սեպացեալ և վախուտ՝
դոյզն ամրութեան էր կարօտ:
Հրամայեաց Սիղղայի անդ առ
աղբերաւն զգիշերն ամենայն դե֊
գերել հեծելովքն. իսկ ինքն
տակաւ զմայրատեալ զօրականն
'ի մի խմբեաց, մինչդեռ և թըշ֊
նամիք ոչինչ նուազ աղմկեալ էին.
և ապա զամենեսեան արագաքայլ
'ի բլուր անդր ընկրկեցոյց: Եւ
թագաւորքն 'ի դժուարութենէ
տեղւոյն բռնադատեալ՝ դադա֊
րեցին 'ի պատերազմէ. սակայն
ոչ թողին իւրեանցայնոցն հեռա֊
նալ, այլ շուրջանակի զբլրովքն
երկոքումբք նստան համապիւռ:
Ապա խիտ առ խիտ լուցեալ խա֊
րոյկս, զմեծ մասն գիշերոյն բար֊
բարոսքն ըստ սովորութեան իւ֊
րեանց 'ի ցնծութիւն, 'ի կաքաւ
և 'ի գոչիւն աղաղակի անցուցա֊
նէին. և զօրագլուխք նոցա գո֊

ռոցք՝ 'ի յաղթութիւն իւրեանց համարէին զկալն ևեթ անփախուստ: Իսկ հռովմայեցւոց որք 'ի բարձունս և 'ի մթան կալով՝ դիւրագոյնս տեսանէին զայն ամենայն, յաւելոյր խրախոյս մեծ:

ՂԹ. Մարիոս արիացեալ յոյժ 'ի թշնամեացն անհմտութենէ, հրաման ետ զօրուն 'ի խոր լռութեան կալ ամենեքին, և ոչ փող 'ի պահայոյզս ըստ սովորութեան հարկանել: Այս 'ի ծագել առաւօտու մինչդեռ թշնամիք վաստակաբեկք այն ինչ 'ի քուն մըտեալ էին, յեղակարծում փող հարին զօրք առ հասարակ հանդերձ հետևակագնդիւն և վաշտիւք և լեգէոնօք, և միահամուռ 'ի գոչիւն աղաղակի ընդ դուրս պատնիշացն արտաքս դիմեցին: Մաւրիտանացիք և գետուլացիք 'ի լուր անծանօթ և ահաւոր հրնչմանն ընդոստուցեալ 'ի քնոյ՝ ոչ 'ի փախուստ կարացին աճապարել, ոչ զէն առնուլ և ոչ այլ ինչ ելս աղագս գտանել, այլ խռո-

Ճապեալ 'ի շառաչ զինուցն և 'ի շռինդն աղաղակին, անոք անօգնական, և 'ի մերոցն հալածեալ խառն 'ի խուռն յահ և յարհաւիրս ըմբռնեալ ապշեալ կային, մինչև հարան և ցրուեցան առ հասարակ, և զէնք նոցա և դրօշք բազումք յաւարի առան. և առաւելագոյնք քան յայլ ամենայն առաջին պատերազմունս դիտապաստ անկան, զի քունն և երկիւղ անսովոր արգել փախստեանն լինէր։

Ճ. Եւ ապա Մարիոս չու արար, ուր դէմ եդեալն էր 'ի ծովեզերեայ քաղաքս ձմերել վասն պարէնիցն դիւրաւ հայթայթելոյ. իբր ոչ եթէ յաղթութեամբն թուլացեալ կամ բարձրամտեալ, այլ որպէս 'ի Ճակատ թշնամեաց քառակուսի զզօրսն գնդեալ՝ այնպէս յառաջ խաղայր։ ԶՍիղղա հեծելազօրօքն յաջումն, և զԱ. Մանլիոս աղեղնաւորօքն և պարսաւորօք և լիգուրացի հետևակօք 'ի ձախումն, և զտրիբունսն ընտիր ընտիր վաշտիւք 'ի յառաջապահս

և 'ի վերջապահս էր կարգեալ։ Դասալիք զօրականն, թէպէտ և առեալ՝ այլ զի հմուտ էր տեղեացն, զճանապարհ թշնամեացն լրտե_ սէր ։ Իսկ բդեաշխն իբր այն թէ զամենայն հոգ զանձամբ առեալ՝ ամի միտ դնէր, ամենայն ուրեք հասանէր, և ըստ իւրաքանչիւր արժանեաց գովէր կամ կշտամ_ բէր ։ Ինքն սպառազէն և կազմ, զնոյն և զօրականին հրամայէր ։ Ոչ ինչ ընդհատ 'ի չու առնելոյ զգուշանայր 'ի բանակելն, գիշե_ րապահս 'ի դրունս կարգեալ 'ի վաշտից լէգէոնից, և առ պատ_ նէշս 'ի դաշնակից հեծելոց կա_ ցուցեալ պահս ։ Դարձեալ և 'ի վերայ հողաբլրոց պահականս կարգեալ, ինքն իսկ շուրջ գայր պահայոյզ, ոչ առ կասկած ստուն_ գանելոյ նոցա հրամանին, այլ զի յօժարագոյնք իցեն զօրքն 'ի վաս_ տակ՝ վաստակակից իւրեանց տե_ սանելով զզօրավարն ։ Զի արդա_ րեւ Մարիոս ոչ անդ միայն՝ այլ և ամենայն ուրեք 'ի յուզուրթեան

մարտին պատկառանօք քան պա-
տուհասի զզօրականն նուաճէր 'ի
հպատակութիւն, զոր բազումք
փառասիրութեան նորին ընծայ-
էին, այլ սովորելոյ նորա 'ի
մանկութենէ 'ի խիստ կեանս, զի
որ այլոց դժոխըմբերն թուէր՝
նմա ցանկալի էր: Բայց սակայն
Մարկոս այսու օրինակաւ անօրի-
նեաց զօգուտ և զփառս աշխար-
հին ոչ ինչ ընդհատ 'ի խիստ զօ-
րավարաց:

ԺԱ. Արդ զկնի չորից աւուրց
ոչ ինչ հեռի 'ի քաղաքէն Կիրտայ
երևեցան յանկարծ լրտեսքն, որ
նշանակ էր մերձենալոյ թշնա-
մեաց: Այլ զի յայլ և այլ կող-
մանց գային զնոյն ամենեքեան
ցուցանելով, վարանէր բդեաշխն
որպէս զճակատն յօրինել. վասն
որոյ ոչինչ փոփոխութիւն արա-
րեալ, կայր մնայր կազմ ամե-
նուստ՝ 'ի դերև հանեալ զակն-
կալութիւն Յուգուրթայ, որոյ
զզօրսն 'ի չորս առաջս բաժա-
նեալ՝ համարէր շուրջ պաշա-

րեւ զթշնամին ։ Յայնմ վայրի
Սիզզա՝ առ որ նախ հասեալ էին
թշնամիք՝ խրախուսեաց զիւրսն ,
և խումբ կազմեալ ամրակուռ հե-
ծելովք յարձակեցաւ 'ի մաւրի-
տանացիս, մինչ այլք զկայ առեալ
հեռի 'ի նետաձգութեանց՝ որ ոչ
մերձենային առ նոսա սաստկէին։
Մինչդեռ այրուձին այսպէս մար-
տընչէր , Բոկքոս հետևակօքն՝ զոր
Վոլուքսեայ որդւոյ նորա ածեալ
էր , և առաջնումն մարտի չէր ժա-
մանեալ յամելով յուղւոյ , յար-
ձակեցաւ 'ի վերջապահս հռով-
մայեցւոց ։ Իսկ Մարիոս ընդ ա-
ռաջապահս կռուէր , ուր և Յու-
գուրթն էր բազմութեամբ իւ-
րոցն ։ Ծանուցեալ Նումիդա-
ցւոյն զգալուստ Բոկքոսի , գաղտ
սակաւուք ոմամբք դիմեաց առ
հետևակազօրն , և լատին բարբա-
ռով՝ զոր 'ի Նումանտիա էր ու-
սեալ , գոչեաց և ասէ . “ Ընդու-
նայն ձգնիք , այժմ իսկ ձեռամբ
իմով սպանի զՄարիոս „ . զայս
ասացեալ ցուցանէր զսուսերն ա-

րիւնաներկ, զոր ոչ սակաւ արու֊
թեամբ 'ի մարտի անդ յարենէ
հետեւակացն մերոց էր ներկեալ ։
Ի լսել զայն զօրականին առաւել
'ի գժնդակութենէ իւրին զարհու֊
րեցան քան հաւատս բանիցն ըն֊
ծայելով. իսկ բարբարոսքն խրա֊
խուսեալ սաստկագոյնս ընդ ա֊
հաբեկեալսն կռուէին ։ Այն ինչ
նոքա պատրաստէին 'ի փախուստ,
և ահա եհաս Սիղղա յաղթահա֊
րեալ զայնոսիկ՝ յորոց վերայ եր֊
թեալն էր, և յարձակեցաւ 'ի կո֊
ղից 'ի վերայ մաւրիտանացւոց ։
Բոկքոս սրացաւ 'ի բաց. իսկ Յու֊
գուրթ ձեռն տայր իւրոցն, ճրգ֊
նէր առ 'ի չկորուսանել զյաղ֊
թութիւնն՝ զոր գոգցես 'ի ձե֊
ռին ունէր. և շուրջ պատեալ 'ի
հեծելոցն մերոց, և յաջ և յա֊
հեակ կոտորեալ իւրոցն ամենե֊
ցուն, ինքն միայն ճողոպրեալ
արծանէր ընդ մէջ նետից թշնա֊
մեաց ։ Յայնմ վայրի և Մարիոս
զհեծելագունդ թշնամեոյն հա֊
լածեալ, գայր հասանէր իւրոցն

'ի Թիկունս՝ զօրոց զբեկումն լը-
ւեալ էր , մինչև 'ի սպառասպուռ
ջախջախեցան Թշնամիք ։ Անդ էր
տեսանել յայնժամ զահաւոր տե-
սիլ 'ի լայնածաւալ դաշտին ,
զհետամտիցն , զփախստէիցն , ըզ-
կոտորելոցն և զգերելոց . երի-
վարք և հեծեալք Թաւալգլոր ան-
կեալ , վերաւորաց բազմուԹիւն
անկարող 'ի փախուստ և անժոյժ
'ի զկայ առնուլ , յոտն կալ ջա-
նային և անդէն յերկիր անկա-
նէին . և համայն ասել , շուրջա-
նակի ցրուայր զօրէին աչք , ծած-
կէր երկիրն համասփիւռ նետիւք ,
զինուք , դիակամբք և 'ի նախՃիրս
արեան ։

ՃԲ . Յետ այնորիկ Մարկոս
աներկևան ընդ յաղԹուԹիւնն ե-
հաս 'ի Կիրտա , ուր դէմ եդեալն
էր ։ Անդր յետ հինգ աւուրց
վերստին պարտուԹեան բարբա-
րոսացն՝ եկին հասին պատգա-
մաւորք 'ի Բոկքոսէ , որք 'ի դի-
մաց արքայի խնդրէին 'ի Մարիո-
սէ զերկուս ոմանս 'ի հաւատար-

մագունիցն արձակել առ նա, զի խօսեսցի ընդ նոսա վասն իւր և յօգուտ ժողովրդեանն Հռովմայ: Եւ նա պատուէր ետ անդէն Գ. Սիղղայ և Ա. Մանլիոսի գնալ առ Թագաւորն: Որք թէպէտ հրաւիրանաւ երթեալ, սակայն լաւ համարեցան կանխել յատենաբանութիւն առ ողոքելոյ զդժկամակութիւն նորա, և կամ և ևս ըղձակերտ առնելոյ զնա 'ի խաղաղութիւն: Վասն որոյ Սիղղա, որում առ պերճախօսութեանն և ոչ վասն հասակին տեղի ետ Մանլիոս, դուզնաքեայ խօսեցեալ բանիւք, ասէ.

“ Խնդութիւն յոյժ է մեզ, արքայդ Բոկքէ, զի ազդեցին քեզ դիք առնդ մեծի իղձս խաղաղութեան քան պատերազմի, որպէս զի մի բարեղաւդ եղեռնաւորին Յուգուրթայ բաժանորդ չարեացն լինիցիս, և զի ազատ զմեզ կացուցես 'ի խիստ հարկէն պատուհասելոյ ընդ անօրէնին և զըմբռնեալդ 'ի պատրանս: Անդստին

'ի սկզբանէ Հռովմ մինչև իսկ
մեծացեալ, բարեկամաց եղև 'ի
խնդիր քան ծառայից, և առաւել
անքոյթ վարկաւ յօժարելոց քան
դժկամակաց տիրապետել: Չիք
կարևորագոյն ինչ քեզ քան զմերս
բարեկամութիւն. նախ զի բացա-
կայք ելով չկարեմք լինել քեզ
վնասակար, իսկ նպաստել որպէս
'ի մօտոյ կարող եմք. և դարձեալ
զի բազումք են քեզ հնազան-
դեալ, այլ բարեկամք ոչ մեզ և
ոչ այլոց երբէք գոն ըստ բաւա-
կանին: Իցի՛ւ 'ի սկզբանէ այսպէս
հաճոյ լեալ էր քեզ. ցորդ 'ի
ժողովրդենէն Հռովմայ բազում
յոյժ բարիս ընկալեալ էր քո քան
զչարիսդ զոր կրեցեր: Այլ քան-
զի բազում այն է զի բաղդն իշխէ
մարդկայնոց իրաց, և հաճոյ թուե-
ցաւ նմա տալ քեզ զփորձ առ-
նուլ և զզօրութեանս մերոյ և ըզ-
բարերարութեան, փութա արդ
չկորուսանել զպատեհ՝ զոր մա-
տուցանէ քեզ, և ած զոր սկը-
սարդ 'ի կատարումն: Բազումք

առաջին կան քեզ դեսպք բարեպա-
տեհ՝ դիւրաւ փոխարինելոյ ըզ-
տոյժս վրիպանացդ: Եւ գլուխ
ամենայնի յուշ լիցի քեզ, զի չիք
երբէք ժողովրդեան Հռոմայ
յաղթեալ 'ի բարերարութենէ.
իսկ որչափ ինչ զօրէ զինուք՝ զայն
դու ինքնին իսկ քաջ գիտես":

Առ այս Բոկքոս քաղցրութ̃բ,
մարդասիրութեամբ և սուղ բա-
նիւք 'ի ջատագովութիւն անձին
արար պատասխանի.

"Ոչ առ թշնամութեան ինչ,
այլ առ 'ի պահ տէրութեան ի-
մոյ զէն առի. զի զմասն Նումի-
դիոյ, յորմէ զինու իմով հալա-
ծեալ էր իմ զՅուգուրթ, և ըստ
օրինաց մարտի տիրեալ անդ՝ չը-
մարթէր ինձ թողուլ կոխան ոտից
Մարիոսի: Այն զի 'ի կանխել ա-
ռաքել իմում պատգամաւորս 'ի
Հռոմ 'ի խնդիր բարեկամութե̃,
մերժեցայ անարգանօք: Այլ արդ
զանցեալսն 'ի մոռացօնս արկեալ,
եթէ մարթ իցէ 'ի ձեռն Մարիո-
սի՝ դեսպանս 'ի Հռոմ արձակե-
ցից":

Հաւանեցան նմա , բայց ապա
շրջեաց անդրէն խուժադուժն ըն-
միտս իւր հրապուրանօք մոլորմանց
իւրոց , զորս Յուգուրթայ 'ի լսել
զպատգամաւորութիւն Սիղղայ և
Մանլիոսի կասկածեալ 'ի հետևա-
նացն , կաշառաբեկ արարեալ էր :

ԾԳ . Յայնմ պահու զետե-
ղեալ Մարիոսի զզօրսն 'ի ձմերոցս,
Թեթևընթաց վաշտիւք հետևա-
կաց և ջոկատիւ հեծելոց խաղայր
ընդ ամայիս 'ի պաշարումն ար-
քունի աշտարակին , ուր զդասա-
լիքսն կարգեալ էր Յուգուրթ 'ի
պահպանութիւն : Իսկ Բոկքոս
վերստին յայնժամ յեղաշրջէր 'ի
խորհրդոցն , կամ զկրկին պար-
տութիւնսն յուշ ածեալ , և կամ
խրատեալ 'ի բարեկամաց որ չէ-
ին կաշառեալ 'ի Յուգուրթայ . և
'ի մտերմագունից անտի իւրոց ըն-
տրեալ արս հինգ՝ զորոց գիտէր
զհաւատարմութիւն և զհանճար ,
պատգամաւորս զնոսա առ Մա-
րիոս առաքէր, պատուէր տուեալ
անտի 'ի Հռովմ անցանել եթէ

այնպէս հաճոյ թուեցի Մարկո-
սի. և յաւել նոցա տալ լիուլի իշ-
խանութիւն յանձանձելոյ զկրօն,
և իւ և է պայմանաւ վախճան առ-
նելոյ մարտին: Սոքա ուղղոյ ե-
ղեն վաղվաղակի 'ի ձմերոցս հը-
ռովմայեցւոց. այլ զճանապար-
հայն 'ի հինից գետուլացւոց կո-
ղոպտեալ, մերկ և ահաբեկ ան-
կան առ Սիղղա, զոր բդեշխին յե-
լանելն իւրում 'ի պատերազմ ե-
տեղակալ թողեալ էր անդ: Զսո-
սա Սիղղա ոչ իբրև զյեղյեղուկ
թշնամիս ընկալաւ, որպէս և ար-
ժանն էր, այլ մեծապարգև մե-
ծարեաց. որով 'ի միասին բար-
բարոսքն զի յանիրաւի ագահք
համբաւէին հռովմայեցիք, և յա-
ռատութենէ անտի Սիղղայ ծա-
նեան զի նա բարեկամ իւրեանց
էր: Քանզի կաշառ դեռ ևս յայն-
ժամ անծանօթ էր բազմաց, և
չհամարէր հնարաւոր առատա-
ձեռնութ̃ի առանց առատատըր-
տութեան, և պարգևք ամենայն՝
էին առհաւատչեայ մարդասի-

րուԹեան ։ Եւ յայտնեցին Սիղղայ
պատգամաւորքն զպատուէր Թա-
գաւորին, խնդրելով զխորհրդակ-
ցուԹիւն նորին և զօգնականու-
Թիւն ։ Եւ ապա 'ի գովուԹիւն
առնուլն զբազմուԹեն զօրաց ար-
քային իւրեանց, զհաւատարմու-
Թիւն, զմեծուԹիւն և որ ինչ այլ
շահաւէտ կամ հաճոյական հա-
մարէին ։ Եւ առեալ խոստումն 'ի
Սիղղայ և հրահանգեալ 'ի Նմանէ
որպէս առ Մարիոս և առ ծերա-
կոյտն պարտին խօսել, կացին
անդ զաւուրս իբրև քառասուն ։

ԾԴ. Մարիոս 'ի դերև ելեալ
'ի գործոյն, յոր երԹեալն էր, իբ-
րև դարձ արար 'ի Կիրտա, ազդ
եղև Նմա գալուստ դեսպանացն,
և հրամայեաց մուծանել զնոսա
առ ինքն, հրաւիրեալ և զՍիղղա
և զպրետորն ուտիկեցի զԲելլիե-
նոս և զայլս յաւագաց բազումս,
լսել զպատգամս Բոկքոսի ։ Եւ
հրաման լեալ պատգամաւորացն
երԹալ 'ի Հռոմ, խնդրեցին Նո-
քա 'ի բդեշխէն առնել դուլ զի-

նուց մինչև 'ի դարձ իւրեանց ։ Հաճոյ Թուեցաւ Սիղղայ և բազմաց, բայց ոմանք խստագոյնս ընդդէմ դարձան՝ տգէտք անկայուն բաղդին յեղաշրջելոյ ստէպ 'ի ձախողակս ։ Մաւրիտանացիք ընկալեալ զամենայն խնդիրս իւրեանց, երեք 'ի նոցանէ յուղի անկան 'ի Հռովմ ընդ կն․ Ոկտաւիանոսի Հռուփոնի, որ գանձապետ զօրաց երթեալ էր յԱփրիկէ․ և երկոքին դարձան առ Թագաւորն ։ Լուաւ 'ի նոցանէ Բոկքոս զամենայն, և մանաւանդ զխնամս մարդասիրութեան Սիղղայ, և հաճեցաւ ։ Իսկ պատգամաւորքն երթեալք 'ի Հռովմ խոստովան եղեն զսխալանս նորա և զխարդաւանել 'ի հրապուրանս Յուգուրթայ․ և 'ի խնդրել իւրեանց զուխտ և զբարեկամութիւն նոցա, այսպէս ընկալան պատասխանի․ «Ծերակոյտն և Ժողովուրդ Հռովմայ զբարերարութե̃ և զանիրաւութե̃ անմոռաց ունին զյիշատակս, այլ զի զեղջ է Բոկքոսի՝ շնորհեն նը-

մա զյանցանսն․ բայց յուխտ է 'ի
բարեկամութիւն ընկալցին զնա
յորժամ արժանաւոր լիցի այնմ»։

ԾԵ․ Ցանուցեալ զայսոսիկ
Բոկքոսի գրեաց առ Մարիոս և
խնդրէր առաքել առ ինքն զՍիղ-
լա իշխանութեամբ խօսելոյ զի-
րաց հասարակաց։ Եւ արձակե-
ցաւ գանձապետն Ջոկատիւ հե-
ծելոց և հետևակաց և բաղէարիկ
պարսաւորաց և աղեղնաւորաց,
հանդերձ գնդաւն մեկնակաղէն
պելինեացւոց առ երագ հասա-
նել․ որք ոչինչ ընդհատ Թեթևա-
բեան զինուքն ամրանային 'ի նե-
տից Թշնամեաց։ Եւ յաւուրն հին-
գերորդի յեղակարծում տեսին
զճանապարհայն զարքայորդին
Բոկքոսի զՎոլուքս յընդարձակ
դաշտի, և ընդ նմա ոչինչ աւելի
քան զհազար այր հեծեալ․ որք
զի խառն 'ի խուռն և ցիրուցան
գնային, Սիղղա և այլք առ հա-
սարակ յոլովագոյնս զնոսա քան
զոր էին վարկան, և որպէս 'ի Թըշ-
նամեաց զահի հարկանէին։ Ամե-

նայն որ հանդերձէր 'ի մարտ, ըղ-
զէն և զնետս պատրաստէր, և
կազմ կայր. այլ ընդ սուղ ինչ
խէթ կասկածանացն առաւելա-
գոյն ակնկալութիւն էր նոցա. զի
զնայլին ընդդէմ այնոցիկ՝ որոց
բազում անգամ յաղթեալ էին:
Յայնմ վայրի հեծելազօրն՝ որ եր-
թեալ էր 'ի լրտեսել զիրան, դար-
ձաւ աւետել խաղաղութիւն՝ որ-
պէս և էրն:

ՃՁ. Եկն եհաս Վոլուքս, և
ծանոյց գանձապետին, զի 'ի հօրէ
իւրմէ 'ի Բոկքոսէ առաքեալ գայր
նոցա ընդ առաջ առ 'ի պահ ըղ-
գուշութեան: Նա զայն օր և 'ի
վաղիւ անդր աներկիւղ երթային
'ի միասին. բայց միայն իբրև բա-
նակեցան և օրն տարաժամէր,
յանկարծ ուրեմն մաւրիտանա-
ցին խռովեալ ընթացաւ առ Սիղ-
ղա և ասէր, գոյժ 'ի լրտեսաց ա-
ռեալ զի մերձ հասեալ էր Յու-
գուրթ. և աղաչէր և յորդորէր
զնա գիշերախառն խոյս տալ ընդ
իւր: Իսկ նա արհամարէր ես պա-

տասխանի, զի չերկնչէր ընաւ 'ի նումիդացւոյն՝ որում բազում անգամ յաղթեալն էր, և զի վստահ էր յիւրոցն զօրութիւն. և զի կորուստ իսկ թէ առաջի կայր՝ լաւ էր կալ մնալ անդ քաջութեամբ քան թէ մատն լինել զօրուն, և անարգ փախստեամբ խնայել 'ի կեանս, որ 'ի վտանգի է. և թէրևս յետ սակաւ միոյ կորստական 'ի խօթութենէ: Այլ ապա խրատեալ 'ի նմանէ չու առնել գիշերայն բանակաւն, հաւանեցաւ ընդ այն, և հրաման ետ զօրուն առնուլ կերակուր, և խիտ առ եխտ խարոյկս լուցեալ 'ի բանակին՝ յառաջնում պահու գիշերոյն լռելեայն անկանել 'ի չու: Վաստակեցան զօրքն առ հասարակ 'ի գիշերագնաց ուղևորութենէ. և այն ինչ Սիղղա յառաւօտուն պահու հրաման ետ նոցա բանակ հարկանել, հասին հեծեալք մաւրիտանացիք գուժաբերք՝ զի Յուգուրթ երկոքումբք ևեթ մղոնաւ 'ի բացեայ բանա-

կեալ էր։ Իբրեւ լու եղեւ այս 'ի
զօրուն՝ արհաւիրք կալան զամե-
նեսին, եւ համարէին մատնեալք
'ի Վոլուքսեայ եւ դաւաճանեալք։
Եղեն խակ ոմանք որ զինու զօրու-
թեամբ կամէին վրէժս խնդրել 'ի
Նմանէ, եւ մի զոճիրն մեծեղեռն
թողուլ անպատուհաս։

ԾԷ. Թէպէտ 'ի նոյն կարծիս
էր եւ Սիղղա, սակայն չեթող ձեռն
մխել 'ի մաւրիտանացին. եւ խրա-
խուսէր զիւրան արկանել, յուշ
ածեալ զի յառաջ քան զայն՝ բա-
զում անգամ արիութեամբ նուա-
ճունք ընդդէմ բազմութեան յաղ-
թանակեալ էին, եւ զի անխնայ
դիմագրաւելոց 'ի մարտ ապահո-
վագոյն են կեանք, եւ թէ անպա-
տեհ էր բազկաց զինելոց յան-
դէն ուստեք խնդրել օգնականութի,
եւ 'ի մեծի վտանգին զմերկ եւ ըղ-
կոյր թիկունս առ թշնամին դար-
ձուցանել։ Ապա զմեծն Արա-
մազդ կոչելով վկայ եղեռան եւ
նենգութեանն Բոկքոսի՝ հրա-
մայէր Վոլուքսեայ 'ի բաց ելանել

'ի բանակէն իբր մատնիչ դաւա-
ճան : Իսկ նա արտասուօք աղա-
չէր մի զոյնպիսի կարծիս բերել,
զի չէր ինչ նորա գործեալ նեն-
գութեամբ, այլ խորամանկութե-
Յուգուրթայ գրել զդաւն, որոյ
լրտեսեալ և ծանուցեալ էր զդէմ
ուղւոյ նոյա : Նա յաւել. «Զէք
Յուգուրթայ բազմութեն զօրաց.
և քանզի ամենայն յոյս և զօրու-
թիւն նորա 'ի հօրէ իմմէ է, թուի
ինձ թէ ոչ յանդգնեսցի նա գոր-
ծել ինչ յայտնապէս ակն յան-
դիման որդւոյ նորա. վասն որոյ
խորհուրդ քաջ համարիմ անցա-
նել համարձակ ընդ մէջ զօրաց
նորա, և ինձ կամ արձակեալ նախ
և կամ թողեալ աստ զմաւրիտա-
նացիս գալ ընդ քեզ միայնակ» :
Հաւանեալ Սիղղայ ըստ հարկի ի-
րաց ժամանակին ընդ խորհուրդն,
մեկնեցան փութանակի. և մինչ-
դեռ կասկածէր երկմտէր Յու-
գուրթ ընդ յեղակարծ արշաւան-
սն, անցին նոքա անվտանգ, և
յետ սակաւ աւուրց հասին ուր
դէմ եդեալն էր :

ՃԸ. Անդր յորքունիս Բոկ-
քոսի նուիրդացն ոմն Ասպար ա-
նուն, յաճախէր բազում համար-
ձակութեամբ. զոր Յուգուրթայ
յետ լսելոյ զկոչ Սիլլայ՝ յղեալ
էր իբր պատգամաւոր, բայց ճըշ-
մարտիւ 'ի լրտեսութիւն խոր-
հրդոց Թագաւորին: Բայց 'ի
սմանէ և Դաբար ոմն Մասուկրա-
դայ որդի 'ի սերնդոց Մասսինի-
սայ, 'ի մայրենի տոհմէ անիշան,
զի էր հարճորդի, շնորհս գտեալ
էր առ մաւրիտանացւոյն վասն
հանճարոյն բարեմանութեանց.
զորս Բոկքոս 'ի բազում դէպս
ծանուցեալ զհաւատարմութիւն
առ հռովմայեցիս, պատգամա-
ւոր յայնժամ առ Սիլլա արձա-
կեաց և ասէ. «Պատրաստ եմ
հնազանդել կամաց ժողովրդեանն
Հռովմայ, ցոյց ինձ օր, տեղի և
ժամանակ խօսելոյ. կացից 'ի
խորհրդեան՝ որ 'ի միջի մերում
սահմանեսցի. չէք քեզ տեղի կաս-
կածելոյ զպատգամաւորէն Յու-
գուրթայ, վասն այն կոչեցի զնա,

զի ազատօրէն զիրս հասարակաց սահմանել կարասցուք. քանզի այլ ազգ 'ի գարանաց նորա չէր մարթ զերծանել»: Բայց են ինձ հաւաստիք զի Բոկքոսի ոչ անկեղծութեամբ էին բանք. այլ պունիկեան խորամանկութեամբ զհռովմայեցիս և զնումիդացին յուսով խաղաղութեան թարթափեցուցանէր, և ընդ երկար յուզեալ տարուբերէր 'ի միտս՝ զՅուգուրթա հռովմայեցւոց, թէ զՍիղղա նմին մատնել. խղձք զնա ընդդէմ մեր, իսկ երկիւղ 'ի մեր կոյս զնա հաւանեցուցանէին:

ՃԹ. Արդ Սիղղա տրար պատասխանի, զի սակաւ ինչ կամէր խօսել առաջի Ասպարայ. այլ զամենայն 'ի ծածուկ, անլուր յումեքէ, կամ սակաւուց ումանց առաջի. և թելադրեաց նմա որ ինչ արժանն էր պատասխանել իւր: Ապա իբրև 'ի մի վայր եկին ըստ ժամադրութեն՝ ասէ. «Հասեալ գամ 'ի բդեշխէն հարցանել, ընդ խաղաղութի՞ կամիս թէ ընդ պա-

տերազմ »։ Իսկ Թագաւորն որ-
պէս խրատեալն էր, հրամայեաց
յետ տասն աւուր դարձ առնել,
զի չև ևս ասէր սահմանեալ ինչ,
այլ յայնժամ տալ պատասխա-
նին։ Այս դարձան երկաքանչիւր
'ի բանակս իւրեանց. և իբրև գի-
շերն ընդմիջէր կոչեաց Բոկքոս
զՍիղղա լռելեայն. և յերկոցունց
կողմանց Թարգմանս միայն հա-
ւատարիմս կացուցեալ, և զԴա-
բար այր բարելաւ միջնորդ խա-
ղաղութեան՝ որ երկաքանչիւրոցն
իսկ էր երդուեալ հաւատարմու-
թեան, խօսել կալաւ Թագաւորն
և ասէ.

ՃԺ. « Ոչ ածէի երբէք զմը-
տաւ, զի որ եմս յաշխարհի աստ
Թագաւոր հզօր, և ճոխ քան զա-
մենեսեան զորս ծանեայ, առն
ռամկականի երախտապարտ գտա-
նիցիմ։ Եւ արդարև, Սիղղա, մինչ-
չև ծանուցեալ զքեզ, յոլովից
ինքնայօժար և այլոց յաղերս ա-
ծեալ բարերարեցի, ոչ ումեք կա-
րօտ գտեալ։ Այլ այս կարօտու-

թիւն՝ որ այլոց դժպհին է՝ ինձ 'ի
խնդութիւն, օգնեսցէ ինձ լինել
կարօտ քում բարեկամութեան,
որ քան զամենայն ինչ պատուա֊
կան է: Զայս արդ արժան է
'ի փորձ մատուցանել. ահա զէնք
իմ և զօրականք, գանձուց մեծու֊
թիւնք, և որ այլ ինչ ախորժեացդ
առ քեզ կան, արկ զամենայն 'ի
գործ. այլ ցորչափ զկենդանու֊
թիւն շնչիցես, ոչ համարեցայց
հատուցեալ բնաւ զերախտեացդ
փոխարէնս. կացցեն միշտ անեղծ
շնորհք քո առ իս, և ոչ երբէք
անկցին կամք քո, եթէ միայն չի֊
ցեն ինչ զանխուլ յինէն: Քանզի
նուազ անարգանս համարիմ թա֊
գաւորի 'ի զէնս քան 'ի բարերա֊
րութեան զպարտութիւն յանձն
առնուլ: Այլ վասն հասարակա֊
պետութեան՝ որոյ խնամակալ
այսր յղեալ գաս, ընկալ 'ի կար֊
ճոյ զպատասխանիս: Չիք իմ ընդ֊
դէմ ժողովրդեանն Հռովմայ մր֊
ցեալ պատերազմ, և ոչ բնաւ եր֊
բէք յօժարեալ յայն, այլ զահ֊

մանս իմ յերեսաց զինուց՝ զինուք
պաշտպանեալ: Եթէ այդպէս հա-
ճոյ իցէ ձեզ՝ թողում և զայս, ա-
րարէք ըստ կամաց ձերոց պատե-
րազմ ընդ Յուգուրթայ: Ոչ ան-
ցից անդր քան զգետն Մուլուքա՝
որ ընդ իս և ընդ Միկկիպսա եր-
կուց թագաւորութեանց սահ-
ման կարգեցաւ, և ոչ Յուգուր-
թայ թողից անցանել ընդ այն:
Դարձեալ որ ինչ միանգամ խըն-
դրիցէք ինձ և ձեզ արժանի՝ մի
անկցի ՚ի գերև »:

ՃԺԱ. Առ այս համառօտս ետ
Սիղղա պատասխանի վասն անձին
բազում ցածութեամբ, այլ զխա-
ղաղութենէ և զիրաց հասարակաց
երկարագոյնս խօսեցաւ: Յայտ
արար թագաւորին զի ծերակոյտն
և ժողովուրդ Հռովմայ զօրացեալ
զինուք, ոչ շնորհս ինչ համարէր
զխոստմունս նորա, վասն որոյ ար-
ժան էր նմա առնել ինչ օգտա-
կարագոյն նոցա քան իւր. որ և
դիւրին էր նմա ամենևին, ՚ի ձե-
ռին ունելով զՅուգուրթ՝ մատ-

նել զնա հռովմայեցւոց, և չնոր-
հապարտ զնոսա կացուցեալ՝ ըն-
դունել 'ի նոցանէ պատրաստ ըզ-
բարեկամութիւն, զդաշնակցու-
թիւն և զմասն նումիդիոյ՝ զոր
խնդրէր: Այժմ 'ի սկզբան անդ
չհաւանէր Թագաւորն, զազգա-
կանութ̃ի, զխնամութի և զուխտ
հաւատարմութեան առաջի առ-
նելով, և զի դարձեալ խիթայր
օտարացուցանել յիւրմէ ուխտա-
դրժութեամբն զսիրտ ժողովըր-
դեան՝ որոց Յուգուրթ սիրելի
էր, և ատելի էին հռովմայեցիք:
Այլ ապա ստէպ թախանձեալ 'ի
Սիղղայ, զիջաւ առնել ըստ ըղձից
նորա զամենայն: Եւ միաբանեցին
կեղծել զհաշտութիւն խաղաղու-
թեան, երբ այն թէ նումիդացին
խառն 'ի յերկար պատերազմաց
ցանկայր այնմ և համարէր իւր
զայն յօգուտ: Զայս օրինակ պատ-
րաստեալ զնենգն՝ մեկնեցան 'ի
միմեանց:

ԾԺԲ. Իսկ Թագաւորն 'ի վա-
ղիւ անդր կոչեալ զԱսպար զպատ-

գամաւորն Յուգուրթայ, առաց
տեղեկացեալ 'ի ձեռն Դաբա-
րայ 'ի Սիղղայ՝ զի մարթ էր պայ-
մանօք խօսել 'ի խաղաղութիւն. և
յանձն առար նմա խնդրել զխոր-
հուրդ տեառն իւրոյ: Նա խնդա-
միտ եկն 'ի բանակ անդր Յուգուր-
թայ. 'ի նմանէ առեալ պա-
տուէրս շտապաւ յետ ութ ա-
ւուրց դարձ առար առ Բոկքոս և
ասէ. «Պատրաստ է Յուգուրթ
առնել զամենայն հրամայեալսն,
այլ չվստահի 'ի Մարիոս. քանզի
բազում անգամ ցարդ ընդ բը-
դեաշխս հռովմայեցւոց դաշինս
կռեալ, և ել ընդունայն: Այլ
եթէ զշահ օգտի և զհաստատուն
խաղաղութիւն երկոցունց կող-
մանցն կամիցիս, գուն գործեսջիր
'ի մի գումարել զնոսա պատճա-
ռանօք խօսելոյ 'ի խաղաղութիւն,
և տուր 'ի ձեռս նորա զՍիղղա:
Զի յորժամ զայր այսպիսի 'ի ձե-
ռին ունիցիմք, բռնադատեմք ըզ-
ծերակոյտն և զժողովուրդ Հռով-
մայ 'ի պայմանս հաշտութեան. զի

զայր ազնուական, ոչ առ վատու-
թեան անկեալ 'ի ձեռս՝ այլ առ
'ի սէր հասարակապետութեան՝
ոչ թողուցուն 'ի ձեռս թշնա-
մեաց ։

ՃԺԳ․ Բոկքոսի երկար զայս-
մանէ մտախոհ լեալ, եւ ապա
խոստումն․ այլ խորամանկութբ̃
արդեօք և ստուգիւ վարանեալ,
ոչ ունիմ ասել։ Բայց բազում
այն է զի թագաւորաց կամք որ-
չափ բուռնք են՝ այնչափ և յեղյե-
ղուկ և ինքեանք ինքեանց հակա-
ռակ։ Այս ժամ և տեղի սահմա-
նեալ իբր առ 'ի խօսել զհաշտու-
թենէ, մերթ զՍիղղա և մերթ ըզ-
պատգամաւորն Յուգուրթայ կո-
չէր առ ինքն, և մարդասիրու-
թեամբ ընկալեալ զնոսա՝ զնոյն
խոստումն կրկնէր երկաքանչիւ-
րոցն․ և երկաքանչիւր զուար-
թամտեալք լի յուսով ելանէին 'ի
նմանէ։ Բայց 'ի գիշերին յորում
լուսանայր օրն սահմանեալ 'ի խօ-
սակցութ̃ն, կոչեաց Բոկքոս զբա-
րեկամս իւր, և անդէն փոխեալ

'ի մտացն արձակէր զնոսա, վա-
րանեալ մտայոյզ՝ որպէս պատ-
մի, կերպարանօքն, այլագունու-
թեամբ դիմացն և շարժմամբ ան-
ձին զծածուկս սրտին լուելեայն
յայտ առնելով: Սակայն յետոյ
ուրեմն հրամայեաց կոչել զՍիղ-
ղա, և ըստ խորհրդոյ նորա զա-
րանակալ եղև Յուգուրթայ: Եւ
'ի ժամադրեալ աւուրն իբրև գի-
տաց զի ոչինչ հեռի էր Յուգուրթ,
իբր թէ 'ի պատիւ նորա սակա-
ւուք ոմամբք բարեկամօք և ընդ
Սիղղայ գնալով ընդ առաջ, յա-
ռաջեաց մինչև ցբլուրն դիպատե-
սիլ դարանակալացն: Եւ իբրև
գայր հասանէր նումիդացին ան-
զէն, որպէս պայմանեալն էր,
ընդ բազմութեան մտերիմ բարե-
կամացն, վաղվաղակի 'ի տալ նշա-
նին դիմեցին ամենուստ դարանա-
կալք. և զամենեսեան սրոյ ար-
ւեալ Ճարակ, զՅուգուրթ կա-
պանօք մատնեցին Սիղղայ, և սա
էած զնա առ Մարիոս:

ՃԺԴ. Զայնու ժամանակա

'ի պարտութիւն մատնեցան յե-
րեսաց գաղղիացւոց զօրավարքն
Կ. Կեպիոն և Մ. Մանլիոս. և
սարսէր երկիւղիւ Իտալիա ող-
ջոյն, և անդատրին մինչև ցայնժամ
այսպէս համարեցան հռոմայե-
ցիք զամենայն ինչ առաջի քաջու-
թեան իւրեանց խոնարհեալ. այլ
զի ընդ գաղղիացիս ոչ վասն փա-
ռաց, այլ 'ի վերայ ազատութեան
հարկ էր նոցա կռուել: Իբրև լու-
եալ վախճան նումիդեան մար-
տին և Յուգուրթայ կապեալ ա-
ծել 'ի Հռոմ, Մարիոս հեռի 'ի
քաղաքէ անտի ընտրեցաւ բդեաշխ,
և տուաւ նմա Գաղղիա 'ի կուսա-
կալութիւն: Եւ 'ի մուտս յա-
նուարի մեծաւ փառօք յաղթա-
նակեաց, յայնմ ժամանակէ և
այսր յոյս և մեծութիւն քաղաքին
'ի նմա հաս տատեալ: